ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ 1959

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 9
ՍԵՊՏԵՄԲԵՐ
1959 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVI
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՊԱՐՏԻԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՀԱՄԱՐ

*Մոտենում է պարտիական-քաղաքական լուսավորության սիստեմի նոր ուսումնական տարին։*

*Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները հաշվի առնելով անցած տարվա քաղաքական կրթության դրական փորձը և թերությունները, կազմակերպչական զգալի աշխատանք են կատարել պարտիական լուսավորության նոր ուսումնական տարին նախապատրաստված սկսելու համար։*

*Ի՞նչ ցույց տվին անցած տարվա քաղաքական ուսուցման արդյունքները։*

*Անցյալ ուսումնական տարվա համար բնորոշ է նախ և առաջ ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների ու նյութերի խոր և բազմակողմանի ուսումնասիրությունը պարտիական լուսավորության սիստեմում ընդգրկված ունկնդիրների կողմից։ Համագումարի նյութերն ու որոշումները նոր թափ հաղորդեցին պարտիայի իդեոլոգիական աշխատանքին, զգալիորեն բարձրացնելով նրա գաղափարական մակարդակը. պարտիական պրոպագանդան դարձավ ավելի կոնկրետ ու մարտունակ, բարձրացավ կոմունիստների քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը։ Այն զգալիորեն նպաստեց բարձրացնելու պարտիական լուսավորության դերը կադրերի մարքս-լենինյան դաստիարակության գործում։*

*Անցյալ ուսումնական տարվա բնորոշ առանձնահատկություններից մեկն էլ այն էր, որ պարտիական լուսավորության սիստեմում մեծ տեղ էր գրավում ՍՄԿՊ պատմության ու տեսության ուսումնասիրությունը։ Եվ դա հասկանալի է։ Կոմունիստական պարտիայի հերոսական պատմության ուսումնասիրությունը նպաստում է կադրերի մարքսիստական-լենինյան աշխարհայացքի ձևավորմանը, քաղաքականապես կոփում է նրանց, բարձրացնում է պարտիական աշխատանքի մակարդակը։*

*Սկսվող ուսումնական տարում պարտիական լուսավորության հիմնական բովանդակությունը պետք է հանդիսանա մարքսիզմ-լենինիզմի կլասիկների ստեղծագործությունների, ՍՄԿՊ պատմության ու տեսության, պարտիայի XXI համագումարի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումների առաջադրած տեսական պրոբլեմների ու պրակտիկ խնդիրների խոր ուսումնասիրությունը։*

*Մարքս-լենինյան թեորիայի ուսումնասիրության հիմնական մեթոդը, ինչպես ցույց է տալիս փորձը, ինքնուրույն ուսուցումն է, ինքնուրույն աշխատանքը գրքի վրա։ Ահա այդ նկատառումով էլ քաղաքական ուսուցման կազմակերպման գործում պարտիական կազմակերպությունները պետք է գլխավոր ուշադրությունը բևեռեն քաղաքական ինքնակրթության վրա, հատկապես ինքնուրույն ուսուցման կոլեկտիվ, սեմինարային ձևերի վրա։*

Պետք է ուղղակի նշել, որ քաղաքական ինքնակրթությամբ զբաղվող կոմունիստների համար տեսական կոնֆերանսների, սեմինարների կազմակերպումն ու ռեֆերատների քննարկումը բավականին դրական արդյունք են տալիս։ Քաղաքական ուսուցման նման ձևերն ու մեթոդները հնարավորություն են ստեղծում կոլեկտիվ կերպով քննարկելու լուրջ տեսական հարցեր, որոնք մեծապես նպաստում են ավելի խոր յուրացնելու մարքսիստական-լենինյան թեորիան, ճիշտ լուծելու կոմունիստական շինարարության պրակտիկ հարցերը։

Պարտիական լուսավորության սիստեմի անցյալ տարիների փորձը ցույց է տալիս, որ այն կազմակերպություններում, որտեղ պլանավորված, հետևողական աշխատանք է տարվում ինքնուրույն ուսումնասիրողների հետ, ինքնուրույն ուսուցումը տալիս է դրական արդյունք։ Իսկ այնտեղ, որտեղ անհրաժեշտ օգնություն և պահանջկոտություն չի ցուցաբերվում մարքսիզմ-լենինիզմի տեսությունն ինքնուրույն ուսումնասիրողների նկատմամբ, ուսուցումը կրում է ձևական բնույթ։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ նոր ուսումնական տարում լուրջ ուշադրություն դարձնել պարտիական լուսավորության սիստեմի այդ հիմնական օղակի և, առաջին հերթին, ինքնուրույն ուսուցման կոլեկտիվ ձևերի՝ տեսական կոնֆերանսների, սեմինարների, ռեֆերատների քննարկման վրա։ Անհրաժեշտ է ստեղծել տեսական սեմինարների լայն ցանց՝ մարքսիզմ-լենինիզմի թեորիայի ու տեսության, սոցիալիստական արդյունաբերության ու գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկայի հարցերի, ընթացիկ քաղաքականության, միջազգային դրության, աթեիզմի, միջազգային կոմունիստական շարժման առանձին պրոբլեմների ուսումնասիրության համար։

Տեսական սեմինարները պետք է կազմակերպել շերտավորված, ըստ որում պետք է նկատի ունենալ ունկնդիրների մասնագիտությունը, աշխատանքի բնագավառը և տեսական պատրաստությունը։ Յուրաքանչյուր սեմինարի բովանդակությունը պետք է հանդիսանա ինքնուրույն կերպով ուսումնասիրված հարցերի ստեղծագործական, կոլեկտիվ քննարկումը։ Իսկ այն ընկերները, որոնք չունեն անհրաժեշտ պատրաստականություն, պետք է ընդգրկվեն պարտիական լուսավորության խմբակներում։

Պարտիական լուսավորության սիստեմում որպես կոմունիստների քաղաքական ուսուցման առաջին և անհրաժեշտ աստիճան, կարևոր դեր է խաղում քաղդպրոցը։

Հայտնի է, որ քաղդպրոցը, որպես պարտիական լուսավորության սիստեմում նախնական օղակ, նախատեսված է այնպիսի կոմունիստների համար, որոնք չեն անցել քաղաքական ուսուցման որևէ կուրս և չունեն քաղաքական ու հանրակրթական անհրաժեշտ պատրաստականություն մարքսիստական-լենինյան թեորիան ու տեսությունը խոր ուսումնասիրելու համար։

Բայց մի շարք պարտիական կազմակերպություններում դեռևս թերագնահատվում է քաղաքական ուսուցման այդ կարևոր օղակը։ Պարտիական լուսավորության անցյալ ուսումնական տարում Վեդու, Թալինի, Մեղրու, Ամասիայի շրջաններում աննշան քանակությամբ կոմունիստներ էին ընդգրկված քաղդպրոցներում, այն դեպքում, երբ նշված շրջաններում պարտիայի



շատ անդամ-թեկնածուներ կարիք ունեն ուսումնասիրելու քաղգրագիտության հիմունքները։

Քաղդպրոցը, որպես պարտիական լուսավորության սիստեմի առաջին և անհրաժեշտ աստիճան, պետք է ունկնդիրներին տա որոշ քաղաքական գիտելիքներ և նախապատրաստի նրանց քաղուսուցման ավելի բարձր օղակներում սովորելու համար։ Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ նոր ուսումնական տարում վերակառուցել քաղդպրոցների աշխատանքները և հատուկ ուշադրություն դարձնել պարապմունքների գաղափարական բովանդակությանը։ Անհրաժեշտ է քաղդպրոցներում ընդգրկել բոլոր այն կոմունիստներին, կոմերիտականներին և անպարտիական ակտիվին, որոնք չունեն քաղգրագիտական և հանրակրթական մինիմալ գիտելիքներ մարքսիզմ-լենինիզմի թեորիան ուսումնասիրելու համար։

Ինչպես հայտնի է, մի քանի տարի առաջ, ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրող խմբակների ունկնդիրներն ու պրոպագանդիստները պարտիայի պատմությունը հիմնականում ուսումնասիրում էին ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացի շրջանակներում։ Դրա հետևանքով նրանց տեսադաշտից դուրս էր մնում ո՛չ միայն վերջին 20 տարիների մեր պարտիայի հերոսական գործունեության փառապանծ պատմությունը, որը հագեցված է համաշխարհային պատմական նշանակություն ունեցող իրադարձություններով, այլև ճիշտ չէին մեկնաբանվում պարտիայի պատմության մի շարք կարևորագույն հարցեր։ Շատ դեպքերում խմբակների և սեմինարների ունկնդիրներն անբավարար էին օգտագործում Վ. Ի. Լենինի աշխատությունները և կարևորագույն նշանակություն ունեցող պարտիական փաստաթղթերը, պարտիական պլենումների, կոնֆերանսների և համագումարների որոշումները։ Ավելին, միանգամայն անբավարար էր ուսումնասիրվում վերջին ժամանակաշրջանում պարտիայի կուտակած հարուստ փորձը սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքարում։

Անցյալ ուսումնական տարում պատկերը հիմնովին փոխվեց։ Վերակառուցվեց պարտիայի պատմության ուսումնական ծրագիրը և հրատարակվեց ՍՄԿՊ պատմության նոր ձեռնարկը, որն ավելի լրիվ և ամբողջական պատկերացում է տալիս մեր պարտիայի պատմության կարևորագույն էտապների վերաբերյալ։ Այս հանգամանքը նպաստեց բարձրացնելու կոմունիստների, կոմերիտականների և անպարտիական ակտիվի լայն շրջանների հետաքրքրությունը ՍՄԿՊ պատմության նկատմամբ։

Պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ պարտիական լուսավորության սիստեմի նոր ուսումնական տարում կազմակերպել ՍՄԿՊ պատմության լայն, ըստ ժամկետների և տարբեր մեթոդներով ուսումնասիրությունը։ Ըստ որում, պետք է առանձնահատուկ ուշադրություն դարձնել մեր պարտիայի վերջին տարիների գործունեության պատմության ուսումնասիրության վրա։ Այդ ուսումնասիրության ընթացքում անհրաժեշտ է օգտագործել նաև Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության և ռևոլյուցիոն շարժումների վերաբերյալ նյութերը, սերտորեն կապելով դրանք ՍՄԿՊ պատմության, մեր երկրի ռևոլյուցիոն շարժման պատմության հետ։

Անցյալ ուսումնական տարում պարտիական կազմակերպությունները մեծ ուշադրություն դարձրին կադրերի տնտեսագիտական կրթության կազ-

մակերպմանը։ Ստեղծվեցին մարքսիստական տնտեսագիտության թեորիան
և արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության կոնկրետ
էկոնոմիկան ուսումնասիրող 746 խմբակներ ու սեմինարներ։ Զգալի թվով
կոմունիստներ և կոմերիտականներ մարքսիստական տնտեսագիտության և
կոնկրետ էկոնոմիկայի հարցերը ուսումնասիրեցին ինքնուրույն կերպով։

Բնորոշ է, որ սոցիալիզմի քաղաքատնտեսության և կոնկրետ էկոնոմի-
կայի հարցերի ուսումնասիրության նկատմամբ հետաքրքրություն են ցուցա-
բերում ոչ միայն պարտիական, սովետական, տնտեսական աշխատողները,
այլև շարքային բանվորները, կոլտնտեսականները։

Պարտիական լուսավորության սիստեմի այդ կարևոր օղակում ընդգրկ-
ված կոմունիստները և անպարտիական ակտիվը ուսումնասիրում են կապի-
տալիզմի և, մասնավորապես, սոցիալիզմի քաղաքատնտեսության, կոնկրետ
էկոնոմիկայի հիմնական հարցերը, հարստացնում են իրենց գիտելիքները
մարքսիստական-լենինյան տնտեսագիտության բնագավառում։

Սակայն ոչ բոլոր կազմակերպություններում է, որ ճիշտ է կազմակերպ-
վում քաղաքատնտեսության, սոցիալիստական արդյունաբերության և գյու-
ղատնտեսության էկոնոմիկայի ակտուալ նշանակություն ունեցող հարցերի
ուսումնասիրությունը։ Մի շարք շրջաններում անցյալ ուսումնական տարում
գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակներ էին
կազմակերպել այնպիսի պարտիական կազմակերպություններում, որտեղ
կոմունիստների մեծամասնությունն ուներ տարրական և թերի միջնակարգ
կրթություն և իրենց քաղաքական ու տեսական պատրաստականությամբ ի
վիճակի չէին ուսումնասիրելու և յուրացնելու սոցիալիստական գյուղատնտե-
սության էկոնոմիկայի մի շարք կարևոր ու բարդ պրոբլեմներ։

Որոշ պարտիական կազմակերպություններում (Երևան քաղաքի Ստալին-
յան, Սպանդարյան շրջկոմները, Լենինականի, Կիրովականի քաղկոմները)
կոնկրետ էկոնոմիկայի խմբակների պարապմունքներում մոռացության էին
տալիս մարքս-լենինյան թեորիայի հարցերը և ըստ էության կոմունիստների
քաղաքական ուսուցումը փոխարինվում էր անխնիկական, արտադրական
ուսուցումով։ Նման տիպի խմբակների պարապմունքները հաճախ վեր էին
ածվում արտադրական խորհրդակցությունների, որտեղ կոնկրետ էկոնոմի-
կայի հարցերը տեսական մեկնաբանություն չէին ստանում։

Հասկանալի է, որ նոր ուսումնական տարում չի կարելի հանդուրժել
մեր կադրերի տնտեսագիտական ուսուցման նման վիճակը։ Անհրաժեշտ է
այնպես կազմակերպել մարքսիստական տնտեսագիտական թեորիայի ուսու-
ցումը, որ այն ընդարձակի կոմունիստի տեսական մտահորիզոնը, օգնի
ունկնդիրներին ճիշտ ըմբռնելու այն կոնկրետ խնդիրները, որոնք դրված են
տվյալ հիմնարկության, ձեռնարկության առջև։

Մեր պարտիան միշտ կարևոր նշանակություն է տվել դիալեկտիկական և
պատմական մատերիալիզմի ուսումնասիրությանը։ Բայց ցավոք սրտի
պետք է նշել, որ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն անց-
յալ ուսումնական տարում անհրաժեշտ ուշադրություն չդարձրին մարքսիս-
տական փիլիսոփայության հարցերի ուսումնասիրությանը։ Այլ կերպ ինչով
բացատրել, որ ռեսպուբլիկայում դիալեկտիկական և պատմական մատերիա-
լիզմն ուսումնասիրում էին ընդամենը 3000 կոմունիստ։ Մի շարք շրջան-
ներում (Սևան, Ալավերդի, Ապարան, Կիրովական) մարքսիստական փիլի-



սոփայության ուսումնասիրությունը պարտիական լուսավորության սիստե-
մում գրավում էր աննշան տեղ։

Պարտիայի Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղաքային, ինչպես
նաև մի շարք շրջանային կոմիտեներ բավարար ուշադրություն չեն դարձնում
քաղաքական ուսուցման այդ կարևոր բնագավառին, հոգ չեն տանում դիալեկ-
տիկական և պատմական մատերիալիզմն ուսումնասիրող խմբակների և սե-
մինարների պրոպագանդիստներ պատրաստելու մասին։

Այժմ, երբ հայերեն լեզվով լույս է տեսել «Մարքսիստական-լենինյան
փիլիսոփայության հիմունքները» ձեռնարկը, անհրաժեշտ է պարտիական նոր
ուսումնական տարում վճռական բեկում մտցնել և ավելացնել դիալեկտի-
կական ու պատմական մատերիալիզմն ինքնուրույն ուսումնասիրողների ու
սեմինարների քանակը։ Մարքսիստական փիլիսոփայության ուսուցումը
պետք է կազմակերպել այնպես, որ այն զինի կոմունիստներին, մեր բոլոր
գիտական ու մանկավարժական կադրերին մարքսիզմ-լենինիզմի թեորիա-
կան հիմունքների իմացությամբ, երևույթների բացատրության դիալեկտիկա-
մատերիալիստական մեթոդոլոգիայով, ռևիզիոնիզմի և բուրժուական իդեո-
լոգիայի դեմ պայքարելու կարողությամբ։

Պարտիական լուսավորության սիստեմում իրենց կարևոր տեղն ու դերն
ունեն մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանները։ Դրանք կոչված են
օգնելու պարտիական, սովետական, տնտեսական, պրոֆմիութենական, կո-
մերիտական ակտիվին՝ հարստացնելու իրենց քաղաքական գիտելիքները։
Անցյալ ուսումնական տարում վերակառուցվեցին Երևանի և Լենինականի
մարքսիզմ-լենինիզմի համալսարանների աշխատանքները։ Մարքսիզմի բաղ-
կացուցիչ մասերն ավելի խոր ուսումնասիրելու նպատակով ստեղծվեցին
տնտեսագիտության, փիլիսոփայության, պատմության և ընդհանուր ֆակուլ-
տետներ։ Այդ հանգամանքը թարմություն մտցրեց երեկոյան համալսարան-
ների ուսումնական ծրագրերում և աշխուժացրեց նրանց աշխատանքը։

Սակայն Երևանի, Լենինականի քաղաքային կոմիտեները, պարտիական
կազմակերպությունները և համալսարանների դիրեկցիաներն անհրաժեշտ
աշխատանք չտարան համալսարանները կոնտինգենտով ապահովելու համար։
Մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանների դիրեկցիաների առաջնա-
հերթ խնդիրն է՝ վերակառուցել երեկոյան համալսարանների աշխատանքը,
վճռական կազմակերպչական միջոցառումներ ձեռնարկել երեկոյան համալ-
սարանները նոր ուսումնական տարում համապատասխան կոնտինգենտով և
որակյալ դասախոսական կազմով ապահովելու համար։

Պարտիական լուսավորության սիստեմի կենտրոնական դեմքը պրոպա-
գանդիստն է, նրա տեսական պատրաստականությունից և մեթոդական վար-
պետությունից է կախված պարապմունքի քաղաքական-գաղափարական մա-
կարդակը։ Պրոպագանդիստական աշխատանքում պետք է ներգրավել տեսա-
կանորեն պատրաստված, պրոպագանդիստական աշխատանքի փորձ ունե-
ցող ընկերներին։

Ժամանակակից պայմաններում, երբ զգալիորեն ընդլայնվել է աշխա-
տավորների ընդհանուր ու քաղաքական մտահորիզոնը, առաջնահերթ նշա-
նակություն է ստանում պարտիական-պրոպագանդիստական աշխատանքի
մասսայականությունը։ Անհրաժեշտ է պարտիական լուսավորության սիստե-

մում լայնորեն ներգրավել անպարտիականներին, առաջին հերթին՝ կոմերի-
տականներին։
Պարտիական կազմակերպությունները կոչված են լուրջ ուշադրություն
դարձնելու կոմերիտական ու արտամիութենական երիտասարդության գաղա-
փարական-քաղաքական դաստիարակության հարցերին։
Կոմերիտմիությունը մեր պարտիայի հուսալի ռեզերվն է, նրա հավա-
տարիմ օգնականը։ Սովետական երիտասարդությունը կարևոր դեր է խաղում
երկրի հասարակական-քաղաքական կյանքում, ակտիվորեն մասնակցում է
պարտիայի XXI համագումարի կողմից առաջադրված հոյակապ խնդիրների
կենսագործմանը։ Երիտասարդության մեջ տարվող իդեոլոգիական աշխա-
տանքը ավելի բարդ է ու դժվար։ Դա բացատրվում է նրանով, որ երիտա-
սարդը նոր է մտնում աշխատանքի բնագավառ, նոր է ձևավորվում նրա աշ-
խարհայացքը։ Մինչդեռ որոշ պարտիական կազմակերպություններ, հաշվի
չառնելով երիտասարդության հետ տարվող քաղաքական աշխատանքի
յուրօրինակությունները և դժվարությունները, այդ գործը հանձնարարում
են տեսականորեն թույլ պատրաստված, քաղաքական աշխատանքի փորձ
չունեցող պրոպագանդիստներին։ Իսկ երբեմն էլ այդ կարևոր գործը մատ-
նըվում է ինքնահոսի։ Պարտիական կազմակերպությունները սովորաբար
բավարարվում են նրանով, որ կոմերիտական խմբակների պրոպագան-
դիստներին մասնակից են դարձնում պարտիական շրջկոմներին կից պրո-
պագանդիստների մշտական գործող սեմինարներին։ Բայց այդ մշտական
գործող սեմինարներում հաշվի չեն առնվում երիտասարդության մեջ տարվող
իդեոլոգիական աշխատանքի առանձնահատկությունները և կոնկրետ մեթո-
դական օգնություն ցույց չի տրվում պրոպագանդիստներին։
Պարտիայի XXI համագումարը ժողովրդական տնտեսության զարգաց-
ման հեռանկարային վիթխարի խնդիրներ է առաջադրել։ Այդ խնդիրների
կենսագործումը պահանջում է իդեոլոգիական աշխատանքը բարձրացնել կո-
մունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի նոր մակարդակին, այն
սերտորեն կապել կյանքի, տնտեսական ու կուլտուրական շինարարության
խնդիրների հետ։
Քաղաքական լուսավորության բովանդակության հետագա բարելավման,
նրա գաղափարական մակարդակի ներգործության ու դաստիարակչական դե-
րի բարձրացման խնդիրները պարտիական կազմակերպություններից հրա-
մայաբար պահանջում են վճռականապես բարձրացնել քաղաքական աշխա-
տանքի կազմակերպական մակարդակը։
Պարտիական լուսավորության սիստեմի բոլոր օղակների հիմնական
խնդիրն է՝ գաղափարական դաստիարակության բարձր մակարդակն ապա-
հովելով հանդերձ, օգնել մեր աշխատավորներին, որպեսզի նրանցից յուրա-
քանչյուրն իր պատվավոր տեղն իմանա կոմունիզմի կառուցման գործում։

# ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻՆ ԱՆՑՆԵԼՈՒ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

Ռ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

ՍՄԿՊ XXI համագումարն ազդարարեց մեր Հայրենիքի պատմության մեջ
նոր էտապի, կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամա-
նակաշրջանի սկիզբը։ Այդ ժամանակաշրջանում կստեղծվի կոմունիզմի նյու-
թատեխնիկական բազան, կլուծվի հիմնական տնտեսական խնդիրը՝ բնակչու-
թյան մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ հասնել ու անցնել
առավել զարգացած կապիտալիստական երկրներին։ Այս խնդիրների իրագոր-
ծումն առաջին հերթին կապված է արտադրողական ուժերի զարգացման հետ։
Հենց դրանց զարգացումն է, որ ապագայում հնարավորություն կստեղծի սո-
ցիալիստական արտադրական հարաբերություններից անցնելու կոմունիստա-
կան արտադրական հարաբերություններին՝ ըստ պահանջմունքների բաշխման
սկզբունքով։ Սակայն արտադրողական ուժերի բուռն զարգացման մեջ ակտիվ
դեր է վերապահված սոցիալիստական արտադրական հարաբերություններին։
Դրանք հանդիսանում են տնտեսական այն ձևը, որի ներսում և որի ազդեցու-
թյան տակ արտադրողական ուժերը ստանում են իրենց հետագա զարգացու-
մը։ Եվ որպեսզի կոմունիզմի ուղիներում արտադրական հարաբերությունները
կատարեն արտադրողական ուժերի զարգացման ձևի այդ դերը, նրանք պետք
է շարունակ զարգանան ու կատարելագործվեն՝ արտադրողական ուժերի զար-
գացմանը զուգընթաց։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԲԱՐՁՐ ՁԵՎՆ ԵՆ

Մատնանշելով Մարքսի գիտական մեծ սխրագործություններից մեկը,
Էնգելսն ասել է. «Ճիշտ այնպես, ինչպես Դարվինը հայտնագործեց օրգանա-
կան աշխարհի զարգացման օրենքը, այնպես էլ Մարքսը հայտնագործեց
մարդկային պատմության զարգացման օրենքը»։ Պարզաբանելով այդ դրույթը,
կարելի է ասել, որ Մարքսի հայտնագործած «մարդկային պատմության զար-
գացման օրենքի»՝ պատմական մատերիալիզմի հիմքերից մեկը հանդիսանում
է արտադրության եղանակի և նրա կողմերի փոխազդեցության օրինաչափու-
թյունների մասին ուսմունքը։ Մարքսը ցույց տվեց, որ արտադրության պրոցե-
սը կատարվում է մարդկանց և բնության հարաբերության (արտադրողական
ուժեր) և մարդկանց միմյանց նկատմամբ ունեցած հարաբերության (արտա-
դրական հարաբերություններ) միասնության մեջ։

Պատմությունը վաղուց է վկայել, որ տնտեսական ձևերը, որոնցում կատարվում է արտադրության պրոցեսը, անցողիկ են։ Բայց միայն Մարքսի անվան հետ է կապված այն մեծագույն նշանակություն ունեցող օրենքի հայտնագործումը, համաձայն որի «արտադրության նյութական միջոցների, արտադրողական ուժերի փոփոխման ու զարգացման հետ փոխվում, վերափոխվում են հասարակական արտադրահարաբերությունները»։ Սակայն Մարքսը կանգ չառավ նշված փաստի արձանագրման վրա։ Նա ցույց տվեց նաև արտադրական հարաբերությունների հակադարձ ներգործությունը բուն արտադրողական ուժերի զարգացման վրա։ Այդ ներգործությունն արտահայտվում է այն բանով, որ արտադրական հարաբերություններն արտադրողական ուժերի զարգացման մակարդակին համապատասխանելու ժամանակաշրջաններում հանդիսանում են նրանց շարժմանն ու զարգացմանը նպաստող ձևը, իսկ այնուհետև, արտադրության եղանակի էվոլյուցիայի պրոցեսում ետ մնալով առաջ գնացած արտադրողական ուժերից, հակասության մեջ են մտնում դրանց հետ և դառնում են նրանց զարգացման շղթաները։

Արտադրական հարաբերությունների և արտադրողական ուժերի փոխազդեցության օրինաչափություններից Մարքսը հետևցրեց սոցիալիստական ռևոլյուցիայի անխուսափելիության և սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման իր տեսությունը։ Մեր երկրում սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման պատմությունը Մարքսի հանճարեղ եզրակացությունների փայլուն հաստատումն է։ Պատմությունը վկայում է նաև այն մասին, որ Լենինը և Կոմունիստական պարտիան կոնկրետ, պրակտիկ իրականության մեջ հանճարեղ կերպով զարգացրին արտադրաեղանակի մարքսյան ըմբռնումը։ Չէ՞ որ պատմականորեն դրվեց և լուծվեց սոցիալիստական արտադրական հարաբերությունների ըստեղծման և արտադրողական ուժերի առաջադիմության այն բոլոր, հիրավի անսահման հնարավորությունների ծավալման հարցը, որոնք թաքնված էին այդ արտադրահարաբերությունների մեջ։

Բայց ինչո՞վ է պայմանավորվում սոցիալիստական արտադրական հարաբերությունների իսկապես հրաշագործ ուժը։

Սոցիալիստական արտադրական հարաբերությունների հիմքում ընկած է հանրային, սոցիալիստական սեփականությունը, որը և որոշում է նրանց բոլոր առանձնահատկությունները։ Սոցիալիստական սեփականության շնորհիվ արտադրության պրոցեսում մարդկանց միջև ստեղծվում են ընկերական, եղբայրական համագործակցության ու փոխօգնության հարաբերություններ։ Հասարակության ամենաբարձր նպատակը դառնում է իր բոլոր անդամների աճող պահանջմունքների լրիվ բավարարումը։ Ըստ կապիտալի բաշխման սկզբունքի փոխարեն հաղթանակում է ըստ աշխատանքի քանակի ու որակի բաշխման սկզբունքը։ Սոցիալիստական արտադրության այդ առանձնահատկությունները, որոնք բխում են սեփականության հանրային ձևից, ամբողջ հասարակության և նրա յուրաքանչյուր անդամի համար ստեղծում են նյութական ու բարոյական չտեսնված ուժի ազդակներ՝ արտադրողական ուժերի զարգացման գործում։ Հետևաբար, սոցիալիստական արտադրական հարաբերությունները որպես արտադրողական ուժերի ավելի արագ զարգացման ձե բնորոշող վճռական պայմաններից մեկն էլ այն է, որ սոցիալիստական արտադրական հարաբերությունները պատմության մեջ առաջին անգամ ստեղ-



ծում են օբյեկտիվ հնարավորություն՝ բավարարելու ոչ թե առանձին դասակարգի, այլ ամբողջ հասարակության շահերը։ Ուստի և աշխատավոր մասսաների մոտ երևան է գալիս անձնական նյութական շահագրգռվածություն՝ արտադրության աճի, արտադրողական ուժերի զարգացմանը նպաստող շահագրգռվածություն։

Դրա հետ միասին սոցիալիզմի արտադրական հարաբերությունները ստեղծում են նաև ժամանակակից արտադրողական ուժերի զարգացման մեկ այլ վճռական պայման։ Դա սեփականության հանրային ձևի հիման վրա առաջացող արտադրամիջոցների և աշխատանքի հանրայնացումն է ամբողջ հասարակության մասշտաբով։ Դեռևս Մարքսն է գրել, որ միայն անմիջականորեն հանրայնացված աշխատանքի ձեռքում մեքենան կարող է գործել, և այդ խոր դիտողությունն այնքան ավելի մեծ նշանակություն ունի, որքան ավելի է զարգացած տեխնիկան, որքան ավելի բարդ է մեքենան։ Ժամանակակից արտադրողական ուժերը, որոնք հիմնված են էլեկտրիֆիկացիայի և խոշոր մեքենայական ինդուստրիայի, էլեկտրոնիկայի, ավտոմատիկայի ու քիմիացման վրա, իրենց անընդհատ, արագ զարգացման համար սնուցիչ միջավայր են գտնում միայն աշխատանքի և արտադրամիջոցների հանրայնացման սոցիալիստական ձևի մեջ։

Սոցիալիստական արտադրական հարաբերությունները շնորհիվ ամբողջ հասարակության մասշտաբով աշխատանքի ու արտադրամիջոցների հանրայնացման և նյութական շահերի ներդաշնակության, ստեղծում են օբյեկտիվ հնարավորություն և անհրաժեշտություն արտադրության պրոցեսի գիտակցական պլանավորման և նրա զարգացման համար։

Բայց արտադրաեղանակի զարգացման պրոցեսում արտադրողական ուժերից արտադրական հարաբերությունների ետ մնալու օրինաչափությունը, որ բացահայտեց Մարքսը, սոցիալիզմի ժամանակ չի կորցնում իր ուժը։ Այստեղ նույնպես արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների միջև առաջանում են հակասություններ։ Բայց սոցիալիզմի մեծ առավելությունը ո՛չ միայն այն է, որ նա հնարավորություն է տալիս գիտակցորեն զարգացնելու արտադրողական ուժերը, այլև այն, որ սոցիալիզմի ժամանակ հասարակությունն ի վիճակի է գիտակցորեն բացահայտելու և հաղթահարելու արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների միջև առաջացող հակասությունները։

Սոցիալիստական արտադրական հարաբերությունները հանդիսանում են արտադրողական ուժերի զարգացման բարձրագույն ձևը, և դա օբյեկտիվորեն պայմանավորված է այն բանով, որ սեփականության սոցիալիստական ձևը և դրա վրա հիմնված արտադրության, փոխանակության և բաշխման հարաբերությունները բաց են անում պատմության մեջ չտեսնված հնարավորություններ՝ աշխատավորների անձնական նյութական շահերի բազմակողմանի բավարարման համար, դրանք ներդաշնակորեն զուգակցելով հասարակական շահերի հետ, ստեղծում են աշխատանքի և արտադրամիջոցների հանրայնացում ամբողջ հասարակության մասշտաբով, որը հանդիսանում է ժամանակակից և ապագա տեխնիկայի գործողության ու զարգացման օբյեկտիվ միջավայրը, առաջացնում են հասարակական արտադրության պլանաչափ կարգավորման հնարավորություն և անհրաժեշտություն և, վերջապես, իրենց մեջ պարունակում են արտադրողական ուժերի զարգացման մակարդակին հասնելու ձգ-

տում, արտադրողական ուժերի զարգացման մակարդակին արտադրական հա-
րաբերությունների համապատասխանության վերականգնում։

## ՊԵՏԱԿԱՆ ԵՎ ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ-ԿՈՈՊԵՐԱՏԻՎ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՈՒՄՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Սոցիալիստական արտադրական հարաբերությունների կատարելագործ-
ման հիմքը սոցիալիստական սեփականության՝ ինչպես նրա պետական, այն-
պես էլ կոլտնտեսային-կոոպերատիվ ձևի ամրապնդումն ու զարգացումն է։
Այդ երկու ձևերը նույնատիպ են. սոցիալիստական ձևերն են, որ ծառայում
են սոցիալիզմի զարգացման ու ամրապնդման գործին, կոմունիզմի կառուց-
ման գործին։ Սակայն դրանց միջև կա տարբերություն։ Դա հանրայնացման
աստիճանն է։ Պետական սեփականությունը հանրայնացված է համաժողո-
վրդական մասշտաբով, իսկ կոլտնտեսային-կոոպերատիվը՝ խմբային մասշ-
տաբով։ Կոմունիզմին անցումը պահանջում է, որ այդ ձևերը աստիճանաբար
միաձուլվեն համաժողովրդական մասշտաբով հանրայնացված մի միաս-
նական կոմունիստական սեփականության մեջ։ Ըստ որում, սեփականության
միասնական ձևի ստեղծումը լինում է ո՛չ թե պետական սեփականության
կողմից կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը կլանելու ճանապար-
հով, այլ ինչպես պետական, այնպես էլ կոլտնտեսային-կոոպերատիվ սեփա-
կանությունն ամեն կերպ զարգացնելու ճանապարհով։

Իսկ գործնականորեն, կոնկրետ կերպով ինչպե՞ս է կատարվում սեփակա-
նության սոցիալիստական ձևերի ամրապնդումը։ Ե՛վ պետական, և՛ կոլտըն-
տեսային սեփականության ամրապնդման կարևորագույն ուղիներից մեկը
արտադրամիջոցների, ընդհանրապես նյութական արժեքների քանակական
ավելացումը և որակի բարձրացումն է։ ՍՍՌՄ-ում պետական, համաժողո-
վրդական սեփականություն են 200 հազարից ավելի արդյունաբերական ձեռ-
նարկություններ, երկաթուղիների ամբողջ ցանցը, օդային ու ջրային ամբողջ
տրանսպորտը՝ իր ձեռնարկություններով, գրեթե 6 հազար սովետական տնտե-
սություններ, 5 հազարից ավելի ՆՏԿ-ներ ու ՄՏԿ-ներ, պետական ձեռնարկու-
թյուններին ու հիմնարկներին կից 108 հազար օժանդակ գյուղատնտեսական
ձեռնարկություններ, փիթխարի կոմունալ տնտեսությունը, ամբողջ բնակելի
ֆոնդի մեծ մասը, գիտական ու կուլտուրական հազարավոր հիմնարկներ և
այլն։ Այդ սեփականությունը ստեղծվել է սովետական ժողովրդի աշխատան-
քով, որը, օրինակ, Սովետական իշխանության տարիներին, միայն արդյունա-
բերության հիմնական ֆոնդերն ավելացրել է ավելի քան 30 անգամ։

Պարտիայի XXI համագումարը նշեց պետական սեփականության հետա-
գա ընդլայնման ծրագիր։ Այսպես, օրինակ, յոթնամյակում արդյունաբերու-
թյան մեջ կապիտալ շինարարության և վերակառուցման համար կներդրվեն
երկու անգամ ավելի միջոցներ, քան նախորդ յոթնամյակում (մոտավորապես
700 միլիարդ ռուբլի), բնակարանային շինարարությանը կհատկացվի 375—
380 միլիարդ ռուբլի, կուլտուր-կենցաղային շինարարությանը՝ 80 միլիարդ
ռուբլի և այլն։ Միաժամանակ կստեղծվեն հազարավոր նոր տիպի մեքենաներ,
մեխանիզմներ, սարքավորում, ավտոմատացման միջոցներ, կիրականացվի
շատ ձեռնարկությունների արմատական վերակառուցումը, որը նույնպես կամ-
րապնդի, կզարգացնի պետական սեփականությունը՝ բարձրացնելով նրա որա-



կը։ Է՛լ ավելի կամրապնդվի նաև կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականու-
թյունը։

Յոթնամյակի ընթացքում գյուղատնտեսության մեջ ներդրվելու է 500 մի-
լիարդ ռուբլի, որի մեծ մասը ծախսվելու է կոլտնտեսային կարգի զարգաց-
ման համար։ Կոլտնտեսային սեփականության ամրապնդման համար պատ-
մական նշանակություն ունեցան պարտիայի միջոցառումները, որոնք հան-
գեցրին կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի և նրանց ամբողջ սեփա-
կանության խիստ աճին։

ՄՏԿ-ների վերակազմումը և տեխնիկայի հանձնումը կոլտնտեսություն-
ներին՝ ամրապնդեցին կոլտնտեսային սեփականությունը և ընդլայնեցին նրա
տիրապետության ոլորտը հանրային արտադրության մեջ։ Ինչպես, չէ՛ որ
գյուղատնտեսական արտադրության միջոցները, որոնք պետության սեփակա-
նություն էին, դարձան կոլտնտեսությունների սեփականությունը՝ փոխելով
իրենց ձևը։ Իսկ կոլտնտեսային սեփականությունը, որը տարածվում էր միայն
երկրորդական արտադրամիջոցների վրա, տարածվեց արտադրության ու
սպառման բոլոր միջոցների վրա, բացառությամբ հողի։

Ժողովրդական տնտեսության մեջ տիրապետության ոլորտի ընդլայնման
միջոցով ամրապնդվում է նաև պետական սեփականությունը։ Դա հարյուրա-
վոր նոր սովետական տնտեսությունների կազմակերպումն է, արտադրական
շրջանառության մեջ միլիոնավոր հեկտար խոպան հողերի ներգրավումը։

Կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունն ամրապնդելու սիստե-
մատիկ ձևը, որն ապագայում կհանգեցնի պետական սեփականության հետ
նրա միաձուլմանը, նրա հանրայնացման աստիճանի բարձրացումն է։ ՍՄԿՊ
XXI համագումարում Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ նշվեցին այն ուղիները,
որոնցով ընթանալու է կոմունիստական շինարարության այդ ամենաբարդ
պրոցեսը։ Ամենից առաջ դա կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի
աճումն է։ Անբաժանելի ֆոնդերը կազմում են կոլտնտեսությունների հիմնա-
կան հարստությունը, բայց դրանց ստեղծման մեջ ներդրված է ո՛չ միայն
կոլտնտեսային գյուղացիության, այլև ամբողջ ժողովրդի աշխատանքը։
Ելնելով կոմունիստական շինարարության շահերից, կոլտնտեսություններն
ավելացնում են անբաժանելի ֆոնդերի համար հատկացումները։ Այդ ավե-
լացումը կատարվում է ինչպես արտադրության աճի հաշվին, այնպես էլ
աշխօրերի և անբաժանելի ֆոնդերի համար հատկացվող միջոցների հարաբե-
րակցությունը փոփոխելու հաշվին։ Եթե 1956 թվականին անբաժանելի ֆոն-
դերի համար հատկացվեց 16,7 միլիարդ ռուբլի, ապա 1958 թվականին, շնոր-
հիվ արտադրության և հատկացումների բաժնի աճի, դրանք կազմեցին 25
միլիարդ ռուբլի։ Յոթնամյակի ընթացքում կոլտնտեսություններն իրենց անբա-
ժանելի ֆոնդերը կավելացնեն հարյուր միլիարդավոր ռուբլիներով։

Արտադրության կոլտնտեսային ձևն իր մեջ զուգակցում է կոլտնտեսա-
կանների պահանջմունքների բավարարման և՛ հանրային, և՛ անձնական ձևե-
րը։ Կոլտնտեսությունների զարգացման փորձը ցույց է տալիս, որ հանրային
արտադրության աճն աստիճանաբար կստեղծի նյութական և տնտեսական
ռեալ հիմքեր՝ հաղթահարելու համար նաև այդ տարբերությունը։ Որոշ կոլ-
տնտեսություններում արդեն այժմ կոլտնտեսականների հիմնական պահանջ-
մունքները բավարարվում են հանրային արտադրության հաշվին, որի շնորհիվ

կոլտնտեսականները հանձնել են տնամերձ հողամասերը և կոլտնտեսություններին են վաճառել իրենց կովերն ու այլ անասուններ։ Կոլտնտեսությունների շրջանակներում սեփականության հանրայնացման աստիճանի այդ բարձրացումը հսկայական դեր կխաղա աշխատանքի կուլտուրայի, նրա արտադրողականության բարձրացման և կոլտնտեսականների պահանջմունքների ավելի լավ բավարարման գործում։ Անձնական տնտեսությունից աստիճանաբար հրաժարումը մեծ նշանակություն ունի նաև կոլտնտեսություններում աշխատանքի կարգապահությունն ամրապնդելու, հանրային աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար։ Ինչպես արդարացի կերպով նշեց ընկ. Ս. Հ. Թովմասյանը Հայաստանի Կոմպարտիայի XX համագումարում, հազիվ թե կարելի է կոլտնտեսություններում լիարժեք աշխատել, անձնական տնտեսությունում ունենալով 2—3 կով, 10—20 ոչխար և այլն։ Եվ մեծ մասամբ հենց դրանով է բացատրվում այն փաստը, որ 1958 թվականին 47.281 կոլտնտեսական չկատարեց աշխօրերի մինիմումը և այն, որ 14.250 կոլտնտեսական ընդհանրապես չմասնակցեց ոչ մի աշխօր։ Հանրային արտադրության աճի համեմատ անձնական տնտեսությունից աստիճանական հրաժարումն ունի ո՛չ միայն տնտեսական, այլև հասարակական մեծ նշանակություն։ Դա նպաստում է կոլտնտեսականների կուլտուրայի բարձրացմանը, աշխատանքի բնույթի փոփոխմանը և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի սկզբունքների ամրապնդմանը։ Կոլտնտեսականների անձնական տնտեսությունների հանրայնացումը կնպաստի կոլտնտեսային սեփականության համաժողովրդական սեփականության հետ միաձուլվելուն, կոմունիզմի արտադրական հարաբերություններ դառնալուն։

Կոլտնտեսային սեփականությունը համաժողովրդական սեփականության հետ միաձուլելու ուղի է հանդիսանում նաև առանձին կոլտնտեսությունների կամ նույնիսկ շրջանների սահմաններից դուրս եկող սեփականության հանրայնացումը։ Կոլտնտեսային արտադրության զարգացման անհրաժեշտությունը պահանջում է զարգացնել միջկոլտնտեսային արտադրական կապերը, հանրայնացնել աշխատանքը մի շարք կոլտնտեսությունների կամ շրջանների մասշտաբով։ Իսկ դա հնարավոր է միայն այնպիսի արտադրամիջոցների, ձեռնարկությունների ստեղծման բազայի վրա, որոնք ո՛չ թե առանձին կոլտնտեսության, այլ տարբեր շրջանների և նույնիսկ ռեսպուբլիկայի մեջ մտնող մի քանի կամ նույնիսկ շատ կոլտնտեսությունների սեփականությունն են։

Վերջապես, գյուղատնտեսության էլեկտրիֆիկացիայի, մեքենայացման և ավտոմատացման զարգացումը գնալով ավելի է միաձուլելու կոլտնտեսային ու պետական արտադրամիջոցները մի միասնական համաժողովրդական արտադրամիջոցների մեջ, համաժողովրդական սեփականության մեջ, որը նույնպես տանելու է դեպի սոցիալիստական սեփականության երկու ձևերի միջև տարբերությունների հաղթահարում։

Այսպիսով, իրականացվելով տարբեր ձևերով, կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության հանրայնացման մակարդակի բարձրացումը խմբայինից մինչև համաժողովրդական հանրայնացման մակարդակի՝ հանդիսանում է սոցիալիստական սեփականության երկու ձևերը մի միասնական, համաժողովրդական կոմունիստական սեփականության մեջ միաձուլելու ուղին։ Եվ դա ձեռք է բերվում կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը ո՛չ թե սահմանափակելու, այլ ամեն կերպ ամրապնդելու, զարգացնելու միջոցով։



## ԴԵՊԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում մեր առաջընթացը դեպի միասնական կոմունիստական սեփականություն՝ անհրաժեշտաբար առաջ է բերում արտադրական հարաբերությունների բոլոր կողմերի կատարելագործում։ Վերջին տարիներին մեր երկրում իրականացվեցին լայն միջոցառումներ՝ արտադրության պրոցեսում մարդկանց հարաբերությունների կատարելագործման, բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի ամրապնդման ուղղությամբ։ Այդ կատարելագործումն ունի մեկ ուղղություն՝ է՛լ ավելի զարգացնել սոցիալիստական արտադրության աշխատողների ընկերական համագործակցությունը, փոխօգնությունը, ավելի լայն ասպարեզ բացել աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Միլիոնավոր մասնագետների տեղափոխումը կառավարչական ոլորտից նյութական արտադրության ոլորտը, արդյունաբերությունից՝ գյուղատնտեսություն, արդյունաբերության ու շինարարության կառավարման ձևերի վերակառուցումը, տասնյակ հազարավոր առաջավոր բանվորների ու մասնագետների կոլտնտեսությունները ղեկավար աշխատանքի ուղարկելը, ահա այն քայլերը, որ պարտիան կատարեց մարդկանց գործունեության փոխադարձ կապերն արտադրության պրոցեսում կատարելագործելու համար։ Սոցիալիստական արտադրական հարաբերությունները նոր աստիճանի բարձրացնելու համար հիրավի արմատական նշանակություն ունեցավ ՄՏԿ-ների վերակազմումը։

Սոցիալիստական հասարակության արտադրական հարաբերությունների առանձնահատկությունը սոցիալիստական մրցությունն է։ Այն ո՛չ միայն մարդկանց և հասարակության նոր հարաբերությունների, ձգտումների և նպատակների արտացոլման հայելին է, այլև պատմության մեջ չտեսնված սոցիալական ինստիտուտ «աշխատանքի կազմակերպվածությունն անշեղ բարձրացնելու համար, բարձրագույն տեխնիկայի անցնելու համար, աշխատանքի և պրոդուկտների տնտեսման համար...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 177)։ Սոցմրցման ո՛չ միայն մասշտաբների, այլև ձևերի զարգացումը՝ մեր հասարակության արտադրական հարաբերությունների կատարելագործման կենսական խնդիրներից մեկն է։ Եվ որ այդ խնդրի լուծման գործում ձեռք են բերվել հաջողություններ՝ վկայում է կոմունիստական աշխատանքի բրիգադաների կոչման համար ծավալված շարժումը։ Դրանք արդեն կոմունիզմի արտադրության ապագա հարաբերությունների պարզ տեսանելի ձևերն են։

Կոմունիստական աշխատանքի բրիգադները սոցմրցության որակական նոր ձև են, ապագա հասարակության մարդու՝ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի աստիճանական ձևավորման ուղին։ Այդ բրիգադների գլխավոր խնդիրն է՝ աշխատանքի տվյալ տեսակի գծով հասնել աշխարհում աշխատանքի ամենաբարձր արտադրողականության։ Հենց դա էլ որոշում է դրանց անդամների աշխատանքի, ուսման և կենցաղի ձևերն ու մեթոդները։ Սոցմրցման նոր ձևի բնորոշ առանձնահատկությունը բանվորների կուլտուր-տեխնիկական մակարդակը ինժեներա-տեխնիկական աշխատողների մակարդակին բարձրացնելու սկսված պրոցեսն է։ Այստեղից էլ բխում է այն պարտադիր պահանջը, որ բրիգադների անդամները պետք է սովորեն, ստանան միջնակարգ, իսկ այնուհետև բարձրագույն մասնագիտական կրթու-

*թյուն։ Այս ամենն աստիճանաբար աշխատանքը դարձնում է առողջ օրգանիզմի ֆիզիկական և հոգևոր պահանջ։*

*Աշխատանքի նոր հարաբերությունները աստիճանաբար կկազմավորեն նաև մարդկանց նոր, կոմունիստական հարաբերություններ կենցաղում, որը բնութագրվում է կոլեկտիվիզմի բարձրագույն ձևով, հայրենասիրությամբ, փոխօգնությամբ, միմյանց նկատմամբ հոգատարությամբ և բարեկամությամբ, բոլոր ընդունակությունների նպատակասլաց ներդաշնակ զարգացմամբ, կոմունիստական բարոյականության և համակեցության կանոնները խախտողների նկատմամբ անհաշտելիությամբ։*

## ՓՈԽԱՆԱԿՈՒԹՅԱՆ ԵՎ ԲԱՇԽՄԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

*Սեփականության ձևերի և արտադրության մեջ դրանցից բխող հարաբերությունների ամրապնդումը զարգացնում է արտադրամիջոցների և աշխատանքի սոցիալիստական հանրայնացումը, դրանով իսկ ստեղծելով արտադրողական ուժերի զարգացման օբյեկտիվ տնտեսական հնարավորություններ։ Բայց այդ հնարավորություններն իրագործելու համար անհրաժեշտ է մարդկանց, դասակարգերի, ամբողջ հասարակության նյութական շահագրգռվածությունը՝ արտադրողական ուժերի զարգացման մեջ։ Արտադրողական ուժերի զարգացման մեջ յուրաքանչյուրի և բոլորի, պատմության մեջ ամենաբարձր նյութական շահագրգռվածությունն ապահովվում է փոխանակության և բաշխման սոցիալիստական հարաբերություններով։ Այսինքն՝ փոխանակության ապրանքային ձևով և ըստ աշխատանքի քանակի ու որակի բաշխումով։ Քանի դեռ բաշխումը կախված է աշխատանքի քանակից ու որակից, այլ ձև, քան ապրանքա-փողային ձևն է, չի կարող լինել նյութական բարիքների փոխանակման համար, որոնք արտադրվում են ինչպես պետական, այնպես էլ կոլտնտեսային-կոոպերատիվ սեկտորներում և աշխատավորների անձնական տնտեսությունում։ Միայն արդյունքների փոխանակության ապրանքային ձևն է, որ յուրաքանչյուր աշխատավորի, ձեռնարկության թույլ է տալիս իրականացնելու ծախսված կենդանի և առարկայացած աշխատանքի համարժեք փոխհատուցում, նյութական դրությունը նրանց կախման մեջ է դնում աշխատանքից, դրանով իսկ խթանելով աշխատանքի ինտենսիվությանը և ավելի լավ կազմակերպմանը։*

*ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի մեծագույն ծառայությունն այն է, որ նա լենինյան ցուցմունքների ոգով տեսականորեն մշակեց և գործնականորեն իրականացրեց մի շարք կարևոր միջոցառումներ՝ սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակաշրջանում փոխանակման հարաբերությունների զարգացման ուղղությամբ։ Պարտիան մերժեց դեռևս սոցիալիզմի ստադիայում ապրանքային շրջանառության ոլորտը նեղացնելու մասին կյանքից կտրված, դոգմատիկ կոնցեպցիաները, համարձակորեն բացահայտեց տնտեսական շինարարության մեջ թույլ տրված սխալները և փոխանակության ապրանքա-փողային ձևի ընդլայնման ուղղությամբ իրականացրեց մի շարք հետևողական միջոցառումներ՝ ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով։ Այդ միջոցառումներն արտահայտվեցին կոլտնտեսությունների և անձնական տնտեսությունների արտադրանքի բաժինն ապրանքային շրջանառության մեջ աստիճանաբար ավելացմամբ, կոլտնտեսություններին տեխնիկան վաճառելով,*



*ՄՏԿ-ների աշխատանքի դիմաց բնավարձի և գյուղատնտեսական մթերքների պարտադիր հանձնումների սիստեմի վերացմամբ։ Բայց պետական սեկտորում ևս էականորեն ծավալվեցին ապրանքային հարաբերությունները, նախ՝ աշխատանքի գյուղատնտեսական միջոցներն ապրանքային շրջանառության մեջ ներգրավելու շնորհիվ, երկրորդ՝ տնտեսական շրջաններ ստեղծելու և պետական սեկտորի ներսում արտադրամիջոցների շրջանառության ապրանքային ձևի ճանաչմամբ, միջազգային առևտրի ընդլայնմամբ։*

*Ապրանքային փոխանակությունն ավելի ու ավելի զարգանալով (որովհետև ավելանալու է ապրանքային շրջանառության ոլորտը մտնող արդյունքների մասսան), որպես արտադրության մեջ մարդկանց հարաբերությունների և կապերի ձև, որպես աշխատանքի խթանման ձև՝ իրեն կսպառի միայն այն ժամանակ, երբ շրջանառության մեջ եղած սպառման առարկաների մասսան հասնի այնպիսի սահմանի, որից այն կողմ բացվում է «յուրաքանչյուրին՝ ըստ իր պահանջմունքների» սկզբունքի իրականացման հնարավորությունը։*

*Արտադրության աճման գործում նյութական շահագրգռվածությունն է՛լ ավելի պարզ, անմիջական ձևով է կապված բաշխման հարաբերությունների հետ։ Սոցիալիզմը ստեղծում է օբյեկտիվ հնարավորություն՝ պատմության մեջ ամենաարդար ձևով բավարարելու մարդու պահանջմունքները՝ աշխատանքի քանակի ու որակի համեմատ։ Բաշխվող նյութական բարիքների քանակն ու որակը կախվածության մեջ դնելով աշխատանքի քանակից ու որակից, սոցիալիզմը ստեղծում է աշխատավորների անձնական նյութական շահագրգռվածություն՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրության աճի մեջ։ Սակայն «յուրաքանչյուրից՝ ըստ իր ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ իր աշխատանքի» սկզբունքը պահանջում է իրականացման կոնկրետ այն ձևերի ստեղծագործական մշակում, որոնք արտադրողական ուժերի զարգացման համեմատ, մշտապես պետք է կատարելագործվեն, փոփոխվեն։*

*Մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն համարձակորեն բացահայտեց մեր կյանքում տեղ գտած թերությունները և լենինյան հետևողականությամբ իրականացրեց միջոցառումների մի ամբողջ կոմպլեքս՝ բաշխման կատարելագործման ուղղությամբ։ Արդյունաբերության մեջ բարձրացվել է ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների աշխատավարձը և իջեցվել որոշ խմբերի չափազանց ուռճացված աշխատավարձը. մշակվել են նոր տարիֆիկացիա, առաջադրանքների նոր նորմաներ, մտցվել է կենսաթոշակային ապահովման նոր սիստեմ և այլն։ Բայց հատուկ նշանակություն ունեն վերափոխումները գյուղատնտեսության մեջ։ Դրանք սկսվեցին գյուղատնտեսության հիմնական ճյուղերի մթերքների մթերման և գնման գների բարձրացումից, պետական հանձնումների նորմաների իջեցումից, հանձնումների ծավալը ըստ հեկտարների հաշվելու սկզբունքը վերականգնելուց և այլն։ Այդ ամենը հանգեցրին պարտադիր հանձնումների վերացմանը և ըստ շրջանների միասնական դիֆերենցված գներով գյուղատնտեսական մթերքների գնմանը, որն է՛լ ավելի է կատարելագործում կոլտնտեսությունների և կոլտնտեսականների աշխատանքի համարժեք վարձատրումը։*

*Ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի մեջ պարունակվող հնարավորությունների օգտագործումն արդեն տվել է իր պտուղները։ Վերջին տարիներին ձեռք է բերվել գյուղատնտեսության շեշտակի վերելք, արդյունաբերության*

հետագա աճ, որ ընդունում են նույնիսկ սոցիալիզմի ամենակատաղի թշնամիները։ Հետևապես պրակտիկան ապացուցել է, որ բաշխման սոցիալիստական սկզբունքն արտադրության զարգացման, աշխատավորների բարեկեցության բարձրացման հզոր լծակն է։

Մեր երկրի զարգացման յոթնամյա պլանը նախատեսում է ըստ աշխատանքի վարձատրման հետագա զարգացումը, որը կհանգեցնի բոլոր աշխատավորների բարեկեցության բարելավման։ Նվազագույն աշխատավարձը կհասնի մինչև 500—600 ռուբլու։ Կոլտնտեսականների ռեալ եկամուտները կաճեն 40 տոկոսով, կվերացվեն բնակչությունից գանձվող հարկերը, կավելանան կենսաթոշակները և այլն։

Սակայն կոմունիստների իդեալը ո՛չ թե ըստ աշխատանքի, այլ ըստ պահանջմունքների բաշխումն է։ Ուստի կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում պարտիան խնդիր է դնում՝ աստիճանաբար աճեցնել աշխատանքի և բաշխման հարաբերությունների կոմունիստական ձևերի ծիլերը, որպեսզի ապագայում հասարակական կյանքի ամբողջ դաշտը լցվի այդ ծիլերով։ Բաշխման ասպարեզում կոմունիզմի այդ ծիլերի առաջացումը արտադրության զարգացման մակարդակի հետևանք է։ Հետևապես, միայն արտադրության աճի բազայի վրա կարող է իրականացվել ըստ պահանջմունքների բաշխման կոմունիստական իդեալը։ Մեզ մոտ արդեն այժմ նյութական ու կուլտուրական շատ բարիքներ բաշխվում են ըստ պահանջմունքների, անկախ աշխատանքի ծախսումներից։ Սովետական քաղաքացիները օգտվում են հասարակության կողմից ձրիաբար տրվող բարիքներից. դա կատարվում է կենսաթոշակների, թոշակների, գիշերօթիկ դպրոցների, մանկամսուրների և մանկապարտեզների, պիոներական ճամբարներում, հանգստյան տներում և սանատորիաներում հանգստանալու, ձրի բուժման, զանազան նպաստների ձևով։ Արտադրության զարգացման համեմատ կաճի ազգային եկամտի այն մասը, որը բաշխվում է ձրիաբար, ըստ պահանջմունքների։ Մոտակա 12—15 տարիները վճռական ուղենիշ կլինեն ըստ աշխատանքի սոցիալիստական բաշխումն ըստ պահանջմունքների կոմունիստական բաշխման վերաճելու համար նյութական պայմանների նախապատրաստման իմաստով։ Միայն էկոնոմիկայի հզոր վերելքի բազայի վրա, հիմնական տնտեսական խնդիրը լուծելուց հետո, հնարավոր կդառնա, ինչպես նշեց XXI համագումարը, հիմնական նյութական բարիքները ըստ պահանջմունքների բաշխելու սկզբունքի ռեալ իրականացումը։ Առանց արտադրության այդ բարձր մակարդակի, հասարակությունը կարող է բաշխել միայն ըստ աշխատանքի, իսկ ըստ պահանջմունքների բաշխման ամեն մի «ներմուծում» կհանգեցնի կուտակված հարստությունների ծախսման, վնաս կհասցնի կոմունիզմի գործին։

Այսպիսով, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում բաշխման հարաբերությունների կատարելագործման դիալեկտիկան այնպիսին է, որ միայն ըստ աշխատանքի բաշխման սկզբունքն ամեն կերպ զարգացնելով, այն ամրապնդելով են ստեղծվում նախադրյալներ՝ աստիճանաբար նեղացնելու նրա գործողության ոլորտը կուլտուրական և նյութական բարիքների բաշխման բնագավառում, մինչև, վերջապես, նա տեղը զիջի «յուրաքանչյուրին՝ ըստ իր պահանջմունքների» կոմունիստական սկզբունքին։

---

# ՍՍՌՄ-ՈՒՄ ԿԼԻՆԻ ԱՄԵՆԱԲԱՐՁՐ ԿԵՆՍԱՄԱԿԱՐԴԱԿԸ

Գ. ՓԱՆՈՍՅԱՆ

Ժողովրդի բարեկեցության հարցը միշտ գտնվել է մեր պարտիայի ուշադրության կենտրոնում։ Դեռևս 1919 թվականին ՌԿ(բ)Պ ծրագրում Վլադիմիր Իլյիչ Լենինն ընդգծում էր, որ արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը հասարակական սեփականությամբ փոխարինելուց հետո կմտցվի հասարակական արտադրության պրոցեսի պլանավորում, որի նպատակներից մեկը կլինի «հասարակության բոլոր անդամների բարեկեցության և համակողմանի զարգացման ապահովումը»։ Լենինյան այս դրույթն իր զարգացումն ստացավ պարտիայի հետագա գործունեության ընթացքում և, հատկապես, ՍՄԿՊ-ի XX և XXI համագումարների որոշումներում։

ՍՄԿՊ XXI համագումարի հաստատած «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերում» ասված է. «Սովետական հասարակության զարգացման օրենքն է ժողովրդի բարեկեցության անընդհատ աճը՝ սոցիալիստական արտադրության զարգացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա։

Եթե կապիտալիզմի պայմաններում արտադրության աճը տանում է դեպի մի բուռ շահագործողների հարստացում և ուղեկցվում է աշխատավոր մասսաների հարաբերական ու բացարձակ աղքատացումով, ապա սոցիալիզմի ժամանակ արտադրությունը զարգանում է ամբողջ հասարակության շահերի օգտին, հասարակության բոլոր անդամների նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքները բավարարելու նպատակով և արտադրության աճը տանում է դեպի ամբողջ ժողովրդի բարեկեցության անշեղ վերելք»։

Այսպիսով, սովետական ժողովրդի բարեկեցության հարցը հանդիսանում է Կոմունիստական պարտիայի գործունեության բարձրագույն օրենքը, որի հետագա արմատական բարելավման համար խնդիր է դրվում հնարավոր կարճ ժամանակամիջոցում մեր երկրում ստեղծել բնակչության ամենաբարձր կենսամակարդակը և գերազանցել առավել զարգացած կապիտալիստական երկրներին։ Այստեղ առաջին հերթին նկատի են առնվում Ամերիկայի Միացյալ Նահանգները։

Համեմատելով մեր երկրի և կապիտալիստական առավել զարգացած երկրների արտադրության և սպառման մակարդակը, չպետք է մոռանալ մի շարք կարևոր ու բնորոշ հանգամանքներ։

Նախ, կապիտալիզմի առավել զարգացած երկրներն արտադրության և սպառման այսօրվա մակարդակը ձեռք են բերել մեկ ու կեսից երկու հարյուր տարվա ընթացքում, ընդ որում, ո՛չ միայն մայր երկրի, այլև գաղութային և կիսագաղութային երկրների նյութական ու մարդկային ռեսուրսների

տմարդի շահագործման միջոցով։ Այդ է ցույց տալիս Անգլիայի անցած ուղին։ Բավական է համեմատել ըստ շնչի ազգային եկամուտը Անգլիայում և նրա աֆրիկյան երկրներում, որպեսզի պարզ դառնա ամբողջ պատկերը։ Անգլիայում ազգային եկամտից ամեն մի շնչին հասնում է 268 ֆունտ ստեռլինգ, իսկ Հյուսիսային Ռոդեզիայում՝ 43, Նիգերիայում՝ 20, Քենիայում՝ 14, Տանգանիկայում՝ 8 ֆունտ ստեռլինգ։ Քենիայի ազգային եկամտի 80—85 տոկոսը յուրացնում են այնտեղ ապրող և բնակչության միայն 3 տոկոսը կազմող եվրոպացիները (հիմնականում անգլիացիները)։ Կոնգոյում եվրոպացիները, որոնց թիվը հազիվ 70 հազար մարդու է հասնում, յուրացնում են ազգային եկամտի 44 տոկոսը, իսկ մնացած 56 տոկոսը՝ 13 միլիոն տեղացիները։

ԱՄՆ-ը նույնպես ուրիշ երկրների, գաղութների և կախյալ երկրների ժողովուրդների կեղեքման միջոցով են հասել արտադրության ու սպառման ներկա բարձր մակարդակին։ Այդ նպատակին են ծառայում «Տրումենի դոկտրինան», «Մարշալի պլանը», «Էյզենհաուերի դոկտրինան» և այլ իմպերիալիստական ծրագրեր, որոնց միջոցով ամերիկացիները ոչ միայն իրենց են ենթարկում գաղութային և հետամնաց երկրների էկոնոմիկան, այլև Իտալիան, Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկան և նույնիսկ Անգլիան ու Ֆրանսիան։ Այդ երկրների շատ խոշոր ֆիրմաներ այժմ ենթարկված են ամերիկյան մոնոպոլիաներին։

Կապիտալիստական առավել զարգացած երկրների մեջ ԱՄՆ-ում առկա է սպառման հարաբերականորեն բարձր մակարդակ, որը պայմանավորված է նրա արտադրության մակարդակով։ Սակայն բավական է այդ սպառման մեկ շնչին ընկնող միջին թվերի վարագույրը բացել, և իր ամբողջ մերկությամբ կբացահայտվեն կապիտալիզմի բոլոր հակասությունները։ Ահա թե ինչ է գրել ԱՄՆ-ի ներկայացուցիչների պալատի անդամ Լենորա Սալլինը։ «Սովն Ամերիկայում այնպիսի ռեալ երևույթ է, ինչպիսին և մեր ավելցուկները։ Դա անհեթեթություն չէ, երբ մեկը և մյուսը գոյություն ունեն միասին։ Հենց բանն այն է, որ սովը գոյություն ունի պարենային ավելցուկների առկայության պայմաններում»։ Այս խոսքերը հաստատում են այն ճշմարտությունը, որ կապիտալիզմի օրոք հարստությունը կուտակվում է հասարակության մի բևեռում, իսկ դաղանային շահագործումը, սովն ու աղքատությունը՝ մյուս բևեռում։

Գործազրկությունն ամերիկյան աշխատավորության ողբերգությունն է։ Ամերիկյան սենատոր Դուգլասը հայտարարել էր, որ 1957—1958 թվականների ժամանակամիջոցում ամեն մի 4-րդ ընտանիքն ԱՄՆ-ում տառապել է գործազրկությունից։ Ամերիկյան արհմիութենական լիդեր Ջորջ Մինին վերջերս խոստովանեց, որ գործազրկությունը մնում է որպես «ԱՄՆ-ի № 1 պրոբլեմը»։

Հակառակ ամերիկյան կապիտալիզմի ջատագովների պնդումներին, որոնք խոսում են բնակչության «եկամուտներում կատարված ռևոլյուցիայի» մասին, որ իբր թե ԱՄՆ-ում գրեթե բոլոր բանվորներն ունեն ակցիաներ, և որ կապիտալն ունի արդեն «ժողովրդական բնույթ», թե «ջնջվում է» բանվորների ու բուրժուաների միջև եղած տարբերությունը, հենց ամերիկյան տվյալներից տեղեկանում ենք, որ արդյունաբերական բանվորների 98,6 տոկոսը չունի ակցիաներ։ Ակցիաների գերակշիռ մասը պատկանում է միլիարդատեր կապիտալիստներին, որոնք կազմում են ԱՄՆ-ի հասակավոր բնակչության միայն 0,06-ից 0,18 տոկոսը։ Բավական է ասել, որ «Ստանդարտ օյլ Կոմպանի



օֆ Նյու Ջերսի» խոշոր մոնոպոլիստական ընկերության ակցիաների Ռոքֆելերներին պատկանող մասը երկու անգամ ավելի է, քան բոլոր ամերիկյան բանվորների ձեռքում գտնվող ակցիաները։ Խոշոր կապիտալիստները կազմում են բնակչության մեկ տոկոսը, իսկ տիրապետում են ազգային հարստության երկու հինգերորդ մասին։ Միայն Մորգանի և Ռոքֆելերի ընտանիքները տիրապետում են 120 միլիարդ դոլար կապիտալի։

Այս բոլորը մեկ անգամ ևս հաստատում են մեծ Լենինի այն դրույթը, որ հասարակական արտադրողական ուժերի վիթխարի զարգացման արդյունքները մոնոպոլացվում են բնակչության մեկ չնչին փոքրամասնության կողմից, հասարակության հարստության աճի հետ մեկտեղ աճում է անդունդը բուրժուազիայի և բանվոր դասակարգի միջև։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի և կապիտալիստական համաշխարհային սիստեմի միջև ուժերի հարաբերակցության արմատական փոփոխման, գաղութային սիստեմի քայքայման և կապիտալիստական երկրներում սոցիալական ու տնտեսական հակասությունների սրման հետևանքով կապիտալիզմի խորացող ընդհանուր ճգնաժամն ավելի ցցուն է արտահայտվում ԱՄՆ-ում։ Այդ մասին է վկայում արդյունաբերության արտադրողական կարողությունների և բնակչության ընդհանուր գնողունակության ծավալի միջև եղած անդունդի մեծացումը։ Այդ երևում է թեկուզ և նրանից, որ 1947 թվականից սկսած ԱՄՆ-ում կապիտալիստները չեն կարողանում իրացնել ապրանքների պոտենցիալ ծավալի 75 տոկոսից ավելին, իսկ շատ ապրանքների արտադրական հնարավորությունների մեկ երրորդ մասն աշխատավորության գնողականության ցածր մակարդակի պատճառով չունի սպառման շուկա։ Եթե 1939 թվականին կային 20,1 միլիարդ դոլարի ապրանքային մնացորդներ, ապա 1957 թվականի օգոստոսին՝ 91 միլիարդ դոլարի։ Կապիտալիստները ցանկանալով նվազեցնել այդ ապրանքային մնացորդները, կրճատում են արտադրությունը, առաջ է գալիս նոր գործազրկություն, ընկնում է աշխատավորության կենսամակարդակը և, հետևապես, նրանց գնողականությունը։

Այս բոլորից դժվար չէ հասկանալ, թե ինչ են իրենցից ներկայացնում կապիտալիստական առավել զարգացած երկրներում և առաջին հերթին ԱՄՆ-ում ստեղծված «սպառման բարձր մակարդակը» և ամերիկյան բանվոր դասակարգի և աշխատավորական լայն շերտերի կենսամակարդակի մասին տարածվող հեքիաթները, որ այնքան մեծ ջանասիրությամբ տարածում են բուրժուազիայի վարձու պրոպագանդիստները և ռևիզիոնիստները։



Վ. Ի. Լենինը ժողովրդական տնտեսական խորհուրդների առաջին համագումարում ունեցած իր ելույթում նշում էր, որ միայն սոցիալիզմն է հնարավորություն տալիս լայնորեն ծավալելու և մթերքների արտադրությունն ու բաշխումն ըստ էության ենթարկելու գիտականորեն այն բանին, թե ինչպես ավելի թեթևացնել աշխատավորության կյանքը, բարձրացնել բարեկեցության մակարդակը։

Մեծ Լենինի ասածներն իրականություն են դարձել մեր երկրում։ Յոթնամյակի վիթխարի խնդիրները ցույց են տալիս վերընթաց գծով զարգացող սոցիալիզմի գերազանցությունն իր դարն ապրած կապիտալիզմի նկատմամբ։

Եթե կապիտալիստական երկրներում արտադրության աճն իր հետևից անխուսափելիորեն բերում է աշխատավորության լայն մասսաների հարաբերական և բացարձակ աղքատացում և հետևաբար նրանց կենսամակարդակի անկում, ապա դրան հակառակ սոցիալիզմի լագերի երկրներում արտադրողական ուժերի հուժկու վերելքն ուղղված է աշխատավորության նյութական ու կուլտուրական պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարման, ամբողջ բնակչության բարեկեցության բարձրացման նպատակին։

Սովետական Միությունում ժողովրդական տնտեսության ընդհանուր վերելքն իր արտահայտությունն է գտնում ազգային եկամտի աճի մեջ, որը հանդիսանում է աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման առավել ընդհանրացված ցուցանիշը։ Մեկ շնչի հաշվով ազգային եկամուտը Սովետական իշխանության տարիներին ավելացել է 15 անգամ։ 1940 թվականի համեմատությամբ մոտ երկու անգամ ավելացել են բանվորների ռեալ աշխատավարձը և ավելի քան երկու անգամ կոլտնտեսականների եկամուտները։

Վերջին հինգ տարում մեր երկրի ազգային եկամուտն աճել է 61 տոկոսով, բանվորների և ծառայողների ռեալ եկամուտներն ամեն մեկ աշխատողի հաշվով բարձրացել են 20 տոկոսով։ Համաձայն յոթնամյա պլանի ՍՍՌՄ-ում ազգային եկամտի աճը 1965 թվականին (1958 թվականի համեմատությամբ) կավելանա 62—66 տոկոսով, այսինքն 6 անգամ բարձր կլինի 1940 թվականի մակարդակից։ Ազգային եկամտի նման աճը յոթնամյակում կապահովի ժողովրդական սպառման ծավալի ավելացում 60—63 տոկոսով։ Ազգային եկամտի տարեկան աճը մեր երկրում 9 տոկոսից ավելի է կազմում։ Այդպիսի աճը բնորոշ է միմիայն սոցիալիստական հասարակարգին։

Մեր երկրում աշխատավորներն իրենց անձնական նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարման համար ստանում են եկամտի երեք քառորդը (մնացած մեկ քառորդը նույնպես աշխատավորներինն է՝ սոցիալիստական արտադրության հետագա ընդլայնված վերարտադրության և հասարակական այլ կարիքների համար)։

Կապիտալիստական երկրներում բանվոր դասակարգի և մյուս աշխատավորների բաժինն ազգային եկամտում քանի գնում, պակասում է։ Այսպես, օրինակ, ԱՄՆ-ում աշխատավորական դասակարգերի բաժինն ազգային եկամտում 1870 թվականին կազմել է 58 տոկոս, 1890 թվականին՝ 56, 1923 թվականին՝ 54, իսկ 1951 թվականին՝ 40 տոկոս։ Ներկայումս ինչպես ԱՄՆ-ում, այնպես էլ կապիտալիստական մյուս երկրներում աշխատավորական դասակարգերը, որոնք կազմում են բնակչության ինն տասներորդը, ստանում են ազգային եկամտի կեսից պակաս մասը, իսկ շահագործող դասակարգերը, որոնք բնակչության մեկ տասներորդն են կազմում՝ յուրացնում են ազգային եկամտի կեսից ավելին։

Մեր երկրում բնակչությունից գանձվող հարկերն այժմ կազմում են բյուջեի եկամուտների միայն 7,2 տոկոսը։ Իսկ առաջիկայում ընդհանրապես կվերացվի աշխատավորներից հարկերի գանձումը։ Մինչդեռ կապիտալիստական երկրներում տարեցտարի ավելանում են աշխատավորությունից գանձվող հարկերը։ Անգլիայում բնակչությունից գանձվող հարկերը ազգային եկամտում կազմել է 1913 թվականին՝ 11 տոկոս, 1924 թվականին՝ 23 տոկոս, 1950 թվականին՝ 38 տոկոս։ Այժմ կապիտալիստական երկրներում պետբյուջեի մեջ աշխատավորությունից գանձվող հարկերը կազմում են նրանց աշխատա-



վարձի մեկ երրորդը։ ԱՄՆ-ում ուղղակի հարկերը բնակչությունից 1952—1953 թթ. բյուջետային տարում, 1937—38 թթ. բյուջետային տարվա համեմատ, ավելացել էին 12 անգամ։

Ազգային եկամտի հարաճուն վերելքի հիման վրա, աշխատավարձի, կենսաթոշակների և նպաստների աճի, հասարակական սննդի գների իջեցման շնորհիվ բանվորների և ծառայողների ռեալ եկամուտները մեկ աշխատողի հաշվով մինչև յոթնամյակի վերջը կավելանան 40 տոկոսով, ըստ որում ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների նվազագույն աշխատավարձն ամսեկան 270—350 ռուբլուց կբարձրանա 500—600 ռուբլու։ Կոլտնտեսականների ռեալ եկամուտները նույնպես կաճեն 40 տոկոսով։

Սակայն պետք է նշել, որ աշխատավորների բարեկեցությունը բարձրացնելու միակ միջոցն աշխատավարձի հավելումներն ու գների իջեցումը չեն։ Սոցիալիզմի պայմաններում աշխատավորության նյութական բարեկեցությունը բնորոշվում է նաև ամեն տարի մեծ չափերով ավելացող հասարակական ֆոնդերով, որոնք պետությունն ուղղում է բնակարանային շինարարության, հասարակական սննդի զարգացման, մանկական հիմնարկների ծավալման, ժողովրդական կրթության կատարելագործման, աշխատավորության հանգստի կազմակերպման ու բուժսպասարկման բարելավման և կուլտուրական հիմնարկների կառուցման նպատակին, ինչպես և աշխատանքի տևողության հետագա կրճատումով։

Տարեցտարի ավելանում են այդ նպատակին ուղղված հասարակական ֆոնդերը։ Յոթնամյակում թոշակառուների ապահովման, սոցապահովագրման, անվարձ ուսուցման, սովորողների թոշակի, բանվոր ծառայողների արձակուրդների վճարման, անվարձ բուժսպասարկման, մանկամսուրների և մանկապարտեզների պահպանման համար կատարվող ծախսերը 1965 թվականին կկազմեն 360 միլիարդ ռուբլի, 1958 թվականի 215 միլիարդ ռուբլու դիմաց։ Դա նշանակում է, որ ամեն մի աշխատողի կընկնի տարեկան 3.800 ռուբլի։ Այնուհետև չպետք է մոռանանք նաև, որ մեկ աշխատողի հաշվով տարեկան 800 ռուբլի պետք է ծախսվի բնակարանային, դպրոցական, կուլտկենցաղային և բուժհիմնարկների կառուցման վրա։ Այս ամենը ցույց է տալիս, թե ինչպիսի վիթխարի չափերով են աճելու հասարակական ֆոնդերը, որոնք կենտրոնացած ձևով ծառայում են աշխատավորության կենսամակարդակի բարձրացման նպատակին։

Կամ վերցնենք բնակարանային հարցը։ Միայն վերջին հինգ տարիների ընթացքում քաղաքներում և բանվորական ավաններում կառուցվել են 223 միլիոն քառակուսի մետր տարածությամբ նոր բնակարաններ, իսկ գյուղական վայրերում՝ 3 միլիոն տուն։ Կոմունիստական պարտիան ներկայումս հարց է դրել առաջիկա 10—12 տարում վերացնել բնակարանային պակասը։ Ելնելով այդ խնդրից, յոթնամյակում նախատեսվում է կառուցել 650—660 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, կամ 15 միլիոն բնակարան։ Չպետք է մոռանալ, որ հակառակ կապիտալիստական երկրների, որտեղ բնակարանային վարձը շատ բարձր է, Սովետական Միությունում բնակարանային վարձը կազմում է ընտանիքի եկամտի չնչին տոկոսը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր ծրագրային խնդիրներից մեկն է դարձրել աշխատանքային օրվա կրճատումը։ ՍՄԿՊ XXI համագումարը նախատեսեց 1960 թվականին ավարտել բանվոր ծառայողների

փոխադրումը յոթժամյա, իսկ առանձին ճյուղերում՝ վեցժամյա աշխատանքային օրվա, իսկ 1964 թվականին սկսել անցումը շաբաթական 35-ժամյա աշխատանքային օրվա, կամ շաբաթական երկու հանգստի՝ 6—7-ժամյա աշխատանքային օրով։ Դա նշանակում է, որ ՍՍՌՄ-ում կլինի աշխարհում ամենակարճ աշխատանքային օրը և ամենակարճ աշխատանքային շաբաթը, միաժամանակ կաճի բնակչության բարեկեցությունը։

Մեր երկրի աշխատավորության բարեկեցության բարձրացման և լավագույն կենսապայմաններ ստեղծելու ուղիներից մեկն էլ հասարակական սննդի գործի բարելավումն է։ Այդ նպատակին է ուղղված ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1959 թվականի փետրվարի 20-ի «Հասարակական սննդի զարգացման ու բարելավման մասին» որոշումը։ Բանվորների, ծառայողների ու սովորողների մեծամասնությանը հասարակական սննդով ապահովելու և կանանց տնային աշխատանքը թեթևացնելու նպատակով այդ որոշման մեջ նախատեսվում է յոթնամյակում զարգացնել ու կառուցել հասարակական սննդի բազմաթիվ ձեռնարկություններ, երկու անգամ ավելացնել նրանց արտադրանքը, իջեցնելով գները և դրանով իսկ բարձրացնելով աշխատավորների ռեալ եկամուտները։ Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի որոշմամբ մեր ռեսպուբլիկայում հասարակական սննդի ձեռնարկությունների արտադրանքը 1958 թվականի համեմատությամբ յոթնամյակի վերջում պետք է ավելանա 2,7 անգամ։

Ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման գործում խոշոր նշանակություն ունի առևտրի լավ կազմակերպումը և բնակչության կենցաղային սպասարկումը։ Չպետք է մոռանալ, որ ի տարբերություն կապիտալիստական երկրների, մեր երկրում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության աճն առաջացնում է նաև սպառման աճ։ Այդ մասին է վկայում այն փաստը, որ 1956—1959 թթ. մանրածախ ապրանքաշրջանառության ծավալն աճեց 32 տոկոսով։ Նույն ժամանակում միայն Երևան քաղաքի ապրանքաշրջանառության ծավալն աճեց 36,3 տոկոսով։ Դա հենց բարեկեցության բարելավման հետևանք է։ Յոթնամյակում ժողովրդական սպառման ապրանքների, մթերքների և բնակչության եկամուտների աճին համապատասխան պետական և կոոպերատիվ մանրածախ առևտրի ապրանքաշրջանառության ծավալը մեր երկրում կաճի 57—62 տոկոսով, իսկ Երևանում՝ 70 տոկոսից ավելի։

Այժմ այնպիսի խոշորագույն միջոցառումներ են իրականացվում, որ բնակչության մեկ շնչին ընկնող պարենային մի շարք կարևոր ապրանքների (միս, կաթ, յուղ) արտադրության մակարդակով ՍՍՌՄ-ը կհասնի և կանցնի ԱՄՆ-ից։ Եթե ՍՍՌՄ-ում գյուղատնտեսության ընդհանուր արտադրանքի միջին տարեկան աճի տեմպը 1954—1957 թվականներին եղել է 7,1 տոկոս, ապա ԱՄՆ-ում այն կազմել է միայն 1,1 տոկոս։ Նույն պատկերն է նաև գյուղատնտեսության բոլոր հիմնական ճյուղերում։

Վերջին հինգ տարում՝ 1953—1958 թթ. անասնապահության աճի տեմպը ՍՍՌՄ-ում զգալի չափով բարձր է եղել, քան ԱՄՆ-ում։ Մսի արտադրության միջին տարեկան աճի տեմպը մեր երկրում եղել է 6 տոկոս, իսկ ԱՄՆ-ում 1,3 տոկոս։ Բնակչության մեկ շնչի հաշվով մսի արտադրությամբ ԱՄՆ-ին գերազանցելու համար անհրաժեշտ է մսի ընդհանուր արտադրանքը հասցնել 20—21 միլիոն տոննայի։ Նախատեսված է յոթնամյակի վերջին մսի արտադրանքը հասցնել 16 միլիոն տոննայի, այսինքն՝ երկու անգամ ավելի, քան



1958 թվականին։ Բայց նկատի ունենալով գյուղատնտեսության առաջավորների կոչը և բոլոր մարզերում ու երկրամասերում կոլտնտեսականների ընդունած պարտավորությունները՝ մսի արտադրությունը 2,5—3 անգամ ավելացնելու մասին, չպետք է կասկածել, որ բնակչության մեկ շնչին ընկնող մսի արտադրությամբ մեր երկիրը կհասնի և կանցնի ԱՄՆ-ին։

1958 թվականին մեր երկրում արտադրվեց ավելի շատ կաթ, քան ԱՄՆ-ում 1957 թվականին։ Վերջին հինգ տարում կաթի արտադրության միջին տարեկան աճի տեմպը ՍՍՌՄ-ում եղել է 9,6 տոկոս, իսկ ԱՄՆ-ում՝ 0,9 տոկոս։ Որպեսզի մեկ շնչի հաշվով հասնել և անցնել ԱՄՆ-ին կաթի արտադրությամբ, անհրաժեշտ է տարեկան արտադրել 70 միլիոն տոննա կաթ։ Յոթնամյակի կոնտրոլ թվերում նախատեսված է արտադրել 100—105 միլիոն տոննա կաթ։ Յոթնամյակի վերջում կաթնամթերքի արտադրանքը կավելանա 225 տոկոսով, պանրինը՝ 2—3 անգամ, խտացրած կաթինը՝ 2,2 անգամ, կաթի փոշունը՝ 4,5 անգամ։ Կաթի արտադրության նախատեսված աճը հիմնականում կապահովի տարվա բոլոր ամիսներում կաթնամթերքների նկատմամբ բնակչության պահանջը։ 1965 թվականին կաթի արտադրությունը բնակչության յուրաքանչյուր մեկ շնչին կապահովի 450 կիլոգրամ կաթ, որը կգերազանցի ամերիկյան քաղաքացու մակարդակը։

Կենդանական յուղի արտադրանքի ընդհանուր ծավալի տեսակետից ՍՍՌՄ-ը դուրս է եկել աշխարհում առաջին տեղը։ Արդեն 1957 թվականին մեզ մոտ 47 հազար տոննայով ավելի յուղ էր արտադրվել, քան 1957 թվականին ԱՄՆ-ում։ Յոթնամյակի վերջին նախատեսված է արտադրել մեկ միլիոն 150 հազար տոննա յուղ, որը մեկ շնչի հաշվով գրեթե մեկ և կես անգամ ավելի կլինի, քան ԱՄՆ-ի ներկա մակարդակը և երեք անգամ բարձր՝ Ֆրանսիայի ձեռք բերած մակարդակից։

Շաքարի արտադրությամբ մեր երկիրը հաստատուն կերպով բռնում է աշխարհում առաջին տեղը։ Մենք այժմ արդեն տարեկան արտադրում ենք հինգ միլիոն տոննա շաքար։ 1965 թվականին կարտադրվի 10 միլիոն տոննա շաքար, որը նշանակում է, որ ամեն մի շնչին այժմ ընկնող 26 կգ-ը 1965 թվականին կհասնի 41—44 կիլոգրամի։ Դա արդեն լրիվ կբավարարի բնակչության պահանջները և հնարավորություն կտա առավել չափով ավելացնելու և բարելավելու տարբեր տեսակի հրուշակեղենի, պահածոների, թխվածքների արտադրանքը և վաճառքը։

Յոթնամյակում արագ թափով կաճեն խաղողագործությունը և գինեգործությունը։ Խաղողի արտադրանքը պետք է ավելանա ոչ պակաս չորս անգամ։ Կընդլայնվի հատկապես կիսաքաղցր և դեսերտ գինիների արտադրանքն ու վաճառքը, որով աստիճանաբար կենցաղից դուրս կմղվի օղին։

Այսպիսով, պարենային կարևորագույն ապրանքների գծով յոթնամյակի վերջում սովետական մարդիկ ապահովված կլինեն ավելի լավ, քան աշխարհում որևէ այլ երկիր։

Բնակչության պահանջները գործվածքեղենի, հագուստեղենի, կոշկեղենի և մյուս ապրանքների նկատմամբ ապահովելու համար նախատեսվում է մեկ և կես անգամ ավելացնել թեթև արդյունաբերության արտադրանքը։ Բամբակյա գործվածքեղենը կաճի 1,4 անգամ, բրդյա գործվածքեղենը՝ 1,7 անգամ, մետաքսյա գործվածքեղենը՝ 1,8 անգամ։ Բոլոր տեսակի գործվածքեղենի աճի շնորհիվ 1965 թվականին ամեն մի շնչին կընկնի 56 մետր, 1958 թվականի 40

մետրի դիմաց։ 1965 թվականին կարտադրվի 565 միլիոն զույգ կաշվե կոշիկ, այսինքն 60 միլիոն զույգով ավելի, քան 1958 թվականին։

1965 թվականին ՍՍՌՄ-ում բնակչության ամեն մեկ շնչին ընկնող մթերքների մակարդակը կապիտալիստական առավել զարգացած երկրների համեմատությամբ ներկայացնում է հետևյալ պատկերը.

| | Ֆրանսիա | Իտալիա | Գերմ. Ֆեդ. ռեսպուբ. | Անգլիա | ԱՄՆ | ՍՍՌՄ |
|---|---|---|---|---|---|---|
| Միս կգ | 75 | 20 | 47 | 66 | 81 | 96 3 |
| Յուղ » | 6,7 | 1,7 | 6,2 | 6,2 | 4,1 | 5 |
| Կաթ » | 92 | 36 | 122 | 158 | 250 | 450,7 |
| Շաքար » | 24 | 17 | 27 | 46 | 40 | 44 |
| Կարտոֆիլ | 136 | 49 | 158 | 100 | 46 | 640 |

(Журнал „Чехословацкие профсоюзы", № 8, 1958)

Զտեսնված թափ է ստանալու քիմիական արդյունաբերությունը ժողովրդական սպառման առարկաների արտադրության ուղղությամբ (գործվածքեղեն, կոշկեղեն, հագուստեղեն և այլն)։ Բրդյա գործվածքների արտադրանքը (որում կգործադրվի արհեստական և սինթետիկ թելը), յոթնամյակում կավելանա 2,2 անգամ, բամբակյա գործվածքեղենի արտադրանքը սինթետիկ թելի խառնվածքով կավելանա 4 անգամ։ Արհեստական կաշվից կարտադրվի 93 միլիոն զույգ կոշիկ։ Արհեստական կարակուլի արտադրանքը 1965 թվականին նախատեսվում է 5 միլիոն քառակուսի մետր։ Այս բոլորը հնարավոր կդարձնի 1965 թվականին մոտենալ ԱՄՆ-ի մակարդակին ինչպես գործվածքեղենի, հագուստեղենի, կոշկեղենի ընդհանուր արտադրանքով, այնպես էլ բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող չափով։

Երկու անգամ կավելանա տնային աշխատանքը թեթևացնող, կենցաղային կարիքները հոգացող մեքենաների ու պրիբորների, ինչպես և կուլտապրանքների արտադրանքը։ Սառնարանների վաճառքն անցած յոթնամյակի համեմատ կավելանա 5,6 անգամ, լվացքի մեքենաներինը՝ 8,8 անգամ, կարի մեքենաներինը՝ 2,1 անգամ, հեռուստացույցերինը՝ 4,6 անգամ և այլն։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը միշտ էլ մեծագույն հոգատարություն են ցուցաբերել երկրի աշխատավորական մասսաների կյանքի մակարդակի բարձրացման, կուլտ-կենցաղային պայմանների բարելավման գործում։ Սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակաշրջանում մեր պարտիան անշեղորեն կենսագործում է մեծ ուսուցիչ Վ. Ի. Լենինի այն միտքը, որ սոցիալիզմի, կոմունիզմի ժամանակ ընդհանուր աշխատանքով արտադրվող արտադրանքները կօգտագործվեն հենց իրենց՝ աշխատավորների օգտին, կծառայեն բանվորների պահանջները բավարարելուն, նրանց բոլոր ունակությունների լիակատար զարգացման և գիտության ու արվեստի բոլոր նվաճումներից օգտվելու նպատակին։

Այդ վառ ու լուսավոր, նյութական լրիվ ապահովվածության, բերկրալից կյանքի համար, կոմունիզմի կառուցման համար սոցիալիզմի հաղթանակների կազմակերպող ու ոգեշնչող Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդին կազմակերպված կերպով առաջ է տանում դեպի նորանոր հաղթանակներ։

# ԴԱՇՆԱԿ ՎԱՐՁԿԱՆՆԵՐՆ ԱՐԵՎԵԼՔՈՒՄ

Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ, Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

Իմպերիալիզմի գաղութային տիրապետության դեմ Արևելքում ծավալված պայքարի մեջ վերջին տարիներս առանձնապես ուշագրավ է արաբական ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը, որն ուղղված է ամերիկա-անգլո-ֆրանսիական իմպերիալիստների ճնշումից լիակատար ազատագրության նպատակին։ Այդ շարժման էությունը, որ երբեմն փորձում են արտահայտել արտասահմանյան մամուլի ու գրականության մեջ լայնորեն տարածված և քաղաքացիության իրավունք նվաճած, բայց քաղաքական տեսակետից բավական մշուշապատ «արաբական նացիոնալիզմ» հասկացողությամբ, միանգամայն տարբեր ձևով է մեկնաբանվում արաբ ժողովուրդների սոցիալական տարբեր խավերի, դասակարգերի և պարտիաների կողմից։ Այդ տարբերությունն ավելի զգալի է դարձել հատկապես վերջին շրջանում, երբ Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի, Լիբանանի, Իրաքի և այլ երկրների ազատագրական, հակաիմպերիալիստական պայքարի առաջին պլան մղվեցին ներքին զարգացման, անկախության ամրապնդման ուղիների հրատապ հարցերը և արաբական տարբեր երկրների միավորման պրոբլեմները։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարին տված զեկուցման մեջ վերլուծելով Մերձավոր Արևելքի քաղաքական իրադրությունը, նշեց, որ երբ ժողովուրդները պայքարում են իրենց ազգային անկախության համար, ապա հայրենասիրական ուժերը միավորվում են միասնական ազգային ճակատում՝ ընդդեմ իմպերիալիստ գաղութարարների։ Այս վերջիններին դուրս քշելուց հետո, երբ համազգային խնդիրները հիմնականում լուծված են, ժողովուրդներն սկսում են որոնել կյանքի առաջադրած սոցիալական պրոբլեմների պատասխանը։ «Ազգային-ազատագրական շարժման շարքերում առաջ են գալիս հասարակական պրոցեսներ, որոնք անխուսափելիորեն ծնունդ են տալիս իրենց պետությունների հետագա զարգացման ուղիների վերաբերյալ տարբեր կարծիքների» [1],

Ազգային անկախության գաղափարը տարբեր դասակարգերի գիտակցության մեջ ներթափանցում է նախապես բեկվելով նրանց ուրույն շահերի պրիզմայում։ Բանվոր դասակարգը, բոլոր դեմոկրատական ուժերը, անկախության, ազգային-ազատագրական շարժման խնդիրները չեն անջատում այդ շարժման հիմնական կրողների՝ աշխատավորների կենսական շահերից։ Բուրժուազիան փորձում է անտեսել աշխատավորների շահերը և ամբողջու-

[1] Ն. Ս. Խրուշչով, «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին», էջ 107, Հայպետհրատ.

թյամբ յուրացնել նրանց անձնազոհ պայքարի պտուղները։ Բուրժուա-նացիոնալիստական շրջանները շաղակրատում են ռևոլյուցիայի մասին, «քաղաքական և սոցիալական դեմոկրատիայի» մասին, բայց իրականում ռևոլյուցիան համարում են ավարտված իմպերիալիստների արտաքսումով և մի քանի տնտեսական վերափոխություններով։ Գրավելով իշխանությունը և տընտեսության հրամանատարական բարձունքները, նրանք ամեն կերպ աշխատում են արգելակել ռևոլյուցիայի հետագա զարգացումը, սոցիալական արմատական վերափոխությունների իրագործումը։ Աշխատավորների կենսական շահերը ոտնահարվում են, նրանց ամենատարրական պահանջները կառավարող դասակարգերը դիմավորում են բացահայտ թշնամանքով, իսկ իրենց իրավունքները պաշտպանելու նրանց փորձերը ներկայացվում են որպես «կոմունիստական դավադրություն» և ճնշվում ռեպրեսիվ միջոցներով։

Այս տեսակետից բավական բնորոշ է Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի օրինակը։ Անցյալ տարվա նոյեմբերին Սիրիայի Կոմունիստական պարտիայի Կենտկոմը հրապարակեց 13 կետից բաղկացած մի պլատֆորմ, որտեղ, ելնելով երկրում ստեղծված խիստ ծանր կացությունից, պահանջում է կիրառել մի շարք ռադիկալ միջոցառումներ, որոնք բխում են Սիրիայի և ամբողջ Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի ժողովուրդների շահերից։ Սիրիայի Կոմպարտիան առաջարկում է արաբական միությունն իրականացնել միայն դեմոկրատական հիմքի վրա, կիրառել մի շարք միջոցառումներ տընտեսության զարգացման և ժողովրդի կենսամակարդակը բարձրացնելու համար, վճռականորեն և հետևողականորեն պայքարել օտարերկրյա կապիտալի ներթափանցման դեմ, ամեն կերպ ամրապնդել բարեկամական կապերը ՍՍՌՄ-ի և սոցիալիստական լագերի մյուս երկրների հետ։

Սիրիայի Կոմունիստական պարտիայի միանգամայն օրինական և արդարացի ելույթն անմիջապես օգտագործվեց որպես պատեհ առիթ ՄԱՌ-ում դեմոկրատական ձախ ուժերի դեմ ոստիկանական արշավանք սանձազերծելու համար։ «Արաբական միասնությունը» փրկելու պատրվակով կառավարող շրջանները հալածանքներ սկսեցին այսպես կոչված «արաբական նացիոնալիզմի» կարծեցյալ թշնամիների՝ կոմունիստների դեմ։ Դրան առաջին ազդանշան ծառայեց ՄԱՌ-ի պրեզիդենտ Գամալ Աբդել Նասերի արտասանած ճառը Պորտ Սայիդում՝ 1958 թվականի դեկտեմբերին, Եգիպտոսի դեմ իմպերիալիստական ագրեսիայի պարտության տարեդարձի առթիվ։

Պայքարը կոմունիստների դեմ հակահայրենասիրական գործ է, որը ջուր է լցնում իմպերիալիզմի ջրաղացին։ Դա պարզ երևաց թեկուզ և հենց այն հրճվանքից ու ակտիվությունից, որ պատճառեց Նասերի հակակոմունիստական կամպանիան արևմտյան իմպերիալիստներին։ Սրանք անմիջապես լծվեցին սովետա-արաբական բարեկամական հարաբերություններին վնասելու գործին, օգտագործելով բոլոր միջոցներն ու հնարավորությունները։ Սիմպտոմատիկ է, որ Նասերի հակակոմունիստական կամպանիան համընկավ այն բանին, որ իմպերիալիստական շրջանների բազմաթիվ ատամնավոր և անատամ գայլերը շտապփույթ այցելություններ ձեռնարկեցին Մերձավոր Արևելքի երկրները։

Հակակոմունիստական աղմուկը և գաղութարարների ակտիվացումը մի ազդանշան էին, որպեսզի Մերձավոր Արևելքի արաբական երկրներում գլուխ բարձրացնեին պրոիմպերիալիստական ռեակցիոն քաղաքական խմբերն



ու պարտիաները, որոնք ոգևորված «բարենպաստ» իրադրությունից, անմիջապես ցույց տվին իրենց ժանգոտած ժանիքները։ Դրանց շարքում սկսեցին ակտիվանալ նաև իմպերիալիստների հավատարիմ գործակալներ դաշնակները, որոնք մտնելով իրենց տարերքի մեջ՝ ևս մեկ անգամ ապացուցեցին իրենց նողկալի բնությունը և հակահայկական, հակաարաբական գործելակերպը։



Մերձավոր Արևելքի արաբական երկրներում ապրում են շուրջ 300 հազար հայեր։ Ինչպես ողջ հայ ժողովուրդը, այնպես էլ այդ երկրների հայությունը բնականաբար չէր կարող անտարբեր մնալ արաբական ազգային-ազատագրական պայքարի նկատմամբ։ Նրա ճնշող մեծամասնությունը, որ տասնյակ տարիներ շարունակ ապրել է արաբ աշխատավոր զանգվածների հետ միևնույն տնտեսական, սոցիալական և քաղաքական կյանքով, անվերապահորեն կանգնեց իր մայր Հայրենիքի՝ Սովետական Հայաստանի դիրքի վրա, ոչ միայն խոսքով, այլև գործով պայքարելով արաբ ժողովուրդների ազգային անկախության համար։ Հայ առաջադեմ մարդիկ ի հեճուկս դաշնակ պարագլուխների դավաճանական վարքագծին, նրանց ծախու թերթուկների՝ հուսաբերների, արևելքների կամ ազդակների պրոիմպերիալիստական դիրքին, միշտ և ամենուրեք իրենց մասնակցությունն են բերում արաբների ազատագրական մարտերին, քաջ գիտակցելով, որ արաբ և հայ աշխատավորների շահերը նույնն են, նույնն է և նրանց թշնամին։ Իսկ դաշնակցությունը միշտ հանդես է եկել և այժմ էլ մնում է որպես արևմտյան գաղութարարների կամակատար, նրանց վարձու գործակալ։

Տարիներ շարունակ արաբական ժողովուրդների զարթոնքը «կոմունիստական» շարժում ներկայացնելուց և նրա դեմ մինչև իսկ զինված ագրեսիաներ կազմակերպելուց հետո գաղութարարները ստիպված էին ընդունել իրենց տակտիկայի ձախողումը։ Դաշնակներն էլ գնալով իրենց տերերի հետքերով, հայրենասեր ուժերի դեմ ամենազազրելի ոտնձգություններ կատարելուց և իմպերիալիստների հետ բացահայտորեն գործակցելուց հետո ստիպված էին նույնպես փոխել իրենց տակտիկան, արաբական ազատագրական շարժման բարեկամ ներկայանալ։ Օգտվելով կոմունիստների, և ընդհանրապես, դեմոկրատական ուժերի դեմ սանձազերծված հալածանքներից նրանք նույնպես իրենց ժանգոտած շեփորներով միացան հակակոմունիստական վայրագ ժխորին։ Դաշնակ «Հուսաբերն» իր խմբագիր Գաբրիել Լազյանի բերանով կրկնում էր արաբական ռեակցիոն շրջանների հակակոմունիստական հարձակումները, զոռ տալիս ստին ու կեղծիքին։

Արաբական ազատագրական շարժման դեմ արևմտյան գաղութարարների բոլոր ոտնձգությունների ժամանակ, այդ շարժմանը ոչ միայն ոչ մի համակրական բան չասած, այլև իր թերթուկների էջերում Նասերին «կոմունիստների ուղեկից» անվանող, «Կրեմլի ցուցումներով ղեկավարվելու» մեջ մեղադրող և 1956 թվականի Սուեզի ավանտյուրայի օրերին արևմտյան տերությունների քաղաքականության գարշապարը լիզող դաշնակցությունը Նասերի կողմից սիրիական և եգիպտական կոմունիստների դեմ ձեռնարկած պրովոկացիոն կամպանիայի պահին իրեն հռչակեց արաբական ազատագրական

շարժման եղբայրակից, իսկ իր «գաղափարաբանությունը հար և նման» արաբների ձգտումներին։

«Դաշնակցությունը,— գրում է «Արարատ» թերթը (21. II 1959 թ.),— որ Ռաունթրիի (Մերձավոր Արևելքի գործերով ԱՄՆ-ի պետական քարտուղարի տեղակալ — Ջ. Կ., Հ. Հ.) երդչախմբին վաստակավոր անդամներեն մին է, ղեկավարի ճիպոտի առաջին ազդանշանին հետևելով, հանկարծ մեջտեղ ձգեց իր ձայնը և սկսավ գովերգել արաբական ազգայնականությանը, որ դաշնակցության ներկա ձգտումներեն այնքան հեռու է, որքան երկինքը երկրեն։ Դաշնակ շեֆերը,— շարունակում է այնուհետև թերթը,— սկսած են դեգերել Արաբ ազգայնականության ղեկավարներուն շուրջ, անոնցմե նայվածք մը մուրալով։ Դաշնակ շեֆերը հանդիպումի մի շնորհը կը խնդրեն Արաբ վարիչներեն և իրենց ի նպաստ քանի մը տող գրել տալու համար անոնց թերթերուն մեջ Ռաունթրիի ղրկած չեքերը որպես խայծ կը գործածեն»։

Պատահական չէ, որ անմիջապես Մերձավոր Արևելք աճապարեց ամերիկյան գործակալ Ջորջ Մարտիկյանը, Ռաունթրիի թելադրանքով և հատուկ հանձնարարությամբ։ Ամերիկյան իմպերիալիզմն սկսեց ռևերանսներ անել արաբական ազգայնականությանը՝ Ռաունթրիին Կահիրե ուղարկելով։ Իրենց մեծավորի ժեստին հետևեցին բոլոր մեծ ու փոքր ռաունթրիները։ Ջորջ Մարտիկյանն էլ դաշնակների Ռաունթրին էր և նրան հանձնարարված էր նույն պատիվը՝ կամուրջ ծառայել դաշնակցության և արաբ ղեկավար շրջանների միջև, հարթել նրանց միջև եղած կոնֆլիկտը։ «Հազիվ թե ԱՄՀ (Միացյալ Արաբական Ռեսպուբլիկա — Ջ. Կ., Հ. Հ.) փոփականդի խոհանոցային ծխնելույզեն սկսած էր հակակոմունիստական ծուխ բարձրանալ,— գրել է Բեյրութի «Հառաջ»-ը (23. III 1959 թ.),— Մարտիկյանի զգայուն ռունգերը հաճելի գրգիռ մը զգացին և ան շունչ առավ... արաբական ափերը...»։

Սակայն ո՞վ է այդ Ջորջ Մարտիկյանը։ «Տիկնիկային թատրոնեն հառաջանալով կրկեսային կլոունի աստիճանին հասած մարդ մը»,— մի առիթով գրել է «Զարթոնք» թերթը։ Նա Սան-Ֆրանցիսկոյի «Օմար-Խայամ» ճաշարանի տերն է։ Իր վարվելակերպի մեջ խիստ անպատկառ, բայց միևնույն ժամանակ ծայր աստիճանի փարիսեցի և երեսպաշտ այս խոհարարը ամերիկյան թրծված լրտես է, որը քաղաքագիտություն է անում խոհարարության մեջ և խոհարարություն՝ քաղաքականության մեջ, իր ճաշարանը օգտագործելով լրտեսական գործունեության համար։ Նա 1952 թվականին, Էյզենհաուերի առաջին ընտրության ժամանակ ակտիվ կերպով ներգրավված էր ԱՄՆ-ի Ռեսպուբլիկական պարտիային կից դաշնակ թափթփուկներից և հակասովետական այլ տարրերից կազմված «Հայկական հանձնաժողովի մեջ»։ Սա այն ողորմելին է, որը որպես խոհանոցային գործի մասնագետ և ամերիկյան բանակի ուտեստեղենի գծով վերահսկիչ Կորեա էր մեկնել կորեական ժողովրդի դեմ ագրեսիվ պատերազմ մղող Թուրք ենիչերիներին արևելյան ճաշեր մատուցելու համար։ Թե ինչով վերջացան Թուրքական բանակի այդ ճաշկերույթները կորեական հողում, բոլորին լավ հայտնի է։ Այս անգամ Ջորջ Մարտիկյանի լրտեսական գործունեության ասպարեզը գլխավորապես դարձել է Մերձավոր Արևելքը, որտեղ նա կատարում է ամերիկյան կառավարող շրջանների հատուկ հանձնարարությունները արաբական երկրներում, իր համար ճանապարհ հարթելով դոլարներով։

Ամերիկյան իմպերիալիզմի այս գործակալը երեկ Թուրքական «Վաթան»



թերթի խմբագրապետի հետ էր հանդիպում և քաղցր զրուցում հակասովետական, հակաարաբական համատեղ պայքարի հարցերի շուրջ, Թուրքիայի պրեզիդենտին էր այցելում և հայտարարում, որ հայերը կարող են կամուրջի դեր կատարել... Թուրք-ամերիկյան բարեկամության մեջ, Լիբանան էր աճապարում պահապան կանգնելու իր ժողովրդի կողմից մերժված Շամունի հետ միասին Ազգային ճակատի դեմ պայքարող դաշնակ հակառևոլյուցիոներներին։ Այդ երեկ էր, երբ դաշնակներն Արևմուտքի հետ մուր էին թքում Նասերի և արաբական ազգային-ազատագրական շարժման վրա։ Ըստ դաշնակների այսօր ժամանակներն այլ են, և նրանք հապշտապ կերպարանափոխվելով իրենց ծառայություններն են նվիրաբերում հակադեմոկրատական մեքենայություններին։ Հակակոմունիստական ճակատում դաշնակների տեղն ապահովելու, արաբական հետադիմական ուժերի ու նրանց միջև վստահություն ստեղծելու անհրաժեշտությունն էր, որ նորից Մարտիկյանին բերել էր Մերձավոր Արևելք։ Կահիրեում նա արժանացավ Նասերի հետ հանդիպելու պատվին, որը նույնիսկ նրան պարգևատրեց շքանշանով։ Կահիրեի «Ալ Ահրամ» թերթն իր միջազգային-քաղաքական բաժնի խմբագիր Ժան Ազիզին դրեց Մարտիկյանի տրամադրության տակ՝ նրա ճանապարհորդության նպատակները և լրտեսական գործունեությունը կեղծելու և այլ գույներով հասարակությանը մատուցելու համար։ Այդ թերթն սկսեց տպագրել նույն Ժան Ազիզի հակակոմունիստական ամենազազրելի ստի վրա կառուցված հոդվածաշարքը, իսկ դաշնակ թերթուկներ «Արևելքն» ու «Ազդակ»-ը Բեյրութի «Հառաջ»-ի խոսքերով «ճանճի նման թառեցան այդ հոդվածին վրա և հաջորդաբար հրատարակեցին»։

Լրտեսական գործերի «խոհանոցի արքան» այս տարվա մարտին Բեյրութ ժամանեց դաշնակ լրագրողների ծնծղաների և թմբուկների աղմուկի ներքո։ Ինչպես ցույց տվին նրա բեյրության արկածները, նա ռեստորաններն այցելելու չէր եկել, այլ Անթիլիասի դաշնակ կաթողիկոս Զարեհ Փայասլյանի հետ գաղտնի տեսակցություններ ունենալու, դաշնակների գրպաններն ամերիկյան դոլարներով հարստացնելու և նրանց կազմակերպություններն ու մամուլն ամրապնդելու համար։ Եվ այս բոլորն ի վնաս հայ և արաբ առաջադեմ ուժերի, ընդդեմ արաբների ազատագրական շարժման, ի սեր Մերձավոր Արևելքում ամերիկացիների դիրքի և հեղինակության ամրապնդման։

Հետևելով Մարտիկյանի և մյուսների օրինակին, մեր ընթերցողին արդեն ծանոթ, հայ մեծանուն գրողներին իր «Դար մը հայ գրականություն» անամոթ գրքում վարկաբեկող Մ. Թյոլեյանը նույնպես «վերջին շաբաթները դարձած է դրոշակակիր... արաբական ազգայնականության,— գրում էր նույն «Հառաջ»-ը իր այս տարվա մայիսի 10-ի համարում։— Ազգն ու ազգությունը 30 կանաչ արծաթով վաճառող այս գործակալը հանկարծ դարձած է անձնվեր մարտիկներեն մեկը արաբական ազգային-ազատագրական շարժման՝ օրհնությամբ իր ամերիկացի տերերուն»։

Դաշնակ պարագլուխներին թվում է, թե կարող են մոռացության մատնել իրենց երեկվա նողկալի վարքագիծը, խաբել արաբ հասարակական կարծիքը, սփյուռքահայությանը և ներկայանալ արաբների ազատագրական շարժման կողմնակիցներ։ Բայց չէ՞ որ փաստերը համառ բաներ են։ Չէ՞ որ մարդիկ լավ են հիշում, որ դաշնակ ղեկավարները միշտ և ամենուրեք կանգնած են եղել (և այժմ էլ կանգնած են) արևմտյան գաղութարարների և

ներքին հետադիմության կողքին, լինելով նրանց կամակատարները և արաբական ազգային-ազատագրական շարժման թշնամիները։ Վերհիշենք պատմական իրողությունը, ծանոթանանք փաստերին։

Ֆրանսիական գաղութարարների դեմ Լիբանանի և Սիրիայի ժողովուրդների երկարատև ազատագրական պայքարի բոլոր էտապներում նրանք եղել են գաղութարարների դաշնակիցներն ու հենարանը։ Թե՛ 1925—27 թվականների դրուզների հակաֆրանսիական ապստամբության և թե՛ Շիշեկլիի դիկտատուրայի օրոք դաշնակները եղել են օրվա իշխանավորների կողքին, դավաճանական հարված հասցնելով արաբ հայրենասերների թիկունքին։ Նրանց այդ ստոր վարքագիծն ավելի ակնբախ է դարձել վերջին տարիներս, երբ Մերձավոր Արևելքի երկրներում հակագաղութային պայքարը ճնշելու ուղղությամբ արևմտյան իմպերիալիստների գործունեության աշխուժացման հետ մեկտեղ, նրանց անմիջական հրահանգով, գլուխ բարձրացրին նաև դաշնակները։ 1955 թվականին Կահիրեում սրանք ընդհանուր ժողով գումարեցին և Մերձավոր Արևելքում իրենց գործունեության «նոր քաղաքականություն» հռչակեցին։ Շուտով Փարիզում հրատարակվեց «Գաղտնի մարմիններու համար» մակագրությամբ մի հավաքածու, ուր ընդգրկված են այդ որոշումները, որոշումներ, ըստ որոնց դաշնակ շեֆերը պետք է Մերձավոր Արևելքում վարեին ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի հետ գործակցելու, ըստ էության հակաարաբական քաղաքականություն։ Եվ դա «պատճառաբանվում էր» ազգային նպատակներին հասնելու ձգտումով։ Հին երգերի ինչպիսի՜ զզվելի կրկնություն, ինչպիսի՜ դավաճանական վարքագիծ ապրիլյան եղեռնի բեկորներին հյուրընկալած արաբների ազատագրական շարժման նկատմամբ։

Պատահական չէ, որ այդ շրջանում դաշնակների պրոիմպերիալիստական գործունեության դեմ ուժեղ կամպանիա սկսեցին եգիպտական և սիրիական ռադիոն ու թերթերը։ Եգիպտոսի իշխանությունները հետապնդումներ կազմակերպեցին նրանց նկատմամբ և տակավին չի մոռացված, որ 1957 թվականին, թուրք-ամերիկյան դավադրությանը հակահարված տալու համար Սիրիայում ստեղծված ժողովրդական դիմադրության ուժերին մասնակցելու համար դաշնակներն իրավունք չստացան՝ որպես անվստահելի տարրեր, որպես օտարերկրյա պետությունների գործակալներ։ Նույն այդ Մ. Թյոլեյանը Սիրիայից վտարվեց որպես խռովարար և թուրքական գործակալ։ Սիրիական քաջարի ժողովուրդը, թե՛ արաբները և թե՛ հայերը, միացյալ շարքերով դիմագրավեցին թուրք-ամերիկյան-իսրայելական ոտնձգություններին և դրա հետ մեկտեղ խստորեն դատապարտեցին դաշնակ վարձկանների պրովոկացիաները։

Սակայն այս դեռ բոլորը չէ։ Փաստերը վկայում են թե որքան ստոր և նողկալի են դարձել դաշնակներն իմպերիալիստներին ծառայելու իրենց սև գործերի մեջ։ Իր անհամար ոճիրների, տեռորների և մատնությունների, իր հակասովետական, հակահայկական զզվելի գործունեությամբ դաշնակցությունն ավելի մերկապարանոց է դարձել։

Դա բնությամբ պատեհապաշտ ավանտյուրիստների մի թայֆա է, որն անամոթաբար այսօր իրեն հրապարակով մեկ ու կես միլիոն հայերի արյունը թափած թուրք հարստահարիչների դաշնակից է հայտարարում։ «Միջազգային ներկա կացության մեջ Թուրքիոյ՝ ազատ աշխարհին (արևմտյան իմպերիալիզմի — Ջ. Կ., Հ. Հ.) հետ ըլլալը ոչ թե չարիք մը, այլ՝ բարիք մըն է ազատա-



տենչ հայության համար» «Ազդակ» թերթի էջերից (21. II 1954) բարբաջում էր դաշնակ թրքամոլ պարագլուխներից Ռուբեն Դարբինյանը։ Ամերիկյան դաշնակների ջոջերից Սարգիս Ադամյանն իր «Հայկական համայնք» գրքում բոլորովին էլ չի թաքցնում դաշնակ-թուրքական համագործակցությունը և նույնիսկ անամոթաբար բացահայտում է դրա արմատները, արդարացնում այն՝ որպես Սովետական Միության դեմ արևմտյան իմպերիալիզմի կողմից նախապատրաստվող պատերազմի մի կարևոր օղակ։ Դաշնակների տրադիցիոն հին քաղաքականության այս նոր ջատագովը գրում է. «Մեր օրերի քաղաքական իրադրության նկատմամբ ռեալիստական մոտեցումը պահանջում է անկեղծ և բարյացակամ վերաբերմունք դեպի Թուրքիան», որ «Թուրքիային պետք է խրախուսել և օգնել ընթանալու այդ ուղիով (հակասովետական — Ջ. Կ., Հ. Հ.), ընդ որում նմանօրինակ խրախուսանքը պետք է բխի առաջին հերթին հենց իրենց՝ հայերի կողմից»։

Դաշնակների ամերիկյան տերերն ամեն կերպ խրախուսում են թուրք-դաշնակյան հակակոմունիստական, հակասովետական դաշինքը։ Թուրք ռազմամոլներն էլ չեն թաքցնում հակակոմունիստական նպատակներով փորձված դաշնակներին լայնորեն օգտագործելու անհրաժեշտությունը։

Այդ են հաստատում նախկին դաշնակ Եղիա Նաճարյանի՝ «Դաշնակ ղեկավարությունը օտարի ծառայության մեջ» (Բ. տպագրություն, Հալեպ, 1958 թ.) գրքույկում ամփոփված փաստերն ու փաստաթղթերը, որոնք անարգանքի սյունին են գամում դաշնակ թրքամոլ լրտեսներին։ Դա են ցույց տալիս իր դաշնակ տերերից պառակտված Խոսրով Թութունջյանի «Բյուրոական սնանկությունը և իրավ դաշնակցության ուղին» (Արաբական աշխարհի վերջին դեպքերու լույսին տակ — Բեյրութ, 1959 թ.) գրքույկի նյութերը։

Սփյուռքահայությունը երես է շուռ տվել դաշնակ արկածախնդիր վարձկաններից, որոնք իրենց հայրենադավ մոլուցքի մեջ ձեռք են մեկնել թուրք դահիճներին, ամերիկյան նույն դրոշի տակ Սովետական Հայաստանի և արաբական ազատագրական շարժման դեմ արշավելու նպատակով։ Ահա թե ինչ է գրում Բեյրութի «Հառաջ»-ը նրանց ծառայամտության մասին. «Ամերիկա, մենք ամեն բանի մեջ քու կամքդ կը կատարենք։ Ըսիր՝ «Գովեցեք Նասերը», և մենք սկսանք ոչ միայն գովել, այլև պանծացնել զայն... Ըսիր՝ «Մեկդի դրեք ձեր դարավոր ոխը Թուրքին հետ» և դրինք... Ամերիկա, ըսիր՝ «Սովետներուն դեմ գրեցեք»... արդեն մինչև հիմա մեր գրածները ինչի՞ մասին են որ...» (14. 6. 59 թ.)։

Արևմտյան իմպերիալիստների և իսրայելական սիոնիստների ցուցումով էր, որ դաշնակները պատրաստեցին «Մենք ագենտներ չենք» վերնագրով գիրքը, որը մի ահավոր փաստաթուղթ է, ամենաստոր ոճրագործությունը սփյուռքահայության նկատմամբ։ Այդ հակահայկական գործարքը, որ դաշնակների հետ միասին նախաձեռնել էր ամերիկյան «Սենտրալ Ինտելիջենս էյջընսի» լրտեսական օրգանը շատ հեռու գնացող նպատակներ էր հետապնդում։ Գիրքը Իսրայելի պետության, արևմտյան իմպերիալիզմի և արաբական ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի միջև ստեղծված լարվածության ամենավճռական պահին պետք է արաբների ուշադրությունը շեղեր նրանց ազգային անկախությանը և ազատությանը սպառնացող իմպերիալիզմի և սիոնիզմի դեմ պայքարելուց և Մերձավոր Արևելքի բազմահազար հայությանը ներկայացներ իբրև վտանգ ու սպառնալիք արաբների

կյանքին, բարքերին և ավանդություններին։ Այն պետք է ցույց տար, որ արաբների համար վտանգավոր տարրը ոչ թե իմպերիալիստներն են, հրեական սիոնիստները, այլ հայերը, որոնք ներկայացվել էին որպես «սովետական գործակալներ», «արաբների թշնամիներ»։ Եղիա Նաճարյանի մերկացումներից պարզ է դառնում, որ այդ ահավոր ձեռնարկության անմիջական մասնակցություն են ունեցել դաշնակ պարագլուխներ խաթանեսյանները, լաղյաններն ու թոսպաթները։

Դաշնակներն օտարին ծառայելը դարձնելով իրենց գոյության հիմնական աղբյուր և միջազգային շուկաներում իրենց աճուրդի հանելով, միշտ ձգտել են սպասարկել առավելագույն վճարողին։ Կար ժամանակ, որ դաշնակցական լրտեսական կազմակերպությունը (Դաշնակցական Գաղտնի Սպասարկություն—Դա Գիմ Սե) և Զինվորական կոմիտեն հավատարմորեն ֆաշիստներին էին ծառայում։ Այժմ նրանք ամբողջապես ենթարկվում են ամերիկյան «Սենտրալ Ինտելիջենս Էյջընսի»-ին, որը հաճախ դաշնակ տեռորիստների մարզումը վերապահում է թուրքերին։

Նաճարյանի գրքույկի էջերը վկայում են ամերիկյան հետախուզության աշխատակիցների և դաշնակների հակասովետական համագործակցության բազմաթիվ փաստերի մասին, այն մասին, թե ինչպես դաշնակները հավատարմորեն կատարում են «Էյջընսի»-ի մերձավորարևելյան բաժնի բոլոր հրամանները՝ «սեփական քսակները պարարտացնելով», իսկ սփյուռքահայության շահերը ոտնահարելով։



Դաշնակցության պրոիմպերիալիստական և հակահայկական էությունն ավելի պարզորոշ դրսևորվեց անցյալ տարվա լիբանանյան իրադարձությունների ժամանակ, երբ նա հանդես եկավ ողջ մեղկությամբ։

1958 թվականի մայիսից Լիբանանի ժողովուրդը ոտքի կանգնեց վերջ տալու պրեզիդենտ Շամունի և նրա կլիկի պրոիմպերիալիստական, հակաազգային քաղաքականությանը, որը երկրի անկախությունը դրել էր խիստ վտանգավոր կացության մեջ։ Շամունի կողմից Էյզենհաուերի դոկտրինայի ընդունումը ուժեղացրել էր երկրի ներքին գործերին ամերիկյան միջամտությունը և արևմտյան լրտեսական գործակալությունների հակաարաբական սանձարձակ գործունեությունը։ Դա առաջացրել էր լիբանանյան հայրենասիրական շրջանների արդարացի զայրույթը, որն սպառնում էր սրբել տանել կառավարող դավաճանական կլիկը։

Ժողովրդի ցասումն այդ քաղաքականության դեմ հատկապես պոռթկաց լիբանանյան «Տելեգրաֆ» թերթի խմբագիր, առաջադեմ հրապարակախոս Նասիբ Մեթնիի անարգ սպանությունից հետո, որին անմաս չէին նաև դաշնակ խմբապետները։ Կառավարող կլիկն անզոր գտնվելով դիմագրավելու ապստամբած ժողովրդական զանգվածներին, հակառակ երկրի բնակչության մեծամասնության կամքին, դիմեց ամերիկյան իմպերիալիստների օգնության, որոնք չհապաղեցին ուղղակի ինտերվենցիա կատարել Լիբանան։ Ամերիկյան 6-րդ նավատորմի ափ հանած ինտերվենցիոնիստական զորքերը դիրք բռնեցին ռեակցիայի ուժերի կողքին ընդդեմ ապստամբ հայրենասերների։

Իմպերիալիստների դաշինքը և իր երկրի ներքին գործերին նրանց միջամտությունն ապահովելով, Շամունն ամեն կերպ ձգտում էր համախմբել





ներքին ռեակցիոն ուժերը, որոնց շարքում նա մեծ նշանակություն էր տալիս դաշնակ բանդաներին։ Այդ օրերին դաշնակներն իրենց տարերքի մեջ էին, մի կողմ էին նետել արաբների բարեկամի պատմուճանը և ազատություն տվել իրենց վայրագ կրքերին։ Դաշնակները փորձեցին օգտագործել եկեղեցու ազդեցությունը հայ հավատացյալների վրա։ Այդ նպատակով նրանք հանդես եկան Անթիլիասի՝ իրենց դրածո կաթողիկոս և վեղարի ու սքեմի տակ քողարկված դաշնակ գործակալ Զարեհ Փայասլյանի հետ միացյալ ճակատով։

Գաղտնիք չէ, որ իրերի վիճակը ծուռ հայելու մեջ ներկայացնելու և Լիբանանի ժողովրդի հակաիմպերիալիստական պայքարը կրոնական ներքին պատերազմ ներկայացնելու համար Շամունը ոչ մի ջանք չխնայեց։ Ինքը լինելով քրիստոնյա, նա Լիբանանի իրադարձություններն ուզում էր ներկայացնել որպես կրոնական պայքար քրիստոնյաների, մուսուլմանների և դրուզների միջև։ Սակայն դա կրոնական պայքար չէր, այլ ազատագրական կռիվ, որին մասնակցում էին Լիբանանի կրոնական բոլոր համայնքները։ Իր ազգակից քրիստոնյաների կողմից մերժվելով և աջակցություն չգտնելով, խռովարար Շամունը փորձում էր ելք գտնել իր համար ստեղծված «կրոնական» ծանր կացությունից և դիմեց Անթիլիասի եկեղեցապետի օգնությանը, որը չհապաղեց իր ծառայությունները նվիրաբերել նրան՝ հավատարիմ իր դաշնակցական բնությանը։ Այսպես սկսվեց Շամուն-Զարեհ և, հետևապես, Շամուն-դաշնակցական մեղրամիսը Լիբանանի արյունալի իրադարձությունների նախօրեին։ Շամունը պաշտոնապես այցելեց Զարեհին և, ի վավերացումն հանցավոր դաշնադրության, նրան պարգևատրեց լիբանանյան ամենաբարձր՝ Մայրիների շքանշանով։

Ասում են ձեռքը ձեռք է լվանում։ Զարեհ դավաճանն էլ իր հերթին հրապարակայնորեն երախտագիտությամբ հիշատակեց Շամունի «ներշնչած պետական օժանդակությունը», որի շնորհիվ նա կարողացավ բռնագրավել Անթիլիասը և այն ի սպաս դնել դաշնակների հայրենադավ մեքենայություններին[1]։ Փաստերը վկայում են, որ Շամունի այցելությունը դաշնակ դրածոյին հեռու էր քաղաքավարության կանոններին տուրք տալուց և զուտ քաղաքական նպատակներ էր հետապնդում։ Ահա թե ինչ է գրել այդ առթիվ Բեյրութի արաբական «Ալ Ախբար» թերթը (26. 10. 1958 թ.)։

«Իր իշխանության ամբողջ տևողության ընթացքում Շամունը հովանավորեց դաշնակ ավազակախումբը, Շամունը նպատակ ուներ այս ձևով տիրանալ հայերին և նրանց օգտագործել իր ոճրագործ նպատակների համար։ Այդ իսկ պատճառով նա քաջալերեց և պաշտպանեց այս ավազակախումբը։ Նա նույնիսկ փորձեց հայերի կողմից անիծված այդ ստոր ավազակներին հասարակայնությանը ներկայացնել որպես հայ զանգվածների մոտ մեծ վարկ ու ժողովրդականություն վայելող պարտիա... Եվ հավատացնելու համար թե ճշմարիտ են իր խոսքերը դաշնակների ուժի մասին, նա իր ժանդարմների

[1] Անթիլիասը դարձնելով սփյուռքահայության և նույնիսկ Սովետական Հայաստանի դեմ ազգադավ քաղաքական արկածախնդրությամբ զբաղվելու կենտրոն, դաշնակները կորցրել են ամեն մի չափ ու սահման։ Այդ նրանց առաքելությամբ էր, որ այս տարվա մայիսի 28-ին ԱՄՆ-ի սենատում Սովետական Հայաստանի դեմ սուր էր ճոճում դավաճան վանական, սքեմավոր դաշնակ խորեն եպիսկոպոս Բարոյանը, Ամերիկային կոչ անելով պատերազմ սկսել Սովետական Միության դեմ՝ «փրկելու» հայերին «ընկերավարական կարգերից»։ Պատերազմի հրձիգին կարելի է պատասխանել ժողովրդական առածի խոսքերով. «եթե ցանկությունները ձիեր լինեին, մուրացիկները հեծյալներ կլինեին»։

*միջոցով դաշնակ եպիսկոպոսին նստեցրեց կաթողիկոսական աթոռին, հակառակ հայերի ճնշող մեծամասնության դիմադրության...»:*

*Մինչ Լիբանանի հայ աշխատավոր մարդիկ վճռականորեն դիրք բռնեցին արաբ եղբայրների շարքում՝ պայքարելու երկրի ազատության և անկախության համար, դաշնակները սպանդի ասպարեզ դարձրին Բեյրութի էշրեֆիե և Բուրջ Համուտ թաղամասերը: «Ողբերգությունը, զոր կապրի բեյրութահայությունը,— այդ օրերին գրում էր «Զարթոնք» թերթը,— ուղղակի հետևանք է դաշնակ ղեկավարության հետապնդած ոճրամիտ քաղաքականության»: Արաբական թերթերն ամեն օր նյութեր էին հրապարակում դաշնակների խժդժությունների և ոճրագործությունների մասին: Ահա այդ ժամանակ էր, որ Բեյրութ էր ժամանել ամերիկյան լրտես մայոր Ն. Լաչինյանը՝ ամերիկյան «դեսպանության կցորդի» պաշտոնով: Այդ սրա արգահատելի գործունեության հետևանքով էր, որ դաշնակ տեռորիստներն սկսեցին ավելի լկտիորեն գործել, կրակ բացելով Բեյրութի հայաշատ թաղամասերի գործադուլավորների և ապստամբների վրա, սպանելով հայ և արաբ բազմաթիվ հայրենասերների: Դաշնակ շեֆուկները Շամունին համոզում էին Անթիլիասից և Բուրջ Համուտից հեռացնել ոստիկանությանը և զորքը, դրանք օգտագործել այլ վայրերում, իսկ այդ թաղամասերի տնօրինությունը հանձնել իրենց՝ դաշնակներին: Սրանք իրենց տներում պատսպարում էին Բաղդադի պակտի մասնակից պետությունների կողմից Լիբանան ուղարկված դիվերսանտ խռովարարներին: Դաշնակների անպատկառությունն այնտեղ էր հասել, որ օգտվելով ապստամբության օրերին ուտեստի պակասից, զբաղվում էին սպեկուլյացիայով և այլ չարաշահումներով: Դաշնակները խժդժություններ էին սարքում նաև Սիրիայում՝ Հալեպում, հայտարարելով թե «հոս ալ Լիբանանի պես պիտի ընենք»:*

*Երբ շնորհիվ Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և մյուս սոցիալիստական ու խաղաղասեր պետությունների ակտիվ միջամտության իմպերիալիստների ինտերվենցիան հաջողություն չունեցավ Լիբանանում, իսկ երկրի ժողովրդա-ազատագրական ուժերը հաղթանակ տարան, դաշնակներն շտապեցին փարիսեցիաբար հայտարարելու, որ նրանք «հավատարիմ ու անկեղծ» կլինեն Լիբանանի նոր նախագահ Ֆուադ Շեհաբի նկատմամբ:*

*1958 թվականի սեպտեմբերի 18-ին դաշնակների «Ազդակ»-ը հայտարարեց, թե այդ օրվանից սկսած պետք է աջակցեր գեներալ Շեհաբին ամեն հնարավոր բան անելու երկրում խաղաղություն հաստատելու համար: Սակայն հենց նույն օրը արաբ խռովարարների հետ միասին դաշնակները նոր անկարգություններ սարքեցին, ծեծելով, թալանելով, կրակ բացելով և սպանելով անմեղ մարդկանց: Բեյրութի Անդր Նահր թաղամասում նրանք մասնակցում էին նոր իշխանության դեմ կազմակերպվող ցույցերին, պետական օրգաններին չենթարկվելուն և հարկադրում մարդկանց փակելու խանութները, խախտելու կարգ ու կանոնը: Մասլուխ թաղամասում նրանք մասնակցեցին արաբ հայրենասերների դեմ կատարված հարձակմանը և վայրագություններ գործեցին նրանց նկատմամբ: Դաշնակ թերթուկներն անամոթաբար գրում էին «Հայու թանկագին արյունը տեսնելու վշտի մասին», իսկ 24 ժամ չանցած իրենց ձեռքերը ներկում այդ արյունով՝ հոկտեմբերի 9-ին գազանաբար սպանելով անպարտական հայրենասեր եղբայրներ Ավետիս և Գրիգոր Դավթյաններին և ծանր վիրավորելով նրանց մյուս եղբորը:*



*Այս ոճիրն այն աստիճան մեծ զայրույթ առաջացրեց հայ և արաբ հայրենասերների մոտ, որ նրանք անմիջապես զինված խմբեր կազմակերպեցին, որոնք հետապնդեցին և գետին տապալեցին դաշնակ տեռորիստներին: «Դաշնակ արյունարբու ոճրագործներու զգետնումեն հետո էր,— գրում էր «Լրաբեր» թերթը,— որ Պոսթոնի անհայրենիքներու «Հայրենիք»-ը կոկորդիլոսի արցունքներ թափելով երկուստեք եղած սպանության առթիվ, հարց կուտա թե՝ մինչի ե՞րբ պիտի շարունակվեն եղբայրասպանության դեպքերը:*

*Մարդիկ միամիտ պետք է ըլլան հավատալու համար թե՝ պատեհապաշտներու և հայրենադավներու կուսակցությունը մեղայի եկած է: Անշուշտ ոչ»: Հիրավի դաշնակներն ամենևին էլ չդադարեցրին իրենց եղբայրասպան վարքագիծը, որը և այսօր էլ շարունակում են:*

*Մի ժամանակ դաշնակ պնակալեզներն Իրաքի ժողովրդի դահիճ, իմպերիալիզմի հավատարիմ կամակատար Նուրի Սայիդի մերձավոր հենարանն էին և օգտվում էին նրա հատուկ խնամակալությունից: Բոլորովին էլ պատահական չէր, որ նրանց էր վստահված Բաղդադի հայ գաղութի տեր ու տնօրինությունը: Դահճապետ Նուրի Սայիդի սվինների միջոցով դաշնակներն իրաքահայերին պարտադրել էին իրենց ապօրինի «Ազգային իշխանությունները», գործելով հետադիմական բոլոր ուժերի հետ միավորված: Ստորև բերվող փաստերը մերկացնում են իմպերիալիստների հակասովետական քաղաքականությունը կոցահարող Բաղդադի դաշնակների ողջ այլանդակությունը:*

*Բեյրութի «Հառաջ» թերթն իր 1959 թվականի փետրվարի մեկի համարում հրապարակեց Բաղդադի այժմ փակված դաշնակցական «Գոյամարտ» թերթի խմբագիր Լևոն Գարմենի նամակը նույն տխրահամբավ Թյոլեկյանին, որը գրված է եղել 1958 թվականի մարտին: Խմբագիր կոչվածը Թուրքոֆիլ Թյոլեկյանին իր նամակում նորից ու նորից խորհուրդ է տալիս բարյացակամ լինել Թուրքիայի նկատմամբ, վատ բաներ չգրել նրա հասցեին և իր կուսակից ընկերոջը պատվիրան է տալիս. «Ուժ տուր հակահամայնավար հոդվածներուն՝ գրելով ընդհանուր երևույթներուն մասին, խուսափելով Սովետ Հայաստանի հիշատակումեն... Այս է մեր ուղեգիծը:*

*Պետք չէ մոռանալ, որ մեր սիրելի հայրենիքը՝ Իրաք անդամ է Պաղտատի ուխտին և Իրաք-Հորդանանյան դաշնակցային միությամբ՝ արաբ ազգային ներշնչումը կը ստանա՝ արաբ բարձրագույն զգացումները խորհրդանշող՝ Հաշեմիտներու Արքայական տունեն»:*

*Այս փաստաթուղթը շատ լավ ցույց է տալիս դաշնակների ռեակցիոնէությունը, նրանց քաղաքական դավանանքի միմյանց միահյուսված տարբեր կողմերը: Լինելով հայրենիքի դավաճաններ և անասնական ատելություն տածելով Սովետական Հայաստանի նկատմամբ, նրանք չեն կարող չդավաճանել արաբներին, որովհետև երկու դեպքում էլ այդ են պահանջում իմպերիալիզմի շահերը: Դաշնակները ոչնչով չեն տարբերվում արաբ այն ռեակցիոներներից, Հաշեմիտյան դինաստիային մոտ կանգնած այն դավաճանների կորպորացիայից, որոնք տասնյակ տարիներ արաբների բնական հարստությունները նվիրաբերել են օտարերկրյա շնագայլերին՝ իրենց անձնական բարօրությունը ապահովելու և մեծ գումարներ գրպանելու կեղտոտ միտումով:*

*Դաշնակներն անմաս չմնացին նաև Իրաքի ռեսպուբլիկայի դեմ իմպերիալիստական պետությունների և ներքին հետադիմական ուժերի նյութած դավադրություններից: 1958 թվականի հուլիսի 14-ի ազգային ռևոլյուցիան*

Իրաքում վերջ դրեց դաշնակ ոճրագործների արյունարբու տերերի իշխանությանը։ Դաշնակները թշնամաբար դիմավորեցին Իրաքի ռեսպուբլիկայի ստեղծումը, առաջին իսկ օրերից ծառայելով հակառեսպուբլիկական ուժերին։

Ահա թե ինչու ռեսպուբլիկական կառավարությունը փակեց դաշնակների «ազգային իշխանությունները», լուծարքի ենթարկեց նրանց «Ազգային գավառական ժողովը», նրան կից մարմիններն ու թերթերը, որոնք անբարյացակամ էին տրամադրված կառավարության ձեռնարկած վերափոխություններին։ Այս բոլորից հետո էլ դաշնակները չդադարեցրին հակառեւոլյուցիոն մեքենայությունները։

Ինչպես գրել է «Ալ Ախբար» թերթը (1959 թ. II), ԱՄՆ-ի թելադրանքով արաբական ռեակցիոն «Բաաս» պարտիայի և դաշնակների ներկայացուցիչների միջև համաձայնություն էր կայացվել Իրաքի ռեսպուբլիկայի դեմ քայքայիչ գործունեությունը կոորդինացնելու հարցում։ Ըստ թերթի հաղորդման արդեն անհրաժեշտ հրահանգներ էին տրվել Իրաքում «Բաաս» և դաշնակցություն պարտիաների կազմակերպություններին երկրում տեռորիստական և դավադրական գործունեություն ծավալելու շուրջը։ Այդ նպատակով դաշնակ պարագլուխները Լիբանանից Իրաք էին ուղարկել դավադիր Ժիրայր Գասպարյանին։ Սակայն վերջինիս առաքելությունը ձախողվեց և նա իր վեց այլ համախոհների հետ միասին կանգնեց Իրաքի ռեսպուբլիկայի ռազմական դատարանի առջև և դատապարտվեց նրա կողմից դավադրական գործունեության համար։



Դաշնակներին մերկացնող փաստերն անհաշիվ են։ Սակայն առայժմ բավարարվենք այսքանով։ Մերձավոր Արևելքի երկրներում դաշնակցություն պարտիան իրեն առանց մնացորդի նվիրել է գաղութարարների ռեակցիոն պլաններին ծառայելու գործին և ամբողջապես հակադրվել արաբ և հայ աշխատավոր զանգվածների արմատական շահերին։

Դաշնակ վերջին մոհիկանները որոշ ժամանակ առաջ լկտի մերկությամբ, առանց քողարկվելու մասնակցում էին արաբ ժողովուրդների ազատության և ազգային անկախության իմպերիալիստական աճուրդին միջազգային շուկայում՝ առատորեն վարձատրվելով արևմտյան գաղութարար մոնոպոլիստների կողմից, իսկ այժմ փորձում են պատառներ փախցնել հակակոմունիստական թոհ ու բոհի մեջ։ Սակայն դաշնակների գանգստերական ավազակախումբը չափից ավելի գերագնահատում է իր մարտողական ունակությունները։ Մերձավոր և Միջին Արևելքի ժողովուրդներն արդեն բավական լավ են ճանաչում դաշնակներին՝ նրանց քաղաքական աճպարարությունների իմաստը ճիշտ ըմբռնելու համար։ Արաբական երկրներում նրանք մերժված և արհամարհված մի խումբ են, նման մթնոլորտն իր գարշահոտությամբ ապականող նեխվող դիակի։ Հակակոմունիստական ուգարի ազդեցության տակ այդ դիակը փորձում է կենդանության նշաններ ցույց տալ։ Բայց զուր ջանքեր են դրանք։ Դաշնակցությունն իրեն լիովին մերկացրել է որպես իմպերիալիզմի վարձկան խումբ ու արաբ-ազատագրական շարժման թշնամի։ Մերձավոր Արևելքի հայ և արաբ առաջադեմ ուժերը թույլ չեն տա, որ այդ դիակը հարությունառնի արաբական ժողովուրդների կեղծ բարեկամի դիմակով։

---

# ՔԱՂԱՔԱՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ

Ճարտարապետ

Երկրագնդի վրա ներկայումս ապրում է 2700 միլիոն մարդ։ Մոտավոր հաշիվներով հետագա 25 տարիների ընթացքում այդ թիվը կավելանա մեկ միլիարդով, այսինքն այնքանով, որքան մարդ կար երկրագնդի վրա XIX դարի կեսերին։ Դա նշանակում է, որ այդ 25 տարվա ընթացքում պետք է կառուցվեն հազարավոր նոր բնակավայրեր, տասնյակ միլիարդ քառակուսի մետր բնակելի մակերեսով։ Իսկ եթե դրան ավելացնենք նաև այն, որ աշխարհի բոլոր երկրներում բնակիչների զգալի մասը ապահովված չէ բնակարաններով, կամ ապրում է ոչ լիարժեք բնակարաններում, հասկանալի կդառնա թե ինչպիսի վիթխարի դժվարություն է ներկայացնում բնակեցման պրոբլեմը։

Բնակեցման պրոբլեմը միշտ էլ եղել է ոչ միայն քաղաքաշինարարական, այլ իր ժամանակի ամենակարևոր սոցիալական պրոբլեմներից մեկը։ Ամեն մի հասարակարգ ստեղծել է բնակեցման իր սիստեմը, բնակավայրերի տարբեր ձևերը՝ համապատասխան տվյալ հասարակարգի արտադրական հարաբերությունների և արտադրության միջոցների զարգացման մակարդակի։

Միևնույն ժամանակ բնակավայրերն իրենց բոլոր կառուցվածքներով լինելով արտադրական միջոցների մարմնացումը, հանդիսացել են այն նյութական միջավայրը (բնակարան, արտադրատեղ, հասարակական շենք), որի մեջ ընթացել է տվյալ հասարակարգի կյանքը։ Այսպիսով, նրանք նպաստել են արտադրական հարաբերությունների ձևավորմանը և պահպանմանը, տիրող դասակարգերի դիրքի ամրապնդմանը։

Սակայն, ամեն մի նոր հասարակարգ ստեղծելով բնակեցման նոր ձևեր, միևնույն ժամանակ ժառանգում է անցած ֆորմացիաների բնակավայրերը, ձևափոխելով, հնարավոր չափով դրանք հարմարեցնելով նոր պայմաններին։ Այսպես, Փարիզը, Լոնդոնը, Վիեննան, Ֆլորենցիան քաղաքներ են եղել դեռ անտիկ Հռոմի կայսրության օրոք, զարգացել են միջնադարում և շարունակում են իրենց գոյությունը կապիտալիստական հասարակարգում։ Մոսկվան սկզբնավորվել և զարգացել է ֆեոդալական և կապիտալիստական հասարակարգերում, իսկ այժմ վերակառուցվում է որպես սոցիալիստական քաղաք։

Հին բնակավայրերը հնանալով և քայքայվելով, «ֆիզիկապես» հնանում են և «բարոյապես» չեն համապատասխանում նոր սոցիալական պայմաններին և տեխնիկական սարքավորման նոր մակարդակին։ Այդ երևույթը հատկապես զգալի դարձավ XIX դարի կեսերին, երբ կապիտալիզմի զարգացման շնորհիվ տեղի էր ունենում քաղաքների շատ արագ աճ, երբ քաղաքներում,

առանց կանխամտածված սիստեմի, անտեսելով բոլոր քաղաքաշինարարական սկզբունքները և հիգիենիկ նորմաները, կառուցվում էին գործարաններ, երկաթուղային գծեր և կայարաններ, նավահանգիստներ, պահեստներ և այլ տեխնիկական ու արտադրական կառուցվածքներ։ Իսկ նրանց շուրջը նեղված և հակասանիտարական պայմաններում գոյանում էին բանվորական անբարեկարգ թաղամասերը՝ «խորշերը» գյուղերից եկած միլիոնավոր բանվորների համար։ Դրությունն այնքան վատ էր, որ բուրժուազիան ստիպված եղավ որոշ միջոցներ ձեռք առնել, որովհետև բանվորական թաղամասերում սկսվող համաճարակները վտանգ էին ներկայացնում նաև քաղաքի «բարձր» դասի բարեկարգ թաղամասերի համար (Ֆ. Էնգելս, «Բնակարանային հարցը»)։ Եվրոպական բոլոր մեծ քաղաքներն այդ ժամանակաշրջանում զարգացման ճգնաժամ էին ապրում և վերակառուցման ճիգեր էին գործադրում։ Առաջին փորձերն արվեցին Փարիզում։ Նրա օրինակին հետևեցին Վիեննան, Բեռլինը, Լոնդոնը և այլ քաղաքներ։

Սակայն, կապիտալիզմի շրջանակներում, առանց սոցիալական վերափոխումների, այդ ճիգերը դատապարտված էին անհաջողության, որի մասին չափազանց հատու գրել են Մարքսը և Էնգելսը։ Կապիտալիստական քաղաքները հետագա զարգացման ընթացքում ևս չկարողացան հաղթահարել զարգացման այդ հակասությունները և շարունակում են ապրել ճգնաժամային դրություն՝ բնակարանային պրոբլեմի բարեկարգման և տրանսպորտային պրոբլեմների լուծման հարցում։ Այսպես, օրինակ, Փարիզի բնակարանների հինգից մեկը չունի ջրմուղ, 20 տոկոսը՝ վաննա կամ ցնցուղ, 18 տոկոսը՝ խոհանոց, 70 տոկոսը՝ կենտրոնական ջեռուցում։ Միացյալ Նահանգների 45 միլիոն բնակարաններից 10 միլիոնը «խորշեր» են։ Եվրոպայի և Ամերիկայի բոլոր մեծ քաղաքներում անելանելի դրություն է ստեղծվել տրանսպորտը կարգավորելու հարցում, որի պատճառով երկրորդ պլանի վրա են մնացել քաղաքաշինարարական բոլոր մյուս կարևոր պրոբլեմները։

Բոլորովին ուրիշ բնույթ և մասշտաբ է կրում քաղաքների վերակառուցումը սոցիալիստական երկրներում։ Արտադրության միջոցների ազգայնացման շնորհիվ բնակավայրերի կառուցումը և վերակառուցումը կատարվում է պլանավորված ձևով, պետության կողմից, ելնելով հասարակության ընդհանուր շահերից։ Մոսկվան, որը ռևոլյուցիայից առաջ «ամենամիջնադարյան» քաղաքն էր, հսկայական վերակառուցողական աշխատանքների միջոցով դարձել է աշխարհի ամենաբարեկարգ քաղաքներից մեկը։

Քաղաքաշինարարական պրոբլեմները լուծելու համար մեզ մոտ ստեղծված են այնպիսի բարենպաստ պայմաններ, որոնց մասին կապիտալիստական երկրների ճարտարապետները միայն երազել կարող են։ Սակայն, այդ բարենպաստ պայմանների առկայությունը ավտոմատիկ կերպով չի ապահովում խնդիրների ճիշտ լուծումը։ Բնակավայրերի կառուցումը մեզ մոտ ևս, անհերքելի հաջողությունների հետ մեկտեղ, ունեցել է իր սխալները և այսօր էլ ունի բազմաթիվ դժվարություններ, որոնց հաղթահարումը մեծ ջանքեր ու վարպետություն է պահանջում։

Հիմնական արատը, որ ունեցել է մեր քաղաքաշինարարությունը և առհասարակ ճարտարապետությունն իր զարգացման անցյալ շրջանում, դա ցուցամոլությունն է և արխաիզմը, երբ կարևորը համարվում էր ո՛չ թե կառուցվածքի ֆունկցիան, այլ նրա տեսքը միայն (թե ինչ չափով էր նա զարդարում



փողոցը, հրապարակը, անսամբլը), իսկ ձևերի ընտրության մեջ գերակշռում էին հին ճարտարապետության նմուշները, որոնք խանգարում էին ճարտարապետության զարգացմանը և, վերջին հաշվով, արգելք հանդիսանում շինարարության մեջ նոր ինդուստրիալ մեթոդների կիրառմանը։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի կողմից 1954 թվականին հրավիրված շինարարների համամիութենական խորհրդակցությունում միանգամայն արդարացի դատապարտվեցին այդ սխալները։ Կոչ արվեց ճարտարապետության հիմնական սկզբունքներ դարձնել սովետական մարդկանց պահանջմունքները բավարարելու նպատակը, կառուցվածքների ֆունկցիոնալ խնդիրների ճիշտ լուծումը և շինարարության մեքենայացումը։

ՍՄԿՊ XXI համագումարում ընդունված կոմունիստական հասարակության կառուցման ծավալուն ծրագիրը չափազանց մեծ և դժվարին խնդիրներ է դնում մեր առաջ՝ ճարտարապետության և, հատկապես, քաղաքաշինարարության ասպարեզում։ Արտադրողական ուժերի աննախընթաց վերելքի շնորհիվ կստեղծվեն հազարավոր նոր արդյունաբերական օջախներ ու բնակավայրեր։ Այդ նոր բնակավայրերի կառուցումը և հների վերակառուցումն ու բարեկարգումը վիթխարի քաղաքաշինարարական ծրագիր է։

Խնդիրն այն է, որ այդ ծրագրի իրականացման ընթացքում կարողանանք գտնել քաղաքաշինարարական և ճարտարապետության այնպիսի նոր ձևեր, որոնք ոչ միայն համապատասխանեն արտադրողական ուժերի զարգացման բարձր մակարդակին, այլև իրենք ևս նպաստեն աշխատանքի արտադրողականության հետագա զարգացմանը, նպաստեն նոր, կոմունիստական հասարակարգի արտադրական հարաբերությունների ձևավորմանը, նպաստեն նոր աշխարհայացքի, նոր մարդու և կենցաղի կազմավորմանը։

Դասակարգային ֆորմացիաներում ճարտարապետության մոնումենտալիզմը, շքեղությունը, հանդիսավորությունը և ներգործման նման մեթոդները օգտագործվում էին նաև տիրող դասակարգի հարստությունը և ուժը ցուցադրելու ու հաստատելու համար, մարդկանց սոցիալական անհավասարությունն ամրապնդելու, անհատականությունը ճնշելու, կաշկանդելու համար։

Սոցիալիստական հասարակության ճարտարապետությանը խորթ են այդ ամենը, որովհետև այն ծառայում է բոլոր մարդկանց համար բարեկեցիկ և երջանիկ կյանք ստեղծելու նպատակին։ Այդ չի նշանակում, որ նա պետք է զուրկ լինի հուզականությունից և միայն նյութական պահանջմունքների բավարարմանը ծառայի։

Ճարտարապետությունը՝ քաղաքը, փողոցը, հրապարակը, բնակարանը, գործարանը, հասարակական շենքերը և այլն, դրանք այն միջավայրն են, որտեղ մարդն անց է կացնում իր ամբողջ կյանքը, և դրանց տարբեր ձևերը, տարբեր հարմարություններ ստեղծելուց բացի, մարդու մեջ հարուցում են նաև տարբեր զգացմունքներ ու տրամադրություն, որոնք նպաստում կամ խանգարում են նրա կենցաղին, աշխատանքին, հանգստին։

Ճարտարապետությունը ծավալների և տարածությունների փոխհարաբերությամբ ու ռիթմով, լույսի, ստվերի ու գույների հակադրմամբ և այլ ձևերով, բարդ ասոցիացիաների միջոցով ստեղծում է կերպարներ, որոնք թեև կոնկրետ արտահայտություն չունեն ինչպես նկարը կամ քանդակը, սակայն նույնքան որոշակի ազդեցություն են թողնում մարդու վրա, ստեղծելով տար-

բեր տրամադրություններ, ինչպիսին կսեղծեր, օրինակ, երաժշտությունը, որը նույնպես ներգործում է ոչ կոնկրետ կերպարների միջոցով։

Սոցիալիստական քաղաքի ճարտարապետությունն իր նյութական հարմարություններով ստեղծելով բոլոր անհրաժեշտ կենսական պայմանները մարդու համար, պետք է իր արտահայտությամբ նույնպես համապատասխանի նրա աշխարհհայացքին, իր ձևերով նպաստի այդ աշխարհհայացքի զարգացմանը։ Հայտնի է, որ գոթական տաճարները ոչ միայն շատ հարմար էին եկեղեցական արարողության համար, այլև իրենց ճարտարապետական արտահայտչականությամբ, որ ուներ նյութականը, աշխարհիկը ժխտող, վերասլաց, դեպի երկինքը խոյացող խորհրդավոր արտահայտություն, շատ մեծ չափով նպաստում էին կրոնական ջերմեռանդությանը։

Մինչդեռ մեր ճարտարապետությունն իր հիմքում ունի մատերիալիստական աշխարհհայացքը, արտահայտվում է ռեալիստական միջոցներով, իսկ բովանդակությամբ օպտիմիստական է, կենսուրախ, բազմերանգ և տրամադրող։ Այն պետք է լինի հանդիսավոր այնտեղ, որտեղ իրոք դա անհրաժեշտ է, առանց փքուն ու կեղծ մոնումենտալիզմի և անիմաստ շքեղության, լինի պարզ և զուսպ մասսայական շինարարության մեջ, որոշ դեպքերում խիստ, հաճախ ինտիմ, բայց միշտ հարմար կոնստրուկտիվ և էկոնոմիկ միջոցներով։

Չպետք է մոռանալ նաև, որ այսօրվա մեր ստեղծվող բնակավայրերը գոյություն են ունենալու նաև գալիք կոմունիստական հասարակարգում, հետևաբար մենք պետք է հնարավոր չափով կանխատեսենք նրանց ապագա բնակիչների պահանջները, հակառակ դեպքում մեր այսօրվա կառուցվածքների «բարոյական» կյանքն ավելի կարճ կլինի, քան նրանց ֆիզիկական գոյությունը։

Մեր ռեսպուբլիկայում յոթնամյա պլանի իրականացման ընթացքում կարևորագույն տեղ են գրավում բազմաթիվ քաղաքաշինարարական պրոբլեմներ։ Այդ ժամանակաշրջանում մեր ռեսպուբլիկայի տնտեսության մեջ զգալի աճի հետ միաժամանակ տեղի են ունենալու խոշոր որակական փոփոխություններ. բարձրանալու է արդյունաբերության տեսակարար կշիռը, ստեղծվելու են քիմիական, մեքենաշինական, գունավոր մետաղների, սննդի և թեթև արդյունաբերության նոր ձեռնարկություններ։ Արդյունաբերության համար նոր հիմք են դառնալու բնական գազը և կառուցվելիք ջերմաէլեկտրակայաններն ու հիդրոէլեկտրակայանները։ Նոր արդյունաբերական ձեռնարկությունների մեծ մասը տեղաբաշխվելու է ռեսպուբլիկայի այն շրջաններում, որտեղ արդյունաբերությունը թույլ է զարգացած (Կոտայք, Ախտա, Սևան, Կրասնոսելսկ, Դիլիջան, Գորիս և այլն), նպատակ ունենալով նախ համաչափ զարգացման և երկրորդ՝ արդյունաբերությունը հումքին մոտեցնելու սկզբունքները։

Այդ ժամանակաշրջանում զարգացման մեծ ծրագիր ունի գյուղատնտեսությունը՝ ոռոգման սիստեմի, բերքատվության բարձրացման և էլեկտրիֆիկացիայի, նոր սովխոզներ ստեղծելու բնագավառներում։ Ընդարձակվելու են ռեսպուբլիկայի երկաթուղային և խճուղային ցանցը, կապի ցանցը։ Խոշոր ներդրումներ են կատարվելու բնակավայրերի ջրամատակարարման, կոյուղու, էներգամատակարարման, գազի ու ջերմամատակարարման և բարեկարգման այլ աշխատանքների համար։ Յոթնամյակի ընթացքում հատուկ ուշադրություն է նվիրվում բնակարանային շինարարությանը։ 1959—1965 թթ. կառուցվելու են 3 միլիոնից ավելի քմ ընդհանուր տարածությամբ բնակելի տներ և դրա հետ միասին անհրաժեշտ հասարակական շենքեր։



Այս բոլորի իրականացման շնորհիվ զարգանալու և բարեկարգվելու են մեր ռեսպուբլիկայի բոլոր բնակավայրերը և ստեղծվելու են բազմաթիվ նոր բնակավայրեր, քաղաքներ, ավաններ, սովխոզներ։ Այժմ քաղաքաշինարարության կարևորագույն պրոբլեմ է հանդիսանում այդ նոր ստեղծվող բնակավայրերի և նրանց հիմքը կազմող արտադրական օբյեկտների ճիշտ տեղաբաշխումը, որը պետք է կատարել խիստ պլանավորված, կանխամտածված ձևով, տնտեսապես հիմնավորելով այն, հաշվի առնելով բոլոր կոմպոնենտները՝ հումքի տեղաբաշխումը և նրա շրջակայքում արտադրության և բնակավայրի համար տերիտորիայի առկայությունը, նրա բնա-կլիմայական պայմանները, էներգետիկ ռեսուրսների, արտաքին տրանսպորտի, ջրամատակարարման, ջերմամատակարարման և այլ հնարավորությունները, ինչպես նաև բանվորական ուժի առկայության և բնակավայրը մատակարարելու հնարավորությունները։ Դրա համար անհրաժեշտ հետազոտական և նախագծման աշխատանքներն ավելի արդյունավետ կլինեն, եթե այդ կատարվի ոչ թե ամեն մի օբյեկտի համար առանձին, այլ մի ամբողջ տնտեսական շրջանի համար «շրջանային հատակագծման» միջոցով։

Շրջանային հատակագծումը հանդիսանում է պլանային տնտեսության կարևորագույն միջոցներից մեկը։ Նրա նպատակն է տալ տվյալ շրջանի արտադրողական բոլոր ուժերի զարգացման ընթացքը 25—50 տարվա ընթացքում, և շատ կարևոր է, որ առանձին բնակավայրերի հատակագծումը կատարվի շրջանային հատակագծումից հետո՝ նրա հիման վրա։ Հայաստանում կա այդպիսի աշխատանքի փորձ։ 1952 թվականին կատարվեց Զանգեզուրի տնտեսական շրջանի հատակագծումը «Հայպետնախագծում», որն առաջին փորձն էր Հայաստանում։ Սակայն Զանգեզուրի շրջանային հատակագծումը փաստորեն չնախորդեց շինարարական աշխատանքներին, այլ կատարվեց այն ժամանակ, երբ արտադրական օբյեկտները և նրանց հետ կապված բնակավայրերի տեղաբաշխումն արդեն հիմնականում կատարված էր ու զգալի ներդրումներ էին արված։ Այդ պայմաններում փոխել գոյություն ունեցող դրությունը, ըստ շրջանային հատակագծման նախագծի, շատ դժվար էր, և այդ պատճառով այդ աշխատանքը ռեալ արդյունքներ չտվեց։ Այժմ ամբողջ խնդիրը կայանում է նրանում, որ նոր ձեռնարկված «շրջանային հատակագծման» աշխատանքները կատարվեն այնքան արագ, որ նույն պատմությունը չկրկնվի։ Այս տարի նախատեսված է կատարել այն տնտեսական շրջանների հատակագծումը, որոնք յոթնամյակի ընթացքում առավել զարգացում պետք է ունենան։

Երևան-Սևան արդյունաբերական հանգույցի շրջանային հատակագիծը նախագծվում է «Հայարդնախագծում», իսկ Կիրովականի ու Ալավերդու շրջաններինը՝ «Հայպետբնակքաղնախագծում»։ Սակայն այդ աշխատանքներն ընթանում են դանդաղ և անհրաժեշտ մասշտաբ դեռ չունեն։

Անհրաժեշտ է, որ ռեսպուբլիկայի Ժողտնտխորհն ավելի շահագրգռվածություն ցուցաբերի այդ հարցում, Պետպլանը առաջադրանքներ և ընթացք տա շրջանային հատակագծման աշխատանքներին, իսկ Շինարարության և Ճարտարապետության պետական կոմիտեն գործնականորեն գլխավորի նոր

բնակավայրերի հատակագծման և, առաջին հերթին, շրջանային հատակագծման աշխատանքները։

Նոր բնակավայրերը պետք է տեղադրվեն այնտեղ, որտեղ բացի տնտեսական հիմնավորումից, իրոք հնարավոր կլինի ստեղծել բնակչության համար բոլոր անհրաժեշտ պայմանները, որովհետև նրանց ստեղծելն ինքնանպատակ չէ և այդ արվում է առաջին հերթին մարդկանց համար բարեկեցիկ, երջանիկ կյանք ստեղծելու համար։

Նոր արդյունաբերության տեղաբաշխումը պետք է կատարել մաքսիմալ կոոպերացման սկզբունքով, ստեղծելով իրար հետ կապ ունեցող ձեռնարկությունների խմբավորումներ, որի միջոցով զգալի տնտեսում կստացվի համատեղ սպասարկման շնորհիվ։ Բնակավայրերի շինարարությունը թանկ է ստացվում շատ մեծ և շատ փոքր բնակավայրերում. նպատակահարմար է կառուցել միջին մեծության բնակավայրեր, մինչև 30—50 հազար բնակիչով, այն հաշվով, որ այնտեղ հնարավոր լինի ունենալ կուլտուր-կենցաղային բոլոր հնարավորությունները և միևնույն ժամանակ այնքան չընդարձակել քաղաքը, որ աշխատանքի գնալու համար կարիք լինի օգտվել մասսայական տրանսպորտից։

Փորձը ցույց է տալիս, որ մեր ռեսպուբլիկայում չափազանց բարդ ռելյեֆի և նույնքան բարդ կլիմայական պայմաններում, երբ մենք ունենք համարյա կլիմայական բոլոր զոնաները, որոնք փոխվում են չնչին տարածության վրա միկրոռելյեֆի շնորհիվ, չափազանց դժվար է լինում բավարար հարմարություններով, անհրաժեշտ չափի հողամաս ընտրել, ինչպես, օրինակ, Քաջարանի և Ագարակի (Կարճևան) կոմբինատների դեպքում, Ալավերդում, Ղափանում և շատ ուրիշ տեղերում։ Անհրաժեշտ է շատ մանրազնին և քրտնաջան աշխատանք սխալներից խուսափելու համար, որովհետև քաղաքաշինարարական սխալները կարող են հարյուրավոր միլիոնների հասնող ավելորդ ծախսերի պատճառ դառնալ, կամ անելանելի դրություն ստեղծել։

Քաղաքաշինարարական մյուս մեծ պրոբլեմը գոյություն ունեցող մեր քաղաքների ու ավանների զարգացումն ու վերակառուցումն է յոթնամյակի ընթացքում։ Հարց է դրված՝ արտադրության բնագավառում արտադրանքն ավելացնել ոչ միայն նոր, այլ հիմնականում գոյություն ունեցող ձեռնարկությունների հզորությունն ավելացնելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, ավտոմատիկայի և ռացիոնալիզացիայի միջոցով։ Դրա հետ միասին յոթնամյակի հիմնական պրոբլեմ է հանդիսանալու այդ բնակավայրերի բարեկարգումը՝ ջրամատակարարման, կոյուղու և նոր սկսվող գազիֆիկացիայի աշխատանքներն ու ամենագլխավորը՝ բնակարանային մեծ շինարարությունը, բնակարանային զգալի պակասը լրացնելու համար։ Իր տեսակաբար կշռով այդ տեսակետից գլխավոր տեղը գրավում է մեր մայրաքաղաք Երևանը։ Երևանի բնակչության թիվը, որն արդեն կես միլիոնից անց է, պետք է ստաբիլիզացիայի ենթարկել, և նոր արդյունաբերական ու այլ ձեռնարկությունների կառուցումը, որոնք բնակչությանն աճ են տալու, պետք է համարել ոչ նպատակահարմար։ Բնակարանային շինարարությունը յոթնամյակում կատարվելու է հիմնականում քաղաքի մերձակայքում եղած ազատ տարածությունների վրա (Շահումյանի շրջան, Քանաքեռ, Ավան), սակայն չպետք է դադարեցնել նաև քաղաքի մեջ նոր բնակարանների կառուցումն ի հաշիվ հին, ոչ լիարժեք տների վերացման։



Բնակարանային շինարարությունը Երևանում վերջին տարիների ընթացքում զգալի հաջողություններ է ունեցել մասշտաբի, տեմպերի և քանակի տեսակետից։ Սակայն բարեկարգման աշխատանքները (մանավանդ ջրամատակարարման, կոյուղու և ճանապարհաշինարարության) զգալի չափով ետ են մնում. ժամանակն է, որ այդ հարցում նույնպես բեկում կատարվի։ Ինչ վերաբերում է Երևանի շրջակայքում այսպես կոչված «քաղաք արբանյակների» կառուցմանը, այն նպատակով, որ այնտեղ բնակվողներն աշխատանք ունենան Երևանում (այդպիսիները կոչվում են «քաղաք ննջարաններ»), ապա դա պետք է համարել մեր պայմանների համար ոչ նպատակահարմար, որովհետև այդ դեպքում անհրաժեշտ է ունենալ շատ զարգացած տրանսպորտ, որ ունենում են միայն շատ մեծ քաղաքները, ինչպիսիք են՝ Մոսկվան, Լենինգրադը։ Փորձը ցույց է տվել, որ ավելի նպատակահարմար է կառուցել քաղաքարբանյակներ սեփական արդյունաբերությամբ, պահպանելով կապը «մայր քաղաքի» հետ միայն որպես ադմինիստրատիվ-կուլտուրական կենտրոնի։

Լենինականում, Կիրովականում, Ալավերդում, Ղափանում և այլ քաղաքներում ու շրջկենտրոններում յոթնամյակի ընթացքում արդյունաբերական շինարարության հետ մեկտեղ, հիմնական խնդիր պետք է հանդիսանա բնակարանային շինարարությունը մեծ մասսիվներով, կենտրոնացված ազատ տերիտորիաներում, կոմպլեքսային ձևով և բոլոր տեսակի բարեկարգման աշխատանքների ծավալումը։ Հետագա զարգացման համար բոլոր դեպքերում պետք է ելնել տնտեսական նպատակահարմարությունից, տերիտորիալ և այլ հնարավորություններից և ոչ թե անպայման քաղաքը մեծացնելու ցանկությունից, որին հաճախ ձգտում են տեղի ղեկավար աշխատողները, քաղաքի աճը բոլոր դեպքերում համարելով դրական երևույթ։ Այսպես, օրինակ, Լենինականի գլխավոր հատակագիծը կազմելու աշխատանքները երկար ժամանակ ձգձգվում էին այն պատճառով, որ տեղական ղեկավարությունը հարց էր դնում քաղաքի բնակչության պերսպեկտիվ թիվը նախատեսնել ավելի, քան այդ ստացվում էր ըստ Պետպլանի տվյալների։

Առանձնապես դժվարին տերիտորիալ պայմաններում է գտնվում Ալավերդին, որի արդյունաբերության հզորությունը յոթնամյակում ավելանալու է համարյա հինգ անգամ։ Դեբետի ձորում կառուցման համար հարմար տերիտորիաներն արդեն սպառված են և միակ ելքը մնացել է հետագա շինարարությունը Սանահնի սարահարթը բարձրացնելը, որտեղ գյուղի հետ միասին, մոտ 170 հեկտար տարածություն կա։ Անհրաժեշտ է միանգամից կատարել խոշոր ներդրում սարահարթի վրա շինարարության պայմաններ ստեղծելու համար (ջուր, ճանապարհ և անպայման շինանյութ ու մարդկանց սարահարթը բարձրացնելու որևէ մեխանիզմ, ըստ երևույթին ճոպանային ճանապարհ)։ Ձորում գոյություն ունեցող մասի համար հիմնական նպատակ պետք է հանդիսանա բարեկարգման և կուլտուր-կենցաղային սպասարկման օբյեկտների շինարարության ծավալումը, ամենից առաջ՝ ջրմուղի երկրորդ հերթի և կոյուղու կառուցումը։

Նման պայմաններում է գտնվում նաև Ղափանը։ Այստեղ ևս տերիտորիալ և բարեկարգման մեծ անհարմարություններ են զգացվում և անհրաժեշտ է հետագա շինարարությունը տեղափոխել նոր, ազատ տերիտորիա, համաձայն գլխավոր հատակագծի, որտեղ անհամեմատ ավելի հեշտ կլինեն շինարարական և բարեկարգման աշխատանքները։

Մեծ ուշադրություն են պահանջում և մեր կուրորտային վայրերը՝ Դիլիջանը, Արզնին, Ջերմուկը, Հանքավանը և մյուսները, որոնց թիվն օրըստօրե աճում է։ Մեր հայրենի բնությունը հարուստ է բուժիչ ջրերով և կլիմայական կուրորտներով, սակայն այստեղ չպետք է ցրել միջոցները՝ այլ հիմնականում պետք է բարեկարգել արդեն գործող կուրորտները։ Այդ տեսակետից առանձնապես հետ է մնացել Դիլիջանը և պետք է նրա վրա կենտրոնացնել ուշադրությունը, ինչպես արվեց Ջերմուկի նկատմամբ։

Յոթնամյակում հսկայական ծավալի քաղաքաշինարարական աշխատանք կա կատարելու ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների հատակագծման ասպարեզում։ Գյուղի և քաղաքի տարբերությունների վերացման պրոբլեմը հնարավոր է լուծել սոցիալիստական հասարակարգում, երբ մեր գյուղի տնտեսության հիմքն է դարձել համայնական սեփականությունը։ Այստեղ խնդիրը կայանում է ոչ թե նրանում, որ գյուղը նմանվի քաղաքին, ինչպես կարծում են ոմանք, այլ գյուղը պետք է պահպանի իր յուրահատուկ կողմերը, քաղաքից ընդօրինակելով բարեկարգման և կուլտուր-կենցաղային սպասարկման գծերը, այն էլ գյուղի համար յուրահատուկ ձևերով, խուսափելով այնպիսի ընդօրինակումներից, ինչպիսիք են չուգունե ցանկապատները և էլեկտրալուսավորության սյուները, բետոնե քանդակները և վազաները (մեծ մասամբ անճաշակ), որոնցով սիրում են զարդարել այնպիսի անբարեկարգ տեղեր, որտեղ դրա փոխարեն անհրաժեշտ էր անցկացնել ջրմուղ, ճանապարհ, մայթ և այլ ավելի անհրաժեշտ բարեկարգում։

Գյուղերի հատակագծման գործը (որով առաջ զբաղվում էին Գյուղմինիստրությունը և Ճարտարապետության վարչությունը), վերջին տարիների ընթացքում մատնված էր անուշադրության, մինչդեռ այդ ժամանակամիջոցում մեր բոլոր գյուղերում հսկայական շինարարություն է կատարվել առանց հատակագծման։ Այստեղ աշխատանքն այնպիսի մեծ ծավալ ունի, որ հարկ կա թերևս մի հատուկ նախագծային միավոր ստեղծել «Հայպետընակքաղնախագծում»։

Յոթնամյակի այս հոյակապ ծրագրի իրականացման հաջողությունն ամենամեծ չափով կախված է մեր ռեսպուբլիկայի շինարարական և նախագծային կազմակերպությունների աշխատանքից, որոնք լուրջ թերություններ ունեն և պետք է վերակառուցվեն։ Պետք է ավարտել շինարարական կազմակերպությունների խոշորացումը։ Պետք է ավարտել նաև միասնական պատվիրատու ստեղծելու խնդիրը՝ տեղական տնտեսության մինիստրության սիստեմում, որպեսզի ամեն մի բնակավայրում շինարարության և բարեկարգման պատվիրատուն մեկը լինի, և չլինեն գերատեսչական տրամադրություններ, որի պատճառով ցրատվում են միջոցները, իսկ երբեմն տարբեր պատվիրատուներ խանգարում են իրար։

Շինարարության հիմնական խնդիրն է հանդիսանում ինդուստրիալ մեթոդների արմատավորումը։ Պետք է վճռական բեկում կատարել այդ հարցում, հակառակ դեպքում անհնարին կլինի իրագործել այն հսկայական ծրագիրը, որ ունի յոթնամյակը։

Փորձը ցույց է տալիս, որ նախագծման ընթացքում բազմաթիվ ավելորդությունների վերացումը դեռ չի տալիս այնպիսի զգալի խնայողություն, ինչպիսին հնարավոր կլիներ ստանալ շինարարությունը խնայողաբար կատարելու դեպքում՝ մեխանիզմները, բանուժը, շինանյութերը էֆեկտիվ գործադրելու



դեպքում։ Չնայած զգալի բեկմանը, չի կարելի բավարար համարել նաև նախագծման աշխատանքների ընթացքը, հատկապես տիպային բնակելի ու հասարակական շենքերի նախագծման և բնակավայրերի հատակագծման բնագավառներում։

Նախագծման ասպարեզում ամենակարևոր խնդիրը հարմար, գեղեցիկ ու էկոնոմիկ տիպային բնակելի և հասարակական շենքերի նախագծումն է, որը մեր ամբողջ ճարտարապետական հասարակայնության եռանդուն ջանքերի արդյունքը պետք է հանդիսանա։ Մյուս կողմից, տիպային նախագծերի լայն կիրառման պայմաններում է՛լ ավելի մեծ կարևորություն են ստանում քաղաքաշինարարական պրոբլեմները։

Օգտագործելով տիպային նախագծեր, ճարտարապետն այժմ հիմնականում զբաղվում է նրանց ընտրությամբ և տվյալ տեղանքին հարմարեցնելու խնդրով, ելնելով կլիմայական պայմաններից, ռելյեֆից և քաղաքաշինարարական այլ սկզբունքներից։ Չնայած նրան, որ մեր ռեսպուբլիկայի բոլոր քաղաքները և շրջկենտրոններն ունեն հաստատված գլխավոր հատակագծեր, այնուամենայնիվ նրանց շինարարության և բարեկարգման աշխատանքների կարգավորումը Շինարարության և ճարտարապետության կոմիտեի կողմից մեծ դժվարությունների է հանդիպում, բնակավայրերում համապատասխան ապարատի և կադրերի բացակայության պատճառով։ Մինչդեռ հատակագծման աշխատանքների հաջող իրականացումը պահանջում է մի կողմից՝ նախագծերի ճիշտ կիրառման դիսցիպլինա, մյուս կողմից՝ մեծ ճկունություն, հաստատված հատակագծերում կյանքից բխող անհրաժեշտ կորեկտիվներ մտցնելու համար։

Բնակելի շինարարության ասպարեզում վերջին ժամանակներն առաջադրվել են քաղաքաշինարարական նոր սկզբունքներ, որոնք հաճախ հակասում են մինչ այժմ կազմված քաղաքների և այլ բնակավայրերի հատակագծային նախագծերին, որն ավելի է դժվարացնում այդ գործը։ Այսպես, օրինակ, նախկինում պահանջվում էր բնակելի տների առաջին հարկերում տեղադրել խանութներ, մանկական և այլ կուլտուր-կենցաղային օբյեկտներ։ Այժմ այդ օբյեկտները նախագծվում են առանձին շենքերում։ Եվ եթե առաջին դեպքում բնակելի շենքերը դրվում էին կարմիր գծի վրա և փողոցին զուգահեռ, ապա նոր պայմաններում անհրաժեշտ է շենքերը դնել կարմիր գծից հեռու, դեպի կվարտալի խորքը, փողոցի փոշուց ու աղմուկից առաջին հարկի բնակիչներին ազատելու համար, իսկ շենքի ուղղությունն ընտրել, ելնելով ոչ թե փողոցի դիրքից, այլ ռելյեֆի և կլիմայական պայմաններից՝ շինարարության և բնակիչների համար առավել հարմար և բարեկեցիկ պայմաններ ստեղծելու համար։

Հագեցված լինելով ժամանակակից ամենաբարձր տեխնիկայով, քաղաքը միևնույն ժամանակ չպետք է զրկվի այն առավելություններից, որն ունի գյուղը՝ մաքուր օդ, գեղեցիկ բնություն, որոնք մարդու համար կենսական մեծ նշանակություն ունեն։

Վեր է կասկածից, որ ռեսպուբլիկայի ճարտարապետները հաղթահարելով քաղաքաշինության ասպարեզում անցյալում տեղ գտած թերություններն ու սխալները, պատվով կլուծեն ՍՄԿԿ XXI համագումարի կողմից նրանց առջև դրված պատմական խնդիրները։

# ՆՈՐ ՏԵԽՆԻԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՈՒՄ

Զ. ՍԻՄՈՆՅԱՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումը լուրջ խնդիրներ է դնում ժողտնտխորհների ու արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողների և մանավանդ մեքենաշինարարների առջև։

Արդյունաբերական արտադրության և շինարարության գործում մեքենաշինարարների հատուկ դերը բխում է նրանից, որ նրանք, լինելով արդյունաբերության բոլոր ճյուղերին ու շինարարությանը հիմնական սարքավորումներ ու մեխանիզմներ մատակարարողը, պետք է կառուցվածքով ու ֆիզիկապես հնացածների փոխարեն մատակարարեն ժամանակակից բարձր արտադրողականությամբ մեքենաներ ու մեխանիզմներ։

Բնական է, որ ժողովրդական տնտեսության մեջ տեխնիկական պրոգրեսը, որն աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացման, հետևապես և յոթնամյա պլանի հաջող կատարման հիմքն է հանդիսանում՝ ուղղակիորեն կախված է արդյունաբերությունն ու շինարարությունը մեքենաներով ու մեխանիզմներով հագեցնելուց, որոնք կապահովեն արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը։

Այս խնդիրների հաջող իրականացման համար մեքենաշինական արդյունաբերությունն իր արտադրության ներսում պետք է իրականացնի մի շարք միջոցառումներ, որոնք բխում են ՍՄԿՊ ԿԿ Հունիսյան պլենումի որոշումից։

Հաշվի առնելով Հայկական ՍՍՌ մեքենաշինական արդյունաբերության յոթնամյա պլանով նախատեսած հաստոցաշինության և այլ մեքենաների լայն զարգացման անհրաժեշտությունը, մենք պետք է մոտակա ժամանակամիջոցում արագորեն լուծենք հետևյալ խնդիրները. անընդհատ կատարելագործել թողարկվող արտադրանքը, անցնել նոր, ժամանակակից մեքենաների ու մեխանիզմների արտադրության, մասնագիտացնել արտադրությունը և ընդարձակել արտադրության կոոպերացումը։

Ռեսպուբլիկայի գործող մեքենաշինական ձեռնարկությունների առջև խնդիր է դրված՝ արդեն իսկ այս տարվանից սկսել թողարկվող այն մեքենաների փոխարինումն ու կատարելագործումը, որոնք իրենց կառուցվածքով ու շահագործական տվյալներով չեն համապատասխանում ժամանակակից տեխնիկայի պահանջներին։ Այս խնդիրն առանձնապես սուր է դրված Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի առջև, որը պետք է կատարելագործի իր թողարկած 1Л 61 մոդելի խառատահաստոցները, Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանի առջև, որը պետք է փոխի 2135 մոդելի ուղղահայաց գայլիկոնիչ հաստոցը. Լենինականի դարբնա-մամլիչ (նախկին մեքենայական) գործարանի առջև, որը պետք է փոխի 5 և 25 տոննանոց հին կոնստրուկցիայի մամլիչները և Երևանի կոմպրեսորային գործարանի առջև, որը պետք է կատարելագործի ВУ 3/8 կոմպրեսորները և այլն։



Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի թողարկած 1Л 61 մոդելի խառատահաստոցները կոնստրուկցիոն մի շարք թերություններ ունեն։

Այս տարի գործարանն իր ուժերով մի շարք կոնստրուկցիոն փոփոխություններ է մտցրել այդ հաստոցի առանձին հանգույցների մեջ, պատրաստել է մոդեռնացված հաստոցի փորձնական նմուշ և փորձարկումից հետո 1960 թվականին կսկսի մոդեռնացված 1Б 61М և 1Л 61М մարկայի հաստոցների սերիական արտադրությունը։

Գործարանը ՀԿՏԲ-ի (Հայաստանի ժողտնտխորհի մեքենաշինության և հաստոցաշինության վարչության կից հատուկ կոնստրուկտորա-տեխնոլոգիական բյուրո) հետ միասին մշակելու է В 61 հաստոցի կոնստրուկցիան, որպեսզի 1960 թվականից ոչ ուշ նրանով փոխարինվի 1Л 61 հաստոցը, համարեցնելով այն շրջիկ նորոգման արհեստանոցների պահանջներին։ Հիշյալ հաստոցի կոնստրուկցիայի մշակության տեխնիկական պայմանները կազմված են շրջիկ արհեստանոցներ արտադրող գործարանի գլխավոր կոնստրուկտորի հետ և այժմ գործարանի ու ՀԿՏԲ-ի խնդիրն է արագացնել այդ հաստոցների նախագծումն ու արտադրության յուրացումը։

2135 մոդելի ուղղահայաց գայլիկոնիչ հաստոցները, որ ներկայումս թողարկում է Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանը, իրավացիորեն համարվում են հնացած և անպայման պետք է հանվեն արտադրությունից։ Այս տիպի հաստոցների արտադրությունն այդ գործարանում ընդհանրապես աննպատակահարմար է, որովհետև այդ տիպի և ավելի լավ կոնստրուկցիայի 2А 135 մոդելի հաստոցներ շատ ավելի մեծ թվով արտադրվում են Ստերլիտամակի Լենինի անվան գործարանում։

Վիտեբսկի հաստոցաշինական գործարանի արտադրած 2А 592 մոդելի շառավիղային-գայլիկոնիչ հաստոցի բազայի վրա ՀԿՏԲ-ի ուժերով մշակվել է ըստ էության նոր 252 հաստոցի կոնստրուկցիան։ Ստորև տրվում է այդ երկու հաստոցների բնութագրությունը.

| | Վիտեբսկի 2А592 մոդելը | Հոկտեմբերյանի 252 մոդելը |
|---|---|---|
| Արագությունների թիվը | 4 աստիճան | 8 աստիճան |
| Պտույտների թվի դիապազոնը | 175—980 պտ/րոպե | 68—1600 պտ/րոպե |
| Իլիկի մատուցումը | ձեռքով | մեխանիկական 0,1—0,15—0,20 մմ/պտ. |
| Թևի տեղափոխումն ըստ սյունի | ձեռքով | մեխանիկական |
| Գայլիկոնման տրամագիծը | մինչև 25 մմ | մինչև 25 մմ |
| Մորզեի կոնուսը | № 2 | № 3 |

Այստեղից երևում է, որ նոր կոնստրուկցիան իր արտադրողականությամբ և մեքենայացման աստիճանով առավել է հնից, որի փորձնական նմուշները պատրաստվել են Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանում։ Հաստո-

ցի նոր մոդելը փորձարկվել է և որոշ դիտողություններով ընդունվել արտադրության համար։

Ներկայումս գործարանին են հանձնված հանձնաժողովի դիտողություններին համապատասխան ուղղումներով գծագրությունները և գործարանի կոլեկտիվի խնդիրն է՝ կարճ ժամանակամիջոցում այն պատրաստել արտադրության և այս տարի թողարկել հաստոցների առաջին խումբը, իսկ 1960 թվականի հունվարից լիովին անցնել միայն վերոհիշյալ հաստոցների արտադրությանը՝ դադարեցնելով 2135 մոդելի հաստոցների թողարկումը։

Պետք է ասել, որ Հոկտեմբերյանի գործարանը կարիք է զգում մի շարք ուրիշ գործարանների օգնության։ Մասնավորապես Լուսավանի Ներտաշող հաստոցի գործարանը պետք է կազմակերպի նոր հաստոցի երեք բարդ կորպուսային դետալների արտադրությունը։ Գործարանն առանձնապես կարիք է զգում վերակառուցման, որի նախագծումն ավարտվում է, և ժողտնտխորհի խնդիրն է ամենակարճ ժամանակամիջոցում ապահովել վերակառուցման իրականացումը։

Հաշվի առնելով, որ Միության մեքենաշինական արդյունաբերության մեջ դարբնա-մամլիչ սարքավորման տեսակարար կշիռը դեռևս ցածր է, որի հետևանքով մեծ քանակությամբ մետաղ վերածվում է տաշեղի, կարևոր նշանակություն է ստանում Լենինականի դարբնա-մամլիչ գործարանի սարքավորման զարգացման հարցը և հատկապես ներկայումս գործարանում արտադրվող՝ 5 և 25 տոննանոց հնացած կոնստրուկցիայի մամլիչների փոխարինման հարցը։ Գործարանն արդեն ձեռնամուխ է եղել պատրաստելու ավելի արտադրողական և կատարելագործված 25 տոննանոց մամլիչների փորձնական նմուշներ։ Նրա խնդիրն է՝ այս տարվա վերջում անցնել 6,3 տոննանոց մամլիչների սերիական արտադրությանը և 1960 թվականի երկրորդ եռամսյակում՝ 25 տոննանոց մամլիչների թողարկմանը։

Միաժամանակ մշակվում են նորագույն կոնստրուկցիայի 40 տոննանոց մամլիչի գծագրություններ, որի փորձնական նմուշները պետք է պատրաստվեն 1960 թվականին։ Բայց այս գործարանը վերակառուցման կարիք է զգում և ժողտնտխորհի խնդիրն է արագացնել վերակառուցումը, որը գործարանի որակյալ ու համերաշխ կոլեկտիվի համար հնարավորություն կստեղծի ավելի հաջող լուծել առաջադրած բարդ խնդիրները։

Երևանի կոմպրեսորների գործարանն արդեն մի քանի տարի է, ինչ բաց է թողնում ВУ+$^{3}/_{8}$ կոմպրեսորներ ջրային սառեցումով։ Ժողովրդական տնտեսության շահերը պահանջում են նաև նույնպիսի ճնշման ու արտադրողականությամբ ВУ—$^{3}/_{8}$В կոմպրեսորների մատակարարում, միայն թե օդային սառեցումով։

Միութենական Քիմիական արդյունաբերության մեքենաշինության գիտահետազոտական ինստիտուտի և գործարանի պատրաստած այդ կոմպրեսորների փորձնական նմուշների փորձարկումներից հետո, գործարանի կոլեկտիվի խնդիրն է՝ արագորեն անցնել սերիական արտադրության։

Միաժամանակ գործարանը պետք է յուրացնի ավտոմատ կարգավորիչներով այդ երկու տիպի կոմպրեսորների թողարկումը։ Այս գործում մեծ օգնություն պետք է ցույց տա ռեսպուբլիկայի էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը՝ պատրաստելով նույն ինստիտուտի մշակած հատուկ ավտոմատ սարքերը։



Այս բնագավառում լուրջ խնդիրներ են կանգնած նաև մեր նոր հաստոցաշինական գործարանների առջև։

Պետք է ասել, որ նոր գործարաններից մի քանիսը լուծում են 1959 թվականին իրենց առջև դրված խնդիրները։ Ֆրեզային հաստոցների Երևանի գործարանն արդեն բաց է թողել 675 մոդելի ֆրեզային հաստոցների առաջին տասնյակը, ճշգրիտ հաստոցների Կիրովականի գործարանը բաց է թողել С 155 մոդելի սեղանի գայլիկոնիչ հաստոցների առաջին խումբը՝ թվով վեց հատ։ Բայց սա բացահայտորեն բավարար չէ։ Անհրաժեշտ է, որ այդ գործարանները 1959 թվականին լիովին ապահովեն հիշյալ հաստոցների արտադրությունը ըստ մշակած տեխնոլոգիական պրոցեսի, առանձնապես ուշադրություն դարձնելով հատուկ հարմարանքների օգնությամբ կորպուսային դետալների մշակության (մի բան, որ խիստ կբարձրացնի արտադրողականությունն ու մշակության ճշգրտությունը), ջերմային մշակության և հավաքման օպերացիաների մեքենայացման վրա։

Կարևոր նշանակություն ունի վերոհիշյալ երկու գործարանների կորպուսային ձուլվածքի մատակարարման կազմակերպումը, որովհետև նրանք չունեն և ըստ պլանի չպետք է ունենան ձուլման ցեխեր և մինչև Լուսավանի գործիքային գործարանի ձուլման կորպուսի գործարկումը, վերոհիշյալ գործարաններին ձուլվածքով ապահովելու են համապատասխանորեն Երևանի կոմպրեսորների և Լենինականի հղկման հաստոցների գործարանները։

Մեքենաշինական և հաստոցաշինական վարչության և հիշյալ գործարանների խնդիրն է՝ ուժեղ թափով շարունակել հաստոցային ձուլման յուրացումը այն հաշվով, որ ապահովվի որակյալ ձուլման լրիվ կոմպլեկտը և 1960 թվականի ծրագրի իրականացումը։

Լենինականի հղկիչ հաստոցների գործարանը պետք է վերջ դնի իր հետամնացությանը 312 մոդելի հաստոցների արտադրման և մասնավորապես իր սեփական արտադրության համար ձուլում յուրացնելու գործում և սկսի զբաղվել առնվազն 1960 թվականի վերջում ЗА 12 մոդելի ժամանակակից կոնստրուկցիայի հղկիչ հաստոցի արտադրմանն անցնելու հարցով, որի փորձնական մոդելներն արդեն պատրաստել է հղկիչ հաստոցների Լենինգրադի Իլյիչի անվան գործարանը։

ՍՍՌՄ Պետպլանի մեքենաշինական բաժինը, ԷՆԻԻՄՍ-ը և ռեսպուբլիկայի ժողտնտխորհի մեքենաշինության ու հաստոցաշինության վարչությունը մշակել են 1959—1965 թվականներին ռեսպուբլիկայի բոլոր հաստոցաշինական գործարաններում մետաղահատ հաստոցների արտադրության ճշգրտած տիպաժը։

Մեքենաշինության ու հաստոցաշինության վարչության խնդիրն է՝ ապահովել միության ու ռեսպուբլիկայի արդյունաբերությունը նորագույն կոնստրուկցիայի մետաղահատ հաստոցներով հագեցնելու այս ընդարձակ ծրագրի իրականացումը։

Այս դժվարին, բայց անհրաժեշտ հարցում կարևոր դեր ունի կատարելու ժողտնտխորհի նյութա-տեխնիկական մատակարարման գլխավոր վարչությունը, որի ղեկավարները դեռ չեն ըմբռնել, որ մեր գործարաններում յուրացվող ամեն մի նոր մեքենա կամ հաստոց պահանջում է ժամանակին մատակարարել խստորեն սպեցիֆիկացված նյութեր և մի քանի տասնյակ տեսակի կոմպլեկտավորող իրեր։

Ռեսպուբլիկայի բոլոր մեքենաշինական գործարաններն իրավացիորեն գանգատվում են, որ արտադրության ապահովումը անհրաժեշտ հումքով, գործիքներով ու կոմպլեկտավորող իրերով՝ անթույլատրելի վիճակի մեջ է գտնվում։

Գաղտնիք չէ, որ Հղկիչ հաստոցների Լենինականի գործարանն ըստ էության ոչ մի հաստոց բաց չի թողել գլխավորապես կոմպլեկտավորող իրերի բացակայության պատճառով, որ հաստոցաշինական բոլոր գործարանները լուրջ դժվարություններ են կրում ստանդարտ կտրիչ գործիքի, ֆրեզների, գայլիկոնների ձգիչների անկոմպլեկտության պատճառով։ Երևանի ավտոպահեստային մասերի և գործիքային գործարանների որակյալ կոլեկտիվները մինչև այժմ տուժում են անհրաժեշտ ասորտիմենտի մետաղով ժամանակին չմատակարարվելու պատճառով։

Ժամանակն է, որ նյութա-տեխնիկական մատակարարման ղեկավարներն ու աշխատողները խորապես զգան, որ իրենք ոչ թե կողմնակի դիտող են, այլ տեխնիկայի առաջընթացի ակտիվ գործիչներ։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի կողմից արդյունաբերության առջև դրած խնդիրներից մեկն էլ՝ մեքենաշինության ու հաստոցաշինության ճյուղի մասնագիտացման ու կոոպերացման հաջող զարգացումն է։

Վ. Ի. Լենինը նշել է. «Որպեսզի, օրինակ, ամբողջ պրոդուկտի մի որևէ մասնիկը պատրաստելու համար մարդկային աշխատանքի արտադրողականությունը բարձրանա, անհրաժեշտ է, որ այդ մասնիկի արտադրությունը մասնագիտացվի, դառնա հատուկ արտադրություն, որը գործ ունի մասսայական պրոդուկտի հետ և այդ պատճառով թույլ է տալիս (և առաջ է բերում) մեքենաների կիրառում և այլն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 1, էջ 111)։

Մեծ Լենինի այս ցուցումը ամենալայն իմաստով կիրառելի է նաև ռեսպուբլիկայի մեքենաշինության և հաստոցաշինության զարգացման նկատմամբ։ Ռեսպուբլիկայում մեքենաշինության արտադրության մասնագիտացումը նախատեսվել և կիրառվում է երկու հիմնական ուղղություններով՝ հիմնական աշխատանքի՝ մետաղահատ հաստոցների, մամլիչների, կոմպրեսորների, պոմպերի, աշտարակային կռունկների, ավտոմոբիլային պահեստի մասերի արտադրության մասնագիտացում և օժանդակ արտադրանքի՝ ձուլվածքի, կոփվածքի, շտամպների, հարմարանքների, գործիքների և այլնի արտադրության մասնագիտացում։

Այս խնդրի իրականացումը նախատեսված է և ընթանում է երկու ուղիներով՝ մետաղահատ հաստոցների արտադրության նոր մասնագիտացված գործարանների ստեղծում և գործող գործարանների վերակառուցում ու մասնագիտացում։

Նույնատիպ պարագաների արտադրության կենտրոնացումը հնարավորություն է տալիս լիակատար չափով կիրառելու դետալների արտադրման հարահոս ու խմբային մեթոդները, մեքենայացնելու պրոցեսները, օգտագործելու բարձր արտադրողական կահավորում ու սարքավորում։

Երկու օրինակից ակնառու կերպով երևում է այս միջոցառումների կիրառման տնտեսական արդյունավետությունն ամբողջ արտադրության մեջ։

Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը վերջին տարիներս մասնագիտանալով միմիայն խառատահաստոցների արտադրության մեջ և դրա հետևանքով հնարավորություն ստեղծելով ավելի լայնորեն մեքե-



նայացնելու արտադրական պրոցեսները, հասել է այն բանին, որ միևնույն արտադրական հրապարակից 1957 թվականի համեմատությամբ հաստոցներ բաց են թողնվել 1958 թվականին 160 տոկոսով, իսկ 1959 թվականին՝ 200 տոկոսով, միաժամանակ ամեն մի հաստոցի ինքնարժեքն իջեցնելով 35—40 տոկոսով։

Լենինականի նախկին մեխանիկական գործարանը, որ այժմ դարբնամամլիչ սարքավորման գործարան է, մինչև 1958 թվականը բաց էր թողնում զանազան արտադրանքներ, այդ թվում՝ քարամշակման հաստոցներ, զանազան մեխանիզմներ, մահճակալներ, կատարում էր այլ ձուլման ու մեխանիկական աշխատանքներ և տալիս էր քիչ քանակությամբ մամլիչներ։

1958 թվականի սկզբից գործարանը մասնագիտացել է որպես էքսցենտրիկ մամլիչներ արտադրող ձեռնարկություն, որի հետևանքով բարելավվում են գործարանի տնտեսական ցուցանիշները և մենք տեսնում ենք հետևյալ պատկերը.

| | 1956 թ. | 1958 թ. | 1959 թ. |
|---|---|---|---|
| Համախառն արտադրանքը տոկոսներով այդ թվում՝ | 100 | 100 | 100 |
| Մամլիչների ընդհանուր ծավալի մեջ | — | 50.5 | 76,5 |
| Այլ աշխատանքներ | 100 | 49,5 | 23,5 |
| Մեկ բանվորի արտադրողականությունը մեկ տարում հազար ռուբլիներով | 35,5 | 44,2 | 50,0 |
| 1 ռուբլու ապրանքային արտադրանքի ծախսերը | 71,1 | 65.7 | 59,0 |
| Բացարձակ օգուտը միլիոն ռուբլիներով | 2.05 | 4,03 | 4,84 |

Տարակույս չկա, որ երբ 1960—61 թվականներին գործարանը լրիվին կանցնի զանազան մոդելների մամլիչների արտադրության և ընթացիկ տարվա վերջին՝ ժամանակակից կոնստրուկցիայի մամլիչների արտադրության, գործարանի տնտեսական ցուցանիշներն ավելի ևս կլավանան։

Նախագծային աշխատանքները և նոր գործարանների տեխնոլոգիական պրոցեսների մշակումն ու բանող գործարանների վերակառուցումը պահանջում են կազմակերպել և ընդարձակել գործարաններում գոյություն ունեցող կոնստրուկտորա-տեխնոլոգիական խմբերը, ինչպես նաև կազմակերպել հաստոցային, չափիչ և այլ լաբորատորիաների հագեցումը ժամանակակից տեխնիկայով։

Ռեսպուբլիկայում մեքենաշինության և մանավանդ հաստոցաշինության լայն զարգացումը պահանջում է մասնագիտացված գործարաններ ստեղծել հաստոցների հատուկ հանգույցների, ձուլվածքի, կոփվածքի, նորմալների, գործիքային սարքավորման և այլ մասերի կենտրոնացված արտադրության համար։

Այս նպատակով մի շարք գծերով որոշումներ են ընդունված, որոնք արդեն իրականացվում են։ Լուսավանում կառուցվում է չուգունի, գունավոր ու պողպատի ձուլվածքի կենտրոնացված արտադրության հզոր գործարան, այն հաշվով, որ նա բավարարի Երևանի գործարանների և հենց Լուսավանի պահանջները։ Նախատեսված է այդ գործարանում արտադրել նաև բարդ գործիքներ և հատուկ կոփվածք։

Հղկիչ հաստոցների Լենինականի գործարանում հատուկ ձուլման կորպուս է կառուցվելու Լենինականի, Հոկտեմբերյանի և Կիրովականի գործարանների պահանջները բավարարելու համար։

Այսպիսով, մեքենաշինության և մանավանդ հաստոցաշինության կարիքների համար Հայաստանում ստեղծվելու են ձուլվածքի մեքենայացված արտադրության երկու կենտրոն՝ փոխանակ բազմաթիվ մանր, կիսատնայնագործական ձուլման արտադրամասերի։

Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի մեքենաշինության ու հաստոցաշինության վարչությունը միջոցներ է ձեռք առել մինչև վերոհիշյալ խոշոր ձուլման գործարանների կառուցումն ու գործարկումը, ընդարձակել ու մեքենայացնել մի շարք գործող ձուլման ցեխեր, նպատակ ունենալով ձուլվածքի արդեն իսկ գոյություն ունեցող պակասը լրացնել։

Ջերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի ձուլման ցեխի վերակառուցումը հնարավորություն կտա ընդարձակել ցեխի հզորությունը՝ տարեկան ձուլվածքի քանակը ներկայիս 1800—2000 տոննայից հասցնելով 5000 տոննայի և, որ գլխավորն է, յուրաքանչյուր տոննա պիտանի ձուլվածքի աշխատատարությունը իջեցնելով մինչև 25,5 մարդ/ժամ, այնինչ ներկայումս Ջերժինսկու անվան գործարանում ձուլվածքի մեկ տոննայի աշխատատարությունը հասնում է 146 մարդ/ժամի, կոմպրեսորների գործարանում՝ 198 մարդ/ժամի և «Հիդրոպոմպ» գործարանում՝ 167 մարդ/ժամի։

Գործարանի ցեխի վերակառուցման շինարարական աշխատանքներն անթույլատրելի չափով դանդաղ են ընթանում և Ժողտնտխորհի շինարարական վարչության խնդիրն է՝ արագացնել այդ աշխատանքները, որպեսզի գործարանին հնարավորություն տրվի ավելացնել ձուլվածքի թողարկումը և ընդարձակել ամբողջ գործարանի հզորությունը։

«Հիդրոպրիվոդ» գործարանի ձուլման ցեխի մասնակի վերակառուցումը հնարավորություն է տվել յուրացնել հիդրոպանելի կորպուսի ձուլումը հողե կաղապարում։ Այժմ գործարանի առջև խնդիր է ծառացած՝ յուրացնել կորպուսի ձուլումը կարուսելա-կոկիլային ագրեգատի վրա, որն արդեն պատրաստվել և մոնտաժվել է ցեխում։

Բնորոշ են հիդրոպանելի կորպուսի ձուլման երկու եղանակների համեմատական տվյալները.

| Ձուլման եղանակը | Ձուլվածքի կշիռը | Բանուժի ծախսումը |
|---|---|---|
| Հողի կաղապարում | 40 կգ | 5 ռ. 63 կ. |
| Կարուսելա-կոկիլային ագրեգատով | 36 կգ | 3 ռ. 50 կ. |

Մեկ ձուլվածքում հեղուկ մետաղի տնտեսումն է 14 կգ, բանուժի արժեքի տնտեսումը՝ 2 ռ. 12 կ.։ Միաժամանակ խիստ բարելավվում է ձուլվածքի որակը։

Այս օրինակները համոզիչ կերպով ցույց են տալիս, թե ինչպիսի դրական արդյունքների կարելի է հասնել գործող արտադրությունների մասնագիտացման և մեքենայացման դեպքում։

«Հիդրոպրիվոդ» գործարանում (նախկին Երևանի մոտոռանորոգման գործարան) կազմակերպվում է մետաղահատիչ հաստոցների մի ամբողջ շարք



հիդրավլիկ կառուցվածքների արտադրություն՝ ռեսպուբլիկայի և Սովետական Միության մյուս տնտեսական շրջանների կարիքները բավարարելու համար։ Գործարանը թողարկելու է պոմպեր, հիդրոպանելներ և զանազան մոդելների ապահովիչ կափույրներ։ Այստեղ թողարկում են МГ—310 տիպի հիդրոպանելներ և զանազան տիպի կափույրներ։

Գործիքային գործարանում (Երևանի նախկին մետաղյա իրերի գործարան) անցյալ տարվանից կազմակերպվել է գործիքային սարքավորման՝ շտամպների, հարմարանքների, մետաղյա մոդելների և այլնի կենտրոնացված արտադրություն։ Այստեղ այժմ արտադրվում է մի շարք գործիքային ու հաստոցային գործարանների կարիքների համար սարքավորում։ Շինարարության ավարտումից և նոր կորպուսի գործարկումից հետո գործարանը հնարավորություն է ունենալու խիստ ավելացնելու արտադրությունը և հիմնականում բավարարելու մեր գործարանների գործիքային սարքավորման պահանջները։

Պետք է նշել, որ գործարանը դեռ չի հասել արտադրության այն կուլտուրային, որը կապահովի հաստոցաշինության տեխնոլոգիական բարդ սարքավորումների, մանավանդ հատիչ գործիքների բարձրորակ պատրաստումը։

Երևանի «Հաստոցանորմալ» գործարանում կազմակերպվում է ամրիչների և նորմալների կենտրոնացված արտադրություն զանազան տիպի նստավորման և պարուրակահանման ավտոմատների վրա։ Դա մեծ չափով պակասեցնում է նորմալների ինքնարժեքը և բարելավում որակը համեմատած նրանց պատրաստման անհատական եղանակի հետ, որ ներկայումս կիրառվում է ռեսպուբլիկայի բոլոր մեքենաշինական գործարաններում։ Գործարանում արդեն աշխատում են գործիքային ու ավտոմատ ցեխերը, բայց ջերմային ու գալվանային ցեխերի աշխատանքը դեռևս չի կազմակերպված և չի յուրացված, մի բան, որ խիստ իջեցնում է զանազան տիպի որակյալ նորմալների թողարկման հնարավորությունը։

Էլեկտրապանելների, պլաստմասսայից շինված դետալների ու մետաղյա փոշու, հաստոցների հակավորման վահանների կենտրոնացված արտադրություն կազմակերպելու հարցերի լուծումը կախված է էլեկտրատեխնիկական ու սարքաշինական, փայտամշակման ու անտառարդյունաբերության վարչություններից։ Ուստի և Ժողտնտխորհի պլանային-տնտեսական ու տեխնիկական բաժինները վարչությունների հետ միասին պետք է անհապաղ լուծեն այդ խնդիրները։

Կարևոր խնդիր է ժանանիվների կենտրոնացված արտադրության կազմակերպումը գլանման մեթոդով, առանց ատամների հետագա մեքենայական մշակության։ Նախնական տվյալների համաձայն այդ մեթոդով հնարավոր է ժանանիվներ պատրաստել ընդհուպ մինչև երկրորդ կարգի ճշգրտություն։

Գլանման մեթոդով պատրաստված ժանանիվներն ատամնահարիչ մեթոդով պատրաստվածների համեմատությամբ ունեն հետևյալ առավելությունները. գլանված ժանանիվների ատամների ամրությունը, թելիկների բարենպաստ դասավորման պատճառով բարձր է 30—40 տոկոսով, ատամնագլանման արտադրողականությունը 20—30 անգամ բարձր է և նյութի տնտեսումը կազմում է 10—ից մինչև 25 տոկոս։

Ներկայումս «Օրգստանկինպրոմ» ինստիտուտն այդ հարցն ուսումնասիրում է հաշվի առնելով ռեսպուբլիկայի մեքենաշինության ու հաստոցաշինության պահանջները, և պետք է հուսալ, որ հարցը դրական լուծում կստանա։

Օժանդակ արտադրության մասնագիտացումը հաջող կատարելու համար անհրաժեշտ է ուժեղացնել թողարկվող հիմնական արտադրանքի դետալների և հանգույցների ունիֆիկացման ու նորմալիզացիայի աշխատանքը։ Այս հարցում վճռական դեր պիտի խաղան միութենական ճյուղային ինստիտուտները։ Մեր կոնստրուկտորա-տեխնոլոգիական բյուրոյի խնդիրն է՝ առավել նպատակահարմար ձևով կիրառել այդ բնագավառում եղած նյութերը ռեսպուբլիկայի մեքենաշինության ու հաստոցաշինության պայմանները հաշվի առնելով։

Վերոհիշյալ հիմունքներով օժանդակ արտադրության մասնագիտացումը բնականաբար հասցնում է ռեսպուբլիկայի ներսում տնտեսապես նպատակահարմար կոոպերատիվ մատակարարումների զարգացման։ Բացի դրանից, վերջին տարիներս մեքենաշինության ու հաստոցաշինության վարչության սիստեմում յուրացվել է մի շարք դետալների ու հանգույցների արտադրությունը։ Նկատի ունենալով հեռավոր փոխադրությունները, վերացված են աննպատակահարմար կոոպերատիվ մատակարարումները ռեսպուբլիկայի սահմաններից դուրս եղած գործարաններից։ Օրինակ՝ ավտոպահեստային մասերի գործարանը յուրացրել է շարժաձողի կոփվածքի, իսկ «Հաստոցանորմալի» գործարանը՝ հեծանիվների հատուկ բոլտերի արտադրությունը և այդ դետալները մատակարարում են Լենինականի հեծանվային գործարանին։ Առաջ այդ կոփվածքը և բոլտերը ներմուծվում էին Կիևից ու Գորկուց։ Ավտոպահեստային մասերի գործարանն անցյալ տարի յուրացրեց մի շարք պահեստի մասերի կոփվածքների արտադրությունը, որոնք առաջ ստացվում էին Չելյաբինսկից։

Ներկայումս «Հիդրոպրիվոդ» գործարանը յուրացնում է աշտարակային կռունկների կորպուսային դետալների ձուլումը, որ արտադրում է թերթագլանման գործարանը և մինչև տարվա վերջը դադարեցվելու է ձուլվածքի ներմուծումը Խարկովից։

Այս բնագավառում մենք առաջին քայլերն ենք արել։ Ռեսպուբլիկայի մեքենաշինական ու հաստոցաշինական գործարանները Սովետական Միության տարբեր քաղաքներից կոոպերացված մատակարարման կարգով ստանում են հարյուրավոր անուն կոմպլեկտավորող իրեր, կոփվածքներ և զանազան դետալներ։ Էլեկտրատեխնիկական, գործիքաշինական, ռետինի, կաշվի արդյունաբերության այդ իրերից ու դետալներից շատերի արտադրությունը տնտեսապես նպատակահարմար է յուրացնել ռեսպուբլիկայի համապատասխան գործարաններում, որ մի կողմից հնարավորություն կտա վերջ տալ հեռավոր փոխադրություններին և մյուս կողմից կապահովի մատակարարման սպառողին։

Ռեսպուբլիկայի Պետպլանի համապատասխան բաժինների խնդիրն է այսուհետև ևս զբաղվել այս հարցով և որոշել մատակարարումների կոոպերացման սիստեմը ռեսպուբլիկայում։

Ռեսպուբլիկայի մեքենաշինարարների առջև դրված վերոհիշյալ տեխնիկապես բարդ խնդիրների հաջող կատարումը ներկայումս եղած կոնստրուկտորական ուժերով անհնարին է, որովհետև մեքենաշինության ու հաստոցաշինության սիստեմում ինժեներա-տեխնիկական աշխատողների ընդհանուր թվի մեջ կոնստրուկտորների տեսակարար կշիռը կազմում է ընդամենը 12,3 տոկոս, որ ակնհայտորեն անբավարար է։

Ձեռնարկություններում և հատուկ կոնստրուկտորական-տեխնոլոգիական բյուրոյին կից չկան փորձնական բազաներ, որտեղ կարելի լինի նոր



գծագրություններով մեքենաներ, հաստոցներ ու առանձին հանգույցներ պատրաստել և փորձնական նմուշների պահանջվող փորձեր կատարել։ Այս դրությունը բացառիկ դժվարություններ է ստեղծում թողարկվող արտադրանքի կոնստրուկցիայի կատարելագործմանը և մեքենաշինության գործարաններում նոր իրերի թողարկմանն անցնելու գործում։

Այժմ հրատապ է շեշտը դնել յոթ հաստոցաշինական և չորս մեքենաշինական առաջատար ձեռնարկություններին կից կոնստրուկտորական բյուրոներն ու էքսպերիմենտալ բազաներն ուժեղացնելու և նորերն ստեղծելու վրա, այն հաշվով, որ նրանցից յուրաքանչյուրում ինժեներա-տեխնիկական աշխատողների թիվը միջին հաշվով հասնի 50—60 մարդու։ Բացի դրանից, հարկավոր է ուժեղացնել եղած հատուկ կոնստրուկտորական-տեխնոլոգիական բյուրոն և նրան կից ստեղծել էքսպերիմենտալ բազա։ Ռեսպուբլիկայում պետք է կազմակերպել մեքենաշինության տեխնոլոգիայի ինստիտուտ, որպեսզի նա մշակի ու վճռի արտադրության ավտոմատացման, նոր տեխնոլոգիայի արմատավորման, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման կարևորագույն խնդիրները, ինչպես և գործարաններին տեխնիկական օգնություն ցույց տա հաստոցաշինության, էլեկտրամեքենաշինության, ընդհանուր մեքենաշինության և սարքաշինության բնագավառում։

Վերոհիշյալ առաջարկությունների կապակցությամբ սուր է դրվում ռեսպուբլիկայում պահանջվող մասնագիտությունների գծով ինժեներա-տեխնիկական կադրեր պատրաստելու հարցը։ Ռեսպուբլիկայի համապատասխան բարձրագույն ուսումնական հաստատությունների և տեխնիկումների խնդիրն է քննարկել այս հարցը և կոնկրետ միջոցներ ձեռք առնել։

---

# ՔԻՄԻԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Ռ. ՇԱԽԿՈՒԼՅԱՆ*

*ՍՄԿՊ Կենտկոմի 1958 թվականի Մայիսյան պլենումը ամբողջապես նվիրված էր քիմիական արդյունաբերության և հատկապես սինթետիկ նյութերի ու դրանցից պատրաստվող առարկաների արտադրության արագ զարգացմանը՝ բնակչության պահանջմունքները և ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար։*

*Այժմ դրվում է կարևորագույն և անհետաձգելի խնդիրներից մեկը, ասաց ընկ. Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումում, ամենակարճ ժամկետում ապահովել քիմիական արդյունաբերության արագացած զարգացումը և ստեղծել պոլիմերների արտադրության հզոր արդյունաբերություն։ Այդ հարցը ժամանակակից պայմաններում ստանում է պետական և քաղաքական հսկայական նշանակություն։*

*Քիմիական արդյունաբերության՝ մեր Հայրենիքի ժողովրդական տնտեսության քիմիացման հիմքի զարգացումը տեղի է ունեցել աննախընթաց տեմպերով։ Մեր պարտիան դեռևս նախապատերազմյան տարիներին հսկայական ուշադրություն էր նվիրում քիմիական արդյունաբերության զարգացմանը։ Նախապատերազմյան հնգամյակների ընթացքում ՍՍՌՄ-ում ստեղծվեց քիմիական առաջնակարգ արդյունաբերություն, որը հետպատերազմյան վերջին տասը տարվա ընթացքում էլ ավելի հզորացավ ու ձեռք բերեց բուռն աճման լայն հնարավորություններ։ Սովետական քիմիկոսները ստացան այնպիսի նյութեր, որոնց արդյունաբերական օգտագործումն է՛լ ավելի ընդլայնեց տեխնիկական առաջադիմության հնարավորությունը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ։*

*Նոբելյան մրցանակաբաշխության լաուրեատ ակադ. Ն. Ն. Սեմյոնովը ստեղծել է ճյուղավորված շղթայաընթաց ռեակցիաների տեսությունը, որը կարևոր նշանակություն ունի պոլիմերացման միջոցով բարձր մոլեկուլյար միացությունների սինթեզի մեթոդներ մշակելու համար։ Բարձր մոլեկուլյար միացությունների բնագավառում կարևոր աշխատանքներ են կատարել Վ. Ա. Կարգինը, Ի. Լ. Կնունյանցը, Ա. Վ. Թոփչիևը, Ա. Ն. Նեսմեյանովը և ուրիշներ։*

*Քիմիական արդյունաբերությունը լինելով նյութական արտադրության կարևորագույն ճյուղերից մեկը, մեծ դեր է խաղում բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ առավել զարգացած կապիտալիստական երկրներին հասնելու և անցնելու խնդիրը լուծելու գործում։*

*Հետպատերազմյան ժամանակաշրջանում, պատերազմի հասցրած վնասը վերականգնելուց հետո քիմիական արդյունաբերության ծավալը 1957 թվականին, 1940 թվականի համեմատությամբ խոշոր չափով աճեց։ Այդ բնագավառում կատարված մեծ աշխատանքի շնորհիվ ներկայումս Սովետական Միությունը քիմիական արտադրանքի արտադրության ծավալով գրավում է աշխարհում երկրորդ տեղը՝ ԱՄՆ-ից հետո։*

*Քիմիական արդյունաբերության զարգացումը ամրապնդեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արտադրական պրոցեսների հետագա քիմիացման բազան։ Արդյունաբերության և գյուղատնտեսության քիմիացումը հզոր զենք է աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում, նոր, լայն հեռանկարներ է բացում արտադրության տեխնիկայի հետագա կատարելագործման, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և արդյունաբերության հումքի հզոր բազայի ընդլայնման համար։ Ժողովրդական տնտեսության քիմիացումը ապահովում է կենդանի և նյութականացված աշխատանքի վիթխարի տնտեսում, միաժամանակ նվազեցնելով մեքենաշինության, մետալուրգիայի, գյուղատնտեսական շինարարության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատատարությունը։ Զարգացնելով տրված հատկություններով նյութերի սինթեզը, ժամանակակից քիմիան ստանում է այնպիսի հատկություններ և որակ ունեցող նյութեր, որոնք առանձին վերցրած չունեն ոչ մետաղը, ոչ փայտը, ոչ կաուչուկը և այլն։ Այժմ պատրաստվում են այնպիսի պլաստմասսաներ, որոնք ունեն պողպատի ամրություն, երկաթի կպչունություն, փայտի թեթևություն, ապակու թափանցիկություն, ռետինի ճկունություն, կապարի թթվակայունություն, ֆոսֆորի մեկուսիչ հատկություններ։*

*Դրանք կարող են մշակվել ամեն կերպ։ Բակելիտն ունի մետաղի ամրություն, բայց երկու անգամ թեթև է ալյումինից։ Պլեքսիգլասը ապակու նման թափանցիկ է և փայտից թեթև։ Պալլոպլասը առաձգական է ինչպես պողպատը և թափանցիկ՝ ինչպես ապակին և այլն։ Պլաստմասսայից պատրաստվող կոնստրուկցիոն նյութերը՝ գրաֆիտոպլաստը, ֆտորոպլաստը, վինիլպլաստը, որոնք օգտագործվում են քիմիական, էլեկտրատեխնիկական, ավիացիոն և արդյունաբերության այլ ճյուղերում, լայն կիրառում են գտնում ատոմային տեխնիկայում։ Քիմիան շինարարությանը տալիս է ցեմենտի նոր տեսակներ՝ անջրանցիկ, արագ ամրացող, ցրտակայուն, ջերմակայուն, գերամուր։ Երեսապատման նյութեր, ապակու նոր տեսակներ՝ դժվարահալ, անբեկոր, քիմիակայուն, ուլտրամանուշակագույն ճառագայթներ թողնող, «ապակյա բամբակ», ապակյա թել, ապակյա գործվածքներ, ապակյա «թաղիք» և այլ նյութեր, որոնք վիթխարի դեր են կատարում շինարարական տեխնիկայի պրոցեսում։*

*Էլեկտրամեխանիկայի, ռադիոտեխնիկայի, ավտոմատիկայի, տելեմեխանիկայի և այլ ճյուղերի զարգացումը անհնարին է առանց ժամանակակից քիմիայի նվաճումների կիրառման։ Ժամանակակից քիմիան յոթ մղոնանոց քայլերով թափանցում է արդյունաբերության և գյուղատնտեսության, տրանսպորտի ու էներգետիկայի մեջ, կյանքի ռիթմի մեջ մտցնելով սինթետիկ նոր նյութեր՝ քիմիական տեխնիկայի առաջին արտադրանքները։*

*Ներկայումս քիմիական արդյունաբերության զարգացման մեջ առաջին պլանի վրա է դրվում սինթետիկ թելերի արտադրությունը։ Արդյունաբերության տարբեր ճյուղերում էժանագին սինթետիկ նյութերի օգտագործումը հնարավորություն է ստեղծում օգտագործելու հսկայական քանակությամբ բնական հումքի լրացուցիչ աղբյուրներ։*

*Ժամանակակից արդյունաբերական արտադրության մեջ չկա կամ հա-*

մարյա չկա մի այնպիսի ճյուղ, որտեղ չպահանջվեր սինթետիկ նյութերի՝ քիմիական արդյունաբերության ամենահեռանկարային նյութերի կիրառում։ Սինթետիկ նյութեր պատրաստելու մեթոդների մշակումը կարելի է դնել մեր դարաշրջանի մեծագույն հայտնագործության՝ միջուկային էներգիայի կողքին։

Սինթետիկ նյութերի շարքում առանձնահատուկ կարևոր տեղ են գրավում պլաստիկական մասսաները։ Տարեցտարի պլաստմասսաների կիրառման շրջանակները ժողովրդական տնտեսության մեջ ընդարձակվում են։ Պլաստմասսաները ներկայումս լայնորեն օգտագործվում են մեքենաշինության մեջ, մասնավորապես էլեկտրատեխնիկայում և ռադիոտեխնիկական արդյունաբերության մեջ, ավտոմոբիլաշինության, նավաշինության, ինքնաթիռաշինության և հրթիռաշինության մեջ և այլն։ Դրանք լայնորեն մտնում են բնակչության ողջ կենցաղում։

Մեքենաշինության մեջ կիրառվում են պլաստմասսաների այնպիսի տեսակներ, որոնք իրենց ֆիզիկական և մեխանիկական հատկություններով զգալիորեն գերազանցում են հատուկ պողպատներին։ Սովետական Միությունում ակադեմիկոս Պ. Ա. Ռեբինդերի հետազոտությունները հանգեցրին այն բանին, որ հնարավոր դարձավ պատրաստել դժվարահալ նոր նյութեր, ինչպես նաև պլաստմասսայից կտրիչներ՝ մետաղ մշակող հաստոցների համար։ Պլաստմասսայից պատրաստված կտրիչները հնարավորություն են տալիս մետաղները մշակել ավելի արագ, քան հատուկ պողպատից կամ նույնիսկ կարբիդ-վոլֆրամից պատրաստված կտրիչները։ Անհրաժեշտ է նշել, որ այդ պլաստմասսաները հատուկ մետաղներից ավելի էժան են և ունեն բարձր դիմադրողականություն կոռոզիայի նկատմամբ։

Մեքենաշինության մեջ կիրառվում են պոլիամիդային պլաստմասսաներ։ Քիմիական կայունությունից բացի, նրանք ունեն բարձր ամրություն կտրվելու նկատմամբ, խլացնում են աղմուկները և ունեն շփման ցածր գործակից։ Պոլիամիդային պլաստմասսաներից պատրաստված առանցքակալները ոչ մեծ ծանրաբեռնվածության դեպքում կարող են աշխատել առանց յուղելու։ Այդպիսի առանցքակալներ օգտագործվում են տեքստիլ և թեթև արդյունաբերության ձեռնարկությունների սարքավորումներում։ Պլաստմասսայի մեկուսիչ ունեցող կաբելը որակով չի զիջում կապարի պատյան ունեցող կաբելին և զգալիորեն թեթև է վերջինից։

Պլաստմասսաները հեշտությամբ փոխարինում են ավտոմոբիլի տարբեր մասերին. բացի այդ ներկայումս պատրաստվում են այնպիսի ավտոմոբիլներ, որոնց բոլոր դետալները պատրաստվում են նրանցից։ Որպեսզի հասկանալի լինի, թե ինչ նշանակություն ունեն պլաստմասսաները ինքնաթիռաշինության մեջ, կարելի է բերել ՏՈՒ—104 սովետական մարդատար ինքնաթիռի օրինակը, որտեղ կան պլաստիկական մասսաներից և ռետինից պատրաստված 120 հազար տարբեր մասեր։ Ժամանակակից հրթիռաշինությունը լայնորեն կիրառում է այնպիսի պլաստմասսաներ, որոնք դժվարահալ են, ունեն բարձր դիմադրողականություն տաքացման, կոռոզիայի, հնացման նկատմամբ, ունեն մեխանիկական ամրություն և այլն։

Պլաստմասսաները հաջողությամբ կիրառվում են շինարարության մեջ։ Վերջին տարիների ցուցահանդեսներում ցուցադրվել են ամբողջապես պլաստմասսաներից կազմված տների նմուշներ, ինչպես նաև նույն նյութերից պատրաստված կահավորանք։



Ժողովրդական տնտեսության մեջ պլաստմասսաների կիրառումը տալիս է տնտեսական մեծ էֆեկտ։ Այսպես, պլաստմասսաներից ջրային պոմպերի համար թևանիվների պատրաստումը 60 տոկոսով իջեցնում է նյութի ծախսումը, 5 անգամ՝ առարկաների քաշը և 2 անգամ՝ դրանց արտադրության արժեքը։ Հաշվումները ցույց են տալիս, որ 1965 թվականին 5—7 հազար տոննա պլաստմասսաներ արդեն կփոխարինեն 20—25 հազար տոննա մետաղի, որի հետևանքով տնտեսումը կհասնի 150 մլն. ռուբլու։

Այստեղից էլ բխում է պլաստմասսաների արտադրության ավելացման ժողովրդա-տնտեսական հսկայական նշանակությունը և դրանց կիրառումը հասարակական արտադրության տարբեր ճյուղերում։ Ուստի մեր երկրում պլաստիկական մասսաների և սինթետիկ ձյութերի արտադրությունը յոթնամյակի վերջերին կաճի ավելի քան 7 անգամ։

Ժամանակակից քիմիական արդյունաբերությունը, թողարկելով հսկայական քանակությամբ տարբեր տեսակի արհեստական ու սինթետիկ թելեր, խնայում է զգալի քանակությամբ գյուղատնտեսական և բնական հումք, որի հետևանքով վերջիններս ավելի մեծ մասշտաբներով, քան առաջ էր, կծառայեն մեր հասարակության նյութական պահանջմունքների հետագա լիակատար բավարարմանը։

1965 թվականին (1958 թվականի համեմատությամբ) արհեստական և սինթետիկ թելերի արտադրությունը կավելանա չորս անգամ։

Թե արհեստական ու սինթետիկ թելերը ինչպիսի կշիռ կունենան ժողովրդական սպառման մի շարք կարևորագույն ապրանքների արտադրության մեջ, ցույց է տալիս հետևյալ աղյուսակը[1].

| Ապրանքների անունը | Ընդհանուր արտադր. 1965 թ. | Արտադրությունն արհեստական և սինթետիկ թելերի կիրառմամբ | | |
|---|---|---|---|---|
| | | 1957 թ. | 1965 թ. | 1965 թ. (1957 թվ. համեմատությամբ) |
| Բամբակյա գործվածքներ (մլն. մետր) | | 80 | 480 | 6 անգամ |
| Մետաքսյա գործվածքներ (մլն. մետր) | 1495 | 768 | 1237 | 1,75 անգամ |
| Տրիկոտաժե ապրանքներ (մլն. մետր) | 940 | 65,32 | 588 | 9 անգամ |
| Կարակուլ (քառ. մետր.) | | 357140 | 5000000 | 14 անգամ |
| Կոշկեղենի արտադրությունը արհեստ. կաշվի կիրառմամբ և | 515 մլն. զույգ | 44,347 հազ. զույգ | 93 մլն. զույգ | 2,3 անգամ |
| Մանրածակոտկեն ներբանի կիրառմամբ | | 5825 հազ. զույգ | 233 մլն. զույգ | 40 անգամ |

Սինթետիկ թելերի արտադրության ավելացումն ամեն տարի ժողովրդական տնտեսությանը կտա միլիարդավոր ռուբլու տնտեսում և կխնայի հսկայական քանակությամբ բնական, հիմնականում գյուղատնտեսական հումք։ Օրինակ, բրդյա գործվածքների արտադրությունն ամեն տարի 10 մլն. մետրով

[1] Աղյուսակը կազմված է ՍՄԿԿ Կենտկոմի 1958 թվականի Մայիսյան պլենումի նյութերի հիման վրա։

ավելացնելու դեպքում կպահանջվի մերինոս ոչխարների գլխաքանակն աճեցնել մեկ միլիոն գլխով։

Ընթացիկ յոթնամյակում Սովետական Միությունում ստեղծվում է բարձրորակ սինթետիկ թելերի հզոր արդյունաբերություն, թելեր, որոնք իրենց հատկություններով ոչ միայն չեն զիջում, այլև մեծ չափերով գերազանցում են բնական թելերին։ Սովետական քիմիան, արտասահմանում հայտնագործված սինթետիկ թելի տեսակները յուրացնելուց բացի, տվեց իր սեփական, բարձրորակ տեսակները՝ «էնանտը», «Պելարգոնը» և այլն։

Որպեսզի համառոտ նկարագրենք, թե ինչ նշանակություն են ստանում սինթետիկ թելերը ժողովրդական տնտեսության մեջ, բավական է վերցնենք սինթետիկ թելերից պատրաստվող կորդի օրինակը դողերի արդյունաբերության մեջ։ Եթե 1958 թվականին բամբակյա կորդի բաժինը կազմում էր կորդի ընդհանուր արտադրության 52 տոկոսը, իսկ կապրոնից պատրաստվող բարձրամուր կորդը՝ ընդամենը 3 տոկոսը, ապա յոթնամյակի վերջերին բամբակյա կորդի բաժինը կիջնի մինչև 17 տոկոսի, իսկ քիմիական թելից պատրաստվող կորդի բաժինը կավելանա մինչև 87 տոկոս։ Ըստ որում, ավտոմեքենաների վազքը ևս, կապրոնային կորդի կիրառման դեպքում կավելանա 30—40 տոկոսով, այսինքն՝ այդ ավելացումը կլինի նաև ավտոդողերի արտադրության ավելացում 30—40 տոկոսով։

Սինթետիկ թելերն աստիճանաբար արդյունաբերական արտադրությունից դուրս են մղում բնական հումքը և լայնորեն օգտագործվում են մեքենաշինական, ռադիոտեխնիկական, ավիացիոն և արդյունաբերության այլ ճյուղերում, շինարարական գործում, քանի որ իրենց տեխնիկական տվյալներով նրանք միանգամայն բավարարում են ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերի պահանջները։

Ներկա յոթնամյակում Հայաստանում կկարգավորվի ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունեցող սինթետիկ նյութերի մի շարք կարևորագույն տեսակների արտադրությունը։ Մասնավորապես, կարգավորվելու է պոլիքլորվինիլային ձյութի, ֆենոլ-ֆորմալդեհիդային ձյութերի, պոլիվինիլբուտիրալի, վինիլֆլեքսի, սինթետիկ կորունդի, մելամինի, սինթետիկ թելի և այլ նյութերի արտադրությունը։ Այդ արտադրությունները հիմնականում ստեղծվելու են տեղական հումքի բազայի վրա, որն ավելի կէժանացնի արտադրված արտադրանքը։ Հիշյալ նյութերի արտադրության ծավալը յոթնամյակի վերջերին կհասնի հսկայական չափերի։

Որպեսզի ավելի պարզ պատկերացում կազմենք այն մասին, թե ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի համար ինչ նշանակություն ունեն սինթետիկ նյութերի նոր տեսակները, որոնց արտադրությունը սկսվելու է Հայաստանում, բերենք մի քանի օրինակ։ Պոլիքլորվինիլային ձյութերից պատրաստում են զանազան թիթեղիկներ, որոնք օգտագործվում են էլեկտրո և ռադիոտեխնիկական արդյունաբերության մեջ, գրահապատ ապակի, որը օգտագործվում է ավիացիայի մեջ, ամենաբարակ էլաստիկ խողովակներ, որոնք փոխարինում են արյունատար անոթներին։ Հետաքրքրական է նշել, որ վերջերս վիրահատները կատարեցին մի վիրահատություն, որի ժամանակ աորտայի մի մասը փոխարինեցին պլաստմասսայի խողովակի մի կտորով։ Միաժամանակ պոլիքլորվինիլային ձյութից պատրաստում են կենցաղային զանազան իրեր։



Տարեցտարի սինթետիկ կորունդը (թանկարժեք քարեր) ավելի ու ավելի մեծ կիրառում է գտնում ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում։ Սինթետիկ կորունդի արտադրության կարգավորումը Կիրովականի քիմկոմբինատում (քիմկոմբինատի սինթետիկ կորունդի ցեխը ամենահզորը կլինի ոչ միայն ՍՍՌՄ-ում, այլ իր կարողություններով մի քանի անգամ կգերազանցի նույնպիսի գործող արտադրություններին արտասահմանում), հնարավորություն կտա ստեղծելու Հայաստանի արդյունաբերության նոր ճյուղ՝ տեխնիկական և ժամացուցային քարերի արտադրությունը, որոնց պակասը սուր կերպով զգում է սարքաշինական և ժամացուցային արդյունաբերությունը։ Արդյունաբերության այդ ճյուղերից բացի, սինթետիկ կորունդը կիրառում կգտնի նաև տեքստիլ արդյունաբերության արտադրության մեջ որպես թելահաղորդիչ։

Սինթետիկ ձյութերի և պլաստմասսաների արտադրության զարգացման հիման վրա մեր ռեսպուբլիկայում հզոր տեմպերով կզարգանա արհեստական և սինթետիկ թելի՝ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար այդ կարևորագույն նյութի արտադրությունը։

Հայաստանում մեծ հնարավորություններ կան այնպիսի սինթետիկ նյութերի արտադրության համար, ինչպիսին են կապրոնը, նիտրոնը, քլորինը և այլն։ Այս արհեստական թելերն իրենց հատկություններով մեծ առավելություններ ունեն ցելյուլոզային և մետաքսյա թելերի նկատմամբ։ Նրանք չեն փտում, ցեցադիմացկուն են և չորս անգամ ամուր են բրդի թելից, երկու անգամ՝ բամբակի թելից և չորս անգամ՝ ալյումինի մետաղալարից։ Նիտրոնից պատրաստում են գորգեր, օդեյալներ, տղամարդու գուլպաներ և լայն սպառման բազմաթիվ այլ առարկաներ։

Կապրոնը լայն կիրառում է գտնում դողերի արդյունաբերության համար կորդ պատրաստելու գործում։ Հաշվումները ցույց են տալիս, որ բամբակյա կորդի փոխարեն կապրոնի կորդ կիրառելու դեպքում, Երևանի դողերի գործարանում ընդունված ասորտիմենտով ավտոդող թողարկելու դեպքում, կտնտեսվի մեծ քանակությամբ բամբակյա կորդ։

Միաժամանակ, դողերի մեջ կորդի շերտերի թվի պակասեցման հաշվին, կորդի վրա քսվող ռետինի հաստության պակասեցման հաշվին կստացվի կաուչուկի տնտեսում 4220 տոննայի չափով։ Կապրոնի կորդի կիրառումը բարձրացնում է ավտոդողերի շահագործման հատկությունները, իջեցնում է շահագործման ծախսերը 1000 կմ վազքի համար 7 ռուբլի 57 կոպեկով, որը տասնյակ միլիոն ռուբլու տնտեսում կտա։ Դրա հետ մեկտեղ ավտոդողերի դիմացկունության բարձրացումը համարժեք է արտադրանքի լրացուցիչ թողարկման՝ առանց նյութական, աշխատանքային և էներգետիկ ծախսումների։

Ներկայումս քիմիական արդյունաբերության զարգացման գործում անհրաժեշտություն է ծագում առաջին հերթին օգտագործել բնական հումքի էժանագին տեսակները։ Քիմիական արդյունաբերությունն այժմ զարգանում է միանգամայն այլ հիմքի վրա, առավել էժան հումքի՝ բնական գազի և նավթավերամշակող գործարանների տված գազի օգտագործմամբ, որը թույլ է տալիս խիստ կրճատել քիմիական ձեռնարկությունների շինարարության վրա կատարվող ծախսումները և իջեցնել արտադրանքի ինքնարժեքը։ Յոթնամյակի վերջերին գազի արդյունահանումը (1958 թվականի համեմատությամբ) կավելանա 5 անգամ և կհասնի տարեկան 150 մլրդ. խորանարդ մետրի։ Գազի

օգտագործումը քիմիական արդյունաբերության մեջ մեծ չափով ընդլայնում է արտադրանքի ասորտիմենտը, միաժամանակ իջեցնելով արտադրանքի մեկ միավորի արտադրության վրա կատարվող ծախսերը։ Որպեսզի պատկերացնենք, թե ինչքան էժան և խնայողաբեր է նավթի հումքը, բերենք հետևյալ օրինակները։

Բնական գազից պատրաստվող ամիակի մեկ տոննայի ինքնարժեքը հավասար է 490 ռուբլու, իսկ կոքսից պատրաստվող ամիակինը՝ 980 ռուբլու, գազից ստացվող սպիրտինը՝ 2234 ռուբլու, սննդի հումքից ստացվածինը՝ 3935 ռուբլու, գազից ստացվող կաուչուկինը՝ 3600 ռուբլու, իսկ սպիրտից ստացվածինը՝ 6435 ռուբլու։

Բնական գազից ամենախնայողաբեր եղանակով ստացվում է քիմիական ունիվերսալ պրոդուկտ՝ ացետիլեն, որը օգտագործվում է համարյա բոլոր քիմիական արտադրություններում։ Ացետիլենը սինթետիկ կաուչուկի ստացման հիմնական հումքն է։ Գազի հիմքի վրա ացետիլենից ստացված կաուչուկը տեխնիկա-տնտեսական տեսակետից մեծ չափով գերազանցում է կաուչուկին, որը ստացվում է կարբիդ կալցիումի հիմքի վրա՝ ացետիլենից։

Հայտնի է, որ Հայաստանում, ինչպես և Սովետական Միությունում մինչև այժմ ացետիլենը ստանում էին կարբիդ-կալցիումի հիմքի վրա, որի ստացման պրոցեսը թե՛ աշխատատար է, թե՛ էներգատար։ Ղարադաղից (Ադրբեջան) ստացվող գազը հնարավորություն կտա նրա հիմքի վրա կարգավորել ացետիլենի արտադրությունը Ս. Մ. Կիրովի անվան ՍԿ գործարանում։

Քիմիական արդյունաբերության արտադրանքը ավելի ու ավելի լայնորեն է օգտագործվում հասարակական արտադրության այնպիսի կարևորագույն ճյուղում, ինչպիսին է գյուղատնտեսությունը։ Գյուղատնտեսական արտադրության պրոցեսների քիմիացումը հանգեցնում է գյուղատնտեսական արտադրանքի ծավալի մեծացման՝ կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու և անասնաբուծության գլխաքանակը ավելացնելու միջոցով։

Գյուղատնտեսական բույսերի կյանքի պրոցեսների մեջ քիմիական միջամտությունն իր մեջ ունի աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և գյուղատնտեսական արտադրանքի թողարկումը ավելացնելու մեծ ռեզերվներ։

Որպեսզի պատկերացնենք, թե հողի քիմիացումից ինչ օգուտ կստանա ժողովրդական տնտեսությունը, բերենք մի օրինակ։ Ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանով մեր ռեսպուբլիկայում 1965 թվականին պետք է արտադրվի տարեկան 300 հազ. տոննայից ավելի հանքային պարարտանյութ, այսինքն՝ 1,6 անգամ ավելի, քան արտադրվել է 1958 թվականին։ Հանքային պարարտանյութերի այդ քանակության ռացիոնալ օգտագործումը երկրի ժողովրդական տնտեսությանը կարող է տալ մոտավոր հաշվումներով 20 հազ. տոննա թելի (բամբակի, վուշի և այլն), 30 հազ. տոննա շաքարի, 400 հազ. տոննա կարտոֆիլի, 350 հազ. տոննա հացահատիկի լրացուցիչ գյուղատնտեսական արտադրանք։ Դա բավական է, որպեսզի հացով ապահովենք 2,1 միլիոն, կարտոֆիլով՝ մեկ միլիոն, թելով՝ 600 հազար մարդու տարեկան պահանջմունքը, ըստ որում պահպանվելու են ցանքերի նույն տարածությունները։

Քիմիական արդյունաբերության արագ զարգացումը հսկայական փոփոխություններ է մտցնում մեր երկրի արտադրողական ուժերի բաշխման քար-



տեզի վրա։ Ինտենսիվ կերպով տնտեսական շրջանառության մեջ ներգրավելով տարբեր տեսակի հումքի հարուստ բնական ռեսուրսներ, նա խթանում է արտադրության զանազան ճյուղերի առաջացումը, որոնք, հանդիսանալով քիմիական արդյունաբերության արտադրանքի հետագա վերամշակման ճյուղերը, ընդլայնում են մեր երկրի արտադրական պոտենցիալը։ Դրա ապացույցն է Հայաստանի օրինակը։ Մեր ռեսպուբլիկայում արդեն զարգացած քիմիական արդյունաբերության բազայի վրա նախատեսված է ներկա յոթնամյակում նրա արտադրանքն ավելացնել 3,3 անգամ։ Զարգացումը հիմնականում տեղի է ունենալու ոչ թե քիմիական արդյունաբերության խոշոր կենտրոններում՝ Երևանում և Կիրովականում, այլ Հրազդանի շրջանում նեֆելինային սիենիտների բազմահարուստ, անսպառ պաշարների օգտագործման բազայի վրա նոր, խոշոր կենտրոն հիմնելու հաշվին։ Ախտայում կառուցվող լեռնաքիմիական կոմբինատի հումքը հնարավորություն կտա ապահովելու արտադրանքի նոր տեսակների արտադրությունը ռեսպուբլիկայում։ Միաժամանակ, ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում տեղի է ունենալու Ախտայի լեռնաքիմիական կոմբինատի հումքի վերամշակում, որը զարկ կտա ռեսպուբլիկայի առանձին շրջանների տնտեսական զարգացմանը։ Այսպես, լեռնաքիմիական կոմբինատի պոտաշի բազայի վրա Աշտարակի շրջանում կազմակերպվելու է բյուրեղապակու արտադրություն։ Լեռնաքիմիական կոմբինատը հումք է մատակարարելու Սևանի շրջանի ապակյա թելի գործարանին և այլն։

Այսպիսով, քիմիացումը մեր երկրում գնալով ավելի մեծ թափ է ստանում, իր զարգացմամբ նպատակ ունենալով սովետական մարդկանց լիովին բավարարել նյութական բարիքներով։

Քիմիական արդյունաբերության բոլոր ճյուղերի ուժգին զարգացումը, ընդլայնելով ժողովրդական տնտեսության քիմիացման նյութական բազան, բաց է անում լրացուցիչ հումք ստանալու անսպառ աղբյուրներ, ամեն կերպ ծառայելով մեր պարտիայի հոյակապ ծրագրի՝ կոմունիզմի ծավալուն կառուցման ծրագրի կենսագործմանը։

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՀՐԱՀԱՆԳԻՉԸ

Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Ռեսպուբլիկայի պարտիական ապարատի պատասխանատու աշխատողների կեսից ավելին հրահանգիչներ են։ Նրանք քաղաքային և շրջանային կոմիտեի ու սկզբնական պարտիական կազմակերպության միջև անմիջական կապ ստեղծող օղակն են, պարտիական ապարատի օպերատիվ կազմը։ Հրահանգչի գործունեության հիմնական նպատակը՝ պարտիայի որոշումների կենսագործման կազմակերպումն ու սկզբնական պարտիական կազմակերպություններին ցույց տրվող օգնությունն է։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի կողմից վերջին տարիներում իրականացված մի շարք միջոցառումների շնորհիվ պարտիական ապարատի և սկզբնական պարտիական կազմակերպությունների աշխատանքում տեղի են ունեցել բավականին դրական փոփոխություններ։ Պարտիական կազմակերպությունները սկսել են ավելի կոնկրետ, ավելի գործիմացությամբ խորամուխ լինել արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների գործունեության մեջ, ավելի կոնկրետ կերպով զբաղվել գիտության նվաճումները և առաջավոր փորձը արտադրության մեջ արմատավորելու, եղած ռեզերվները հայտաբերելու և օգտագործելու հարցերով։

Պարտիական ապարատում քանի գնում, ավելի են նվազում գրասենյակային ղեկավարման ձևերը, գրագրությունը։ Այժմ հրահանգիչները ավելի հաճախ են լինում կազմակերպություններում, ավելի մոտիկից են ղեկավարում նրանց աշխատանքը։ Դրան նպաստում է այն, որ վերջին տարիներին պարտիական աշխատանքի են ներգրավվել նոր երիտասարդ կադրեր, այդ թվում և մասնագետներ։ Զգալիորեն բարելավվել է հրահանգչական կազմի կրթական մակարդակը։ Բավական է ասել, որ ռեսպուբլիկայի հրահանգիչների մոտ 70 տոկոսն ունեն բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն, 30 տոկոսից ավելին ավարտել են պարտիական դպրոցներ։

Կոլտնտեսությունների, սովխոզների, նրանց պարտիական կազմակերպությունների հետ սերտ կապ հաստատելու շնորհիվ ՀԿՊ Վեդու շրջկոմի հրահանգիչները կարողանում են ժամանակին նկատել աշխատանքի մեջ ծնվող նորը և այն զարգացնել ու դարձնել բոլորի սեփականությունը, որը զգալիորեն նպաստում է գյուղատնտեսության արտադրության վերելքին։ Հրահանգիչներից Գուրգեն Միսակյանը սպասարկում է երեք սովխոզային, մեկ կոլտնտեսային, մեկ դպրոցական և երկու արդյունաբերական ձեռնարկության պարտիական կազմակերպության։ Նա կարողանում է բազմաթիվ հարցերից գտնել տվյալ կազմակերպության համար գլխավորը և օգնել կազմակերպությանն այն լուծելու։

Տանուլով Այգավանի կոլտնտեսային սկզբնական պարտիական



կազմակերպության և տնտեսության վիճակին, հրահանգիչ Գ. Միսակյանը տեսավ, որ այստեղ պատշաճ ուշադրություն չեն հատկացնում խոզաբուծության զարգացմանը։ Պարտիական կազմակերպության բյուրոյի անդամների հետ խորհրդակցելուց հետո նա ուսումնասիրեց խոզաբուծության ետ մնալու պատճառները՝ պարտիական ժողովում այն քննարկելու համար։ Հարցի նախապատրաստմանը մասնակցեցին մի շարք կոմունիստներ, ինչպես նաև անպարտիական կոլտնտեսականներ։ Ժողովը բացահայտեց խոզաբուծության ետ մնալու հիմնական պատճառը. կոլտնտեսության վարչությունը և պարտիական բյուրոն այդ գործն անուշադրության էին մատնել։ Խոզաբուծության բնագավառն ուղարկվեցին մի քանի կոմունիստներ և կոմերիտականներ, կազմակերպվեց հատուկ զրույց խոզերի խնամքի ու կերակրման ռեժիմի մասին, հատուկ ուշադրություն հատկացվեց խոզանոցի բարեկարգման և այլ հարցերի վրա։ Հասկանալի է, որ այս ամենը տվեցին դրական արդյունքներ. այժմ խոզաբուծությունը դառնում է Այգավանի կոլտնտեսության առաջատար ճյուղերից մեկը։

Ռեսպուբլիկայի պարտիայի մի շարք քաղաքային և շրջանային կոմիտեների առանց բաժինների աշխատելու փորձը ցույց է տալիս, որ զգալիորեն կատարելագործվել, պարզեցվել և ճկունացվել է սկզբնական պարտիական կազմակերպություններին ցույց տրվող օգնությունն ու ղեկավարությունը, որ այն նպաստել է հրահանգիչների նախաձեռնության է՛լ ավելի ծավալմանը, բարձրացրել է նրանց ինքնապատասխանատվությունը, ուժեղացրել մասսաների հետ պարտիական ապարատի կապը։ Աշխատանքի այդպիսի ձևը նպաստել է հրահանգչական կազմի աշխատանքային ունակությունների բազմակողմանի աճմանը։

Պարտիայի շրջկոմի հրահանգիչների կողմից սկզբնական պարտիական կազմակերպություններին ցույց տրվող օգնությունը միշտ էլ տալիս է իր արդյունքը։ ՀԿՊ Ստալինյան շրջանային կոմիտեի հրահանգիչ Երվանդ Մինասյանը լինելով կազմակերպություններում, իր ուշադրության կենտրոնում է պահում կադրերի հետ տարվող աշխատանքը, կոմունիստների ավանգարդային դերի բարձրացումը։ Այդ հարցերի միջոցով նա կարողանում է ժամանակին նկատել արտադրության կազմակերպման պրոցեսներում տեղ գտած թերությունները և օգնել՝ վերացնելու դրանք։ Այսպես, օրինակ, Երևանի կոշկի № 3 ֆաբրիկայի կոլեկտիվն ընթացիկ տնտեսական տարվա սկզբից թերակատարում էր պետական առաջադրանքները, թողարկում ցածրորակ արտադրանք։ Հրահանգիչ Ե. Մինասյանը մասնագետ ընկերների օգնությամբ մանրամասն ուսումնասիրեց ֆաբրիկայի ետ մնալու պատճառները։ Պարզվեց, որ ֆաբրիկայի ղեկավարության այն պնդումները, թե այդ ամենի պատճառը առևտրական կազմակերպություններն են՝ անհիմն էր, որ ցածրորակ արտադրանքի հիմնական մեղավորները ֆաբրիկայի աշխատողներն են։ Այստեղ ընկած էր աշխատանքային կարգապահությունը, ցածր էր կոմունիստների պատասխանատվության զգացումը հանձնարարված գործի նկատմամբ։ Ինչպես պարտիական կազմակերպությունը, այնպես էլ ֆաբրիկայի ղեկավարությունն անհրաժեշտ պահանջկոտություն չէին ցուցաբերում ցեխի վարիչների և վարպետների նկատմամբ։ Ֆաբրիկայում կադրերի ընտրման, տեղաբաշխման ու դաստիարակման գործը մատնված էր ինքնահոսի, որոշ ղեկավար պաշտոններում նշանակվել էին նախկինում աշխատանքը տապալած մարդիկ, որոնք

կարողություն չունեին լուրջ պայքար ծավալել առաջադրանքների անթերի կատարման համար։

Հրահանգչի օգնությամբ ֆաբրիկայի դիրեկցիան և պարտիական բյուրոն ֆաբրիկայի մասնագետների, առաջավոր բանվորների հետ կոնկրետ միջոցառումներ մշակեցին եղած թերությունների վերացման համար։ Այս և նման այլ միջոցառումների կենսագործումն արդեն տալիս է իր շոշափելի արդյունքները։

Պարտիական կոմիտեի հրահանգիչը պետք է հանդես գա որպես կազմակերպիչ։ Դեռևս 1934 թվականին Ս. Մ. Կիրովը ասել է, որ հրահանգիչը չունի իր ապարատը, չունի ոչ մեքենագրուհի և ոչ էլ սղագրող, և որ այդ մենք գիտմամբ ենք այդպես արել, որպեսզի նա տեղերում կոնկրետ աշխատանք փնտրի, չթաքնվի թղթի ետև, որպեսզի թուղթը նրան չխանգարի, ամեն ինչ հրահանգչին տեսանելի լինի և ինքն էլ տեսանելի լինի։

Հրահանգիչը ունի իր բազմաթիվ հոգսերը։ Նրան հավասար չափով մտահոգում է արտադրության բոլոր ճյուղերի վիճակը։ Բայց նա հաջողության կարող է հասնել միայն մարդկանց շրջանում տարվող աշխատանքն ուժեղացնելու, նրանց մոտիկից և բազմակողմանի իմանալու միջոցով։ Այս տեսակետից աշխատանքի որոշ փորձ ունի ՀԿՊ Էջմիածնի շրջկոմի հրահանգիչ Արամայիս Գևորգյանը։ Աղավնատան կոլտնտեսության երիտասարդության մի զգալի մասը չէր ընդգրկված արտադրության մեջ, միջնակարգ դպրոցն ավարտած շատ երիտասարդներ հանրօգուտ աշխատանքով չէին զբաղվում։ Ա. Գևորգյանը պարտիական կազմակերպության բյուրոյի և ԼԿԵՄ կոմիտեի անդամների հետ միասին լրջորեն զբաղվեց երիտասարդության շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքով։ Կազմակերպվեցին զրույցներ, դասախոսություններ, հանդիպման երեկոներ, շախմատի, շաշկու և այլ խմբակներ, որոնցում ընդգրկվեցին մեծ թվով երիտասարդներ։ Ուժեղացավ պատի թերթի աշխատանքը, որի էջերում սուր քննադատության ենթարկվեցին հանրօգուտ աշխատանքով չզբաղվող երիտասարդները, խրախուսվեցին արտադրության առաջավորները։ Այս ամենը չէին կարող չտալ իրենց դրական արդյունքները։ Աղավնատան կոլտնտեսության մոտ 90 երիտասարդներ փոխարինեցին այգեփորի աշխատանքներում զբաղված կանանց։

Ա. Գևորգյանը առանձնակի ուշադրություն է դարձնում իր կողմից սպասարկվող կազմակերպություններում կոմունիստների ու կոմերիտականների ուժերն արտադրության վճռական տեղամասում ճիշտ տեղաբաշխելու, պրակտիկ աշխատանքում նրանց օգնություն կազմակերպելու վրա։ Նա կոլտնտեսականների առջև սիստեմատիկաբար հանդես է գալիս քաղաքական զեկուցումներով, կազմակերպում դիֆերենցված աշխատանք պարտկազմակերպությունների քարտուղարների, բյուրոյի անդամների, բրիգադավարների ու արտադրության մասնագետների հետ։

Որքան հրահանգիչը կապված լինի սկզբնական պարտիական կազմակերպությունների հետ, այնքան նրա առջև նորանոր հարցեր կբարձրանան։ Սերտ կապը կյանքի հետ հրահանգչի համար լայն հնարավորություններ է ստեղծում ստեղծագործաբար մոտենալու իր պարտականությունների կատարմանը, լուրջ ուշադրություն դարձնելու առաջավոր փորձի մասսայականացման վրա, որը պարտիական աշխատանքի կարևոր օղակներից է։

Շահումյանի շրջանի Հաղթանակ գյուղի կոլտնտեսության պարտիական



կազմակերպության աշխատանքի փորձը ընդհանրացնելու նպատակով շրջկոմի հրահանգիչ Վ. Մայիլյանը իր կողմից սպասարկվող պարտիական սկզբնական կազմակերպությունների քարտուղարների սեմինար պարապմունք կազմակերպեց տեղում, որտեղ նրանք մանրամասն ուսումնասիրելով Հաղթանակ գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության աշխատանքի ձևերն ու մեթոդները, մտքերի լայն փոխանակում ծավալեցին՝ պարտիական աշխատանքի դրական փորձը արմատավորելու համար։

Սակայն, հրահանգիչը ինչպիսի լավ աշխատող էլ լինի, միևնույն է, մենակ ոչինչ անել չի կարող։ Նա իր աշխատանքը պետք է կազմակերպի մարդկանց միջոցով, միջոցառումներն անցկացնի պարտիական ակտիվի օգնությամբ։ Նա լուրջ ուշադրություն պետք է դարձնի պարտիական, սովետական, տնտեսական կադրերի ուսուցմանը, նրանց դաստիարակությանը։ Խոսքն այն մասին չէ, որ ամեն օր պետք է ցուցում տալ այս կամ այն աշխատողին կամ նրա փոխարեն ինչ որ բան անել։ Խնդիրն այն է, որ յուրաքանչյուր աշխատող զգա պարտիական պատասխանատվություն հանձնարարված գործի նկատմամբ և բարեխղճությամբ կատարի իր պարտականությունները։ Քիչ չեն փաստերը, երբ հրահանգիչը լինելով կազմակերպություններում, ինչպես հարկն է չի զբաղվում աշխատանքի առաջավոր փորձի ընդհանրացմամբ։ Լինելով կազմակերպությունում, մեծ կրքոտությամբ լծվում է թերությունների բացահայտմանը, աչքաթող անելով այն լավը, դրականը, որ կա տվյալ կազմակերպության աշխատանքում։ Կամ հակառակը՝ անտեսում է թերությունները, դադարում է նկատել ներքին օղակներում տեղ գտած բացերը, որը մեծ վնաս է հասցնում հենց իրենց՝ կադրերին։ Այս դեպքում հրահանգիչը լայն մասսաների շրջանում պարտիական օրգանի պատասխանատու ներկայացուցիչը լինել չի կարող։

Այդ տեսակետից բնորոշ է հետևյալ օրինակը։ ՀԿՊ Աղինի շրջանային կոմիտեն վերջերս լուրջ զբաղվեց Նորաբերի կոլտնտեսության հարցով։ Այստեղ ընկած էր աշխատանքային կարգապահությունը, անհրաժեշտ պայմաններ չէին ստեղծված խոզաբուծության և թռչնաբուծության եկամտաբերությունը բարձրացնելու համար։ Մեծ էին անասունների անկումները և դեբիտորական պարտքերը, անուշադրության էր մատնված հանրային շինարարությունը և այլն։

Դեռևս 1958 թվականի սեպտեմբերին շրջանային կոմիտեն խիստ դատապարտել էր Նորաբերի կոլտնտեսության ղեկավարներ Ա. Գալստյանի, Վ. Ղազարյանի և Գ. Կիրակոսյանի աշխատանքի ոչ ճիշտ մեթոդները։ Սակայն նրանք անհրաժեշտ հետևություն չարեցին, է՛լ ավելի թուլացրին պարտիական կազմակերպության ու տնտեսության ղեկավարումը, որի համար էլ շրջկոմի բյուրոն աշխատանքից ազատեց կոլտնտեսության վարչության նախագահին, հաշվապահին և պարտկազմակերպության քարտուղարին։ Շրջկոմի հրահանգիչ Ժ. Ավետիսյանը հաճախ է եղել այդ կազմակերպությունում և նկատելով այդ ամենը, անհրաժեշտ նախաձեռնություն հանդես չի բերել հարցերը տեղում լուծելու համար։

Հրահանգիչները լինելով սկզբնական պարտիական կազմակերպություններում, միշտ չէ, որ քարտուղարներին սովորեցնում են պարտիական աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Նրանց մի մասը հաճախ հանդես է գալիս թե-

րությունների մասին շրջկոմին միայն ինֆորմացիա ներկայացնողի դերում: Վերջերս ՀԿՊ Լենինյան շրջկոմի բյուրոն նշեց, որ հրահանգիչ Ց. Նիկոյանը դեռևս բավարար օգնություն ցույց չի տալիս սկզբնական պարտիական կազմակերպություններին. ընկ. Նիկոյանը, օրինակ, շատ հաճախ լինում է № 1 ավտոբուսային պարկի պարտիական կազմակերպությունում, սակայն այստեղ գործը չի լավանում, վատ է աշխատանքային կարգապահությունը, թերակատարված է անցած ամիսների պլանը:

Սկզբնական պարտիական կազմակերպություններին ցույց տրվող օգնության գործում հրահանգչի դերը և պատասխանատվությունը բարձրացնելու համար պարտիայի քաղկոմ-շրջկոմները պետք է լրջությամբ զբաղվեն նրանց աշխատանքի բովանդակության հարստացման հարցերով, արմատապես բարելավեն հրահանգչական կազմի հետ տարվող աշխատանքի ձևերն ու մեթոդները:

Վերջին ժամանակներս հրահանգիչների հետ տարվող աշխատանքը, անշուշտ, պարտիայի շատ շրջկոմներում զգալիորեն բարելավվել է:

Շրջանային կոմիտեներում հաճախակի հրավիրվում է ապարատի աշխատողների խորհրդակցություն, որտեղ յուրաքանչյուր հրահանգիչ համառոտակի ինֆորմացիա է տալիս իր գործունեության և անելիքների մասին: Այդ ձևն իրեն արդարացնում է և հնարավորություն տալիս ամփոփելու աշխատանքի դրական փորձը, սիստեմատիկորեն հսկելու և ուղղություն տալու հրահանգչի պրակտիկ գործունեությանը:

Պարտիայի որոշ շրջանային կոմիտեներ (Ամասիայի, Լենինյան, 26 կոմիսարների անվան և այլ շրջկոմներ) հրահանգչի դերն ավելի բարձրացնելու նպատակով բյուրոյում քննարկել են առանձին հրահանգիչների զեկուցումները, նրանց կողմից սպասարկվող կազմակերպություններում կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակման վիճակը: Հրահանգչի աշխատանքի փորձի քննարկումը շրջկոմի բյուրոյում մեծ չափով օգնում է պարտիական ապարատին ավելի ճիշտ պատկերացում ունենալու հրահանգչի աշխատանքի ոճի վերաբերյալ, նպաստում է հենց իրենց՝ հրահանգիչներին, պարզ տեսնելու իրենց աշխատանքի պրակտիկայում տեղ գտած բացերն ու սխալները, համեմատելու մեկի աշխատանքի ոճը մյուսի հետ և հանգելու որոշակի եզրակացության:

Հրահանգիչների կողմից սկզբնական պարտիական կազմակերպություններին ցույց տրվող օգնության հարցերի քննարկումը միաժամանակ բացահայտում է շրջանային կոմիտեների քարտուղարների կողմից հրահանգիչների հետ տարվող աշխատանքի թերությունները և օգնում է նրանց՝ բազմազան դարձնելու ապարատի հետ անցկացվող միջոցառումները:

ՀԿՊ ԿԿ պարտօրգանների բաժինն անցկացրեց ՀԿՊ Արտաշատի, Վեդու և Էջմիածնի շրջանային կոմիտեների հրահանգիչների փնջային խորհրդակցություն: Այնտեղ արծարծվեցին հարցեր, որոնք վերաբերում են պարտիական ապարատի աշխատանքի վերակառուցմանը՝ ՍՄԿՊ համագումարի պահանջների ոգով:

Խորհրդակցությունը ցույց տվեց, որ հրահանգչի որակավորման բարձրացման, նրա մտահորիզոնի ընդլայնման հարցը պարտիական օրգանների կարևորագույն խնդիրներից մեկն է: Խորհրդակցության մասնակիցները դնում էին հրահանգչի հետ կատարվող աշխատանքի ուժեղացման և նրանց նախաձեռնության բարձրացման հարցերը: Խոսվեց այն մասին, որ աշխատանքի արդյունավետությունը կախված է հրահանգչի մակարդակից, նրա բանիմացությունից, բայց շրջանային որոշ կոմիտեներ չեն մտահոգված հրահանգիչների տեսական մակարդակը, հատկապես նրանց տնտեսագիտական գիտելիքները բարձրացնելու հարցերով:



ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումը խոշոր իրադարձություն է մեր պարտիայի ու ժողովրդի կյանքում: Ելնելով պլենումի պահանջներից, պարտիական կոմիտեի հրահանգչի խնդիրն է՝ կազմակերպական աշխատանքի հետագա բարելավմամբ օգնել պարտիական կազմակերպություններին հաջողությամբ գլխավորելու տեխնիկական առաջադիմության համար մղվող պայքարը, կոնկրետ ու նպատակասլաց կերպով զբաղվելու արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման հարցերով, պաշտպանելու և հաստատակամորեն արտադրության մեջ արմատավորելու այն ամենն, ինչ պրոգրեսիվ է և առաջավոր, վճռական պայքար մղելու լճացածության դրսևորումների դեմ, նոր տեխնիկայի ու նորարարների փորձի նկատմամբ արհամարհական վերաբերմունքի դեմ:

Յուրաքանչյուր հրահանգչի անկապտելի հատկությունները պետք է լինեն՝ նորի զգացումը, մշտական հոգատարությունն աշխատանքի արտադրողականության աճի, արտադրության կուլտուրայի բարձրացման նկատմամբ: Անհրաժեշտ է, որ հրահանգիչները մշտապես կատարելագործեն պարտիական վերահսկողության ձևերն ու մեթոդները, նկատի ունենալով, որ արդի պայմաններում վերահսկողության և կատարման ստուգման հարցերը գլխավորն են և պետք է գտնվեն բոլոր պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում:

Հրահանգիչների որակի բարելավման, նրանց ընդհանուր զարգացման ու մտահորիզոնի լայնացման հարցը այսօր առավել քան սուր է դրվում: Ինչքան բարձրանում է պահանջկոտությունը հրահանգչի աշխատանքի նկատմամբ, այնքան անհրաժեշտ է դառնում ուժեղացնել նրան ցույց տրվող օգնությունն ու կոնկրետ ղեկավարությունը: Շրջկոմի քարտուղարները պետք է խորանան հրահանգիչների աշխատանքում, անհրաժեշտ ուղղություն ցույց տան նրանց գործունեությանը: Հրահանգիչների հետ սիստեմատիկաբար տարվող աշխատանքը պարտիական ապարատի մարտունակության բարձրացման գրավականներից մեկն է:

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՊԱՅՔԱՐԸ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԻ ՀԱՄԱՐ

*ՀՐ. ՍԻՄՈՆՅԱՆ*

*Երևանի ալյումինագործների կոլեկտիվը ընթացիկ տարվա անցած ութ ամսվա պլանը կատարեց 101,5 տոկոսով, երկրին տալով տասնյակ միլիոն ռուբլիների արտապլանային արտադրանք։ Գործարանի կոլեկտիվը անցած տնտեսական տարում մի քանի անգամ արժանացավ ՀՍՍՌ Ժողտնտխորհի և ՀԱՄԽ-ի առաջին մրցանակի և նվաճեց փոխանցիկ դրոշը։ Այս հաջողություններին, անշուշտ, մեծ չափով նպաստեցին այն միջոցառումները, որ կիրառվեցին տեխնոլոգիական պրոցեսների հետագա կատարելագործման բնագավառում։*

*1958 թվականին գործարանում յուրացվեց արդյունաբերական մասշտաբով կառուցված, միության մեջ առաջին գազամաքրման փորձնական սարքավորման շահագործումը։ Գործարանի կենտրոնական լաբորատորիայի ու գազամաքրման ցեխի, ինչպես նաև Միության մի շարք գիտա-հետազոտական կոլեկտիվների համատեղ ջանքերով ճշտվեց այդ սարքավորումների աշխատանքի ռեժիմը և երկրի մյուս ալյումինի գործարանների համար մշակվեցին գազամաքրման նույնատիպ սարքավորումներ նախագծելու տվյալներ։ Նշված ցեխի գործարկումով լայն հնարավորություններ են ստեղծվելու նաև գործարանի շրջապատը վնասակար գազերի ազդեցությունից ազատելու և արտադրության համար թանկարժեք նյութեր ստանալու։*

*Պարտիական կազմակերպության բյուրոն և տեխնիկական խորհուրդը, այս ուղղությամբ կատարված աշխատանքն ամփոփելու նպատակով, հրավիրեցին տեխնիկական կոնֆերանս, որին մասնակցում էին նաև ալյումինի և մագնեզիումի Համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի, ՀՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Քիմիայի ինստիտուտի և մի շարք գործարանների ներկայացուցիչներ։ Այստեղ գործարանի աշխատանքներին տրվեց դրական գնահատական։*

*Գործարանի կավահողի փորձնական ցեխի կոլեկտիվը մեծ աշխատանքներ է կատարել տեղական նեֆելինային սիենիտների կոմպլեքսային վերամշակման գործում։ Բացի ալյումինի արտադրության համար հիմնական հումք հանդիսացող կավահողից, սոդայից ու սոդապրոդուկտներից ստացվել են նաև ո՛չ պակաս արժեքավոր այլ նյութեր։ Ցեխի երիտասարդ կոլեկտիվի ուժերով մոնտաժվեց համապատասխան տեխնոլոգիական կիսաարդյունաբերական սարք, որի միջոցով հետագայում ստացվեց սպեկտրալ մաքուր երևանիտի առաջին նմուշը, ինչպես նաև մեծ քանակությամբ նատրիումի և կալցիումի մետասիլիկատ։*

*Այստեղ համառ աշխատանք տարվեց նաև Ջրվեժի կավերից գիպս ստա-*



*նալու ուղղությամբ։ Ստացված տվյալները կարող են օգտագործվել ինչպես այդ կավերի արդյունաբերական պաշարները ճշտելու, այնպես էլ նրանց հարստացման կոմբինատի նախագծի տեսական հաշվարկումներ կատարելու համար։*

*Ցեխի կոլեկտիվը միանգամից չի հասել այդ հաջողություններին։ 1958 թվականի չորրորդ եռամսյակում ցեխը սկսեց զգալի կերպով թերակատարել նախատեսված հետազոտական աշխատանքի թեմատիկ պլանը։ Գործարանի պարտբյուրոն ժամանակին նկատեց այդ և միջոցներ ձեռնարկեց թերակատարման պատճառները բացահայտելու և պետական առաջադրանքները ժամանակին կատարելու համար։ Պարտբյուրոյի հանձնարարությամբ գործարանի գլխավոր ինժեներ Լ. Աղասիևը, ինժեներ տեխնոլոգներ՝ Գ. Թոքմաջյանը և Ա. Սաֆարյանը հանգամանորեն ուսումնասիրեցին հետազոտական աշխատանքների վիճակը ցեխում։*

*Ուսումնասիրության արդյունքների մասին նրանք զեկուցեցին պարտբյուրոյի ընդլայնված նիստում, որին մասնակցում էին ցեխի բոլոր հերթափոխների ու ծառայությունների պետերը, ՀՍՍՌ Գիտությունների ակադեմիայի և Ժողտնտխորհի Քիմիայի ինստիտուտի այն աշխատակիցները, որոնց գիտական հետազոտությունները սերտորեն կապված են ցեխի աշխատանքների հետ։ Հարցի մանրամասն քննարկումը ցույց տվեց, որ ցեխի ղեկավարությունը տարվելով որոշ հաջողություններով, աչքաթող է արել թեմատիկ պլանի այնպիսի կարևոր հարցեր, ինչպիսիք են երևանիտի ստացման, նեֆելինային սիենիտների մշակման սխեմայի և մեթոդների կատարելագործման, լեռնաքիմիական կոմբինատի համար անհրաժեշտ տվյալների նախապատրաստումը և այլն։*

*Ալյումինի արդյունաբերության տեխնիկական առաջընթացի ուղղությամբ որոշակի աշխատանք է կատարում գործարանի կենտրոնական լաբորատորիայի կոլեկտիվը։ Լաբորատորիայի և էլեկտրաարդյունաբերության գիտա-հետազոտական ինստիտուտի՝ Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանին կից ֆիլիալի կոլեկտիվները 1958 թվականից համատեղ աշխատանքներ են կատարում ալյումինի ստացման տեխնոլոգիական պրոցեսը կոմպլեքսային ավտոմատացման ենթարկելու ուղղությամբ։*

*Դրա արդյունքը եղավ այն, որ 1958 թվականին կազմվեց արդյունաբերական մասշտաբի փորձնական սարքի նախագիծը, որի համաձայն գործարանում այժմ ավարտվում է նոր կոնստրուկցիայի փորձնական վաննայի կառուցումը, իսկ Երևանի Մաթեմատիկական մեքենաների գիտա-հետազոտական ինստիտուտի հետ միասին գործարանը աշխատում է ստեղծել տեխնոլոգիական պրոցեսները կարգավորող հաշվիչ մեքենաներ։*

*Միության նույնատիպ առաջավոր գործարանների օրինակով այստեղ ևս մեծ ուշադրություն է հատկացվում ռացիոնալիզատորական և գյուտարարական աշխատանքների ծավալմանը։ 1958 թվականի երկրորդ կիսամյակի սկզբներին պարտբյուրոն խոր կերպով ուսումնասիրեց ռացիոնալիզացիայի և գյուտարարության վիճակը գործարանում և այն քննարկվեց պարտիական կազմակերպության ընդհանուր ժողովում։ Ելույթ ունեցող արտադրության առաջավորները, կոմունիստները բացահայտեցին այդ կարևոր գործում տեղ գտած մի շարք թերություններ, որոնց վերացման վրա էլ հրավիրեցին գործարանի*

*տեխնիկական ղեկավարության, տեխնիկական խորհրդի և պարտիական կազմակերպության բոլոր անդամների ուշադրությունը:*

*Երբ պարտիական կազմակերպությունը և նրա բյուրոն ամփոփում էին անցած տնտեսական տարում գործարանի գյուտարարների և ռացիոնալիզատորների կատարած աշխատանքի արդյունքները, պարզվեց, որ արված 308 ռացիոնալիզատորական առաջարկություններից արտադրության մեջ արմատավորվել է 154-ը, որի շնորհիվ տնտեսվել է 610 հազար ռուբլի: Այնպիսի ռացիոնալիզատորներ, ինչպիսիք են՝ կոմունիստներ Վ. Ավետիսյանը, Մ. Աղաբաբյանը, Գ. Թոքմաջյանը, Պ. Սահակյանը, Ա. Ստամբոլցյանը, վարպետներ՝ Հ. Ջախմախչյանը, Պ. Խաչատրյանը և շատ ուրիշներ, ոչ մի ջանք չեն խնայում արտադրության տեխնոլոգիայի անընդհատ կատարելագործման, էլեկտրոլիզի վաննաների կոնստրուկցիան կատարելագործելու, աշխատատար շատ պրոցեսներ կոմպլեքսային մեքենայացման ենթարկելու համար: Նրանց շնորհակալ աշխատանքի շնորհիվ գործարանն ամեն տարի տնտեսում է տասնյակ հազար ռուբլի, մեծ քանակությամբ հումք, էլեկտրաէներգիա և օժանդակ նյութեր: Մյուս կողմից այն մեծ չափով բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, բարելավում արտադրանքի որակը, իջեցնում ինքնարժեքը և, որ ամենագլխավորն է, հեշտացնում բանվորների աշխատանքը:*

*Գործարանի կենտրոնական լաբորատորիայի պարտիական կազմակերպության քարտուղար, ճանաչված նորարար Գ. Թոքմաջյանը արժեքավոր առաջարկություններ է մտցրել գազամաքրման ցեխի ֆլոտացիայի սխեմայում, որի շնորհիվ երկու անգամ բարձրացել է ֆլոտացիոն սարքավորումների արտադրողականությունը և տարեկան տնտեսվել է 34 հազար ռուբլի: Էլեկտրոլիզի վաննայի մշակումը էլեկտրոլիզնիկներից պահանջում էր ֆիզիկական մեծ ուժ: Դրա համար էլ գործարանի պարտբյուրոն քննարկեց էլեկտրոլիզի վաննաներում տեխնոլոգիական մշակումը մեքենայացնելու հարցը:*

*Հարցի լավ նախապատրաստումը և գործնական քննարկումը տվեց իր դրական արդյունքները: Գործարանի փորձված վարպետներ Ն. Շահբազյանի և Գ. Այվազյանի ջանքերով մեքենայացվեց էլեկտրոլիզի վաննայում տեխնոլոգիական վերամշակման դժվար պրոցեսը: Ճանաչված ռացիոնալիզատոր Հ. Ջախմախչյանը հաջողությամբ լուծեց վաննայում էլեկտրալարվածության կանոնավորման պրոցեսը մեքենայացնելու հարցը: Աշխատանքներ են տարվում վաննան կավահողով անընդհատ սնելու ուղղությամբ:*

*Գործարանում միջոցներ են մշակվում ալյումինի ստացման պրոցեսը կոմպլեքսային ավտոմատացման ենթարկելու համար: Ալյումինի ստացման պրոցեսի կոմպլեքսային ավտոմատացումը էլեկտրոլիզնիկին կազատի ձեռքով կատարվող ծանր աշխատանքներից, որով նա կդառնա ավտոմատների աշխատանքը հսկող բարձրորակ մասնագետ:*

*Ռացիոնալիզատորներին բազմակողմանի օգնություն ցույց տալու նպատակով պարտբյուրոյի նախաձեռնությամբ շատ ինժեներներ առանձնացվել են որպես կոնսուլտանտներ, որոնք օգնում են ռացիոնալիզատորներին ինչպես իրենց մտահղացումները իրականացնելու, այնպես էլ գծագրեր ու հաշվումներ կատարելու գործում: Գործարանի ռացիոնալիզատորներին մեծապես օգնեց մեխանիկական ցեխին կից փորձնական արհեստանոցի կազմակերպումը: Ռացիոնալիզատորներին տեխնիկական օգնություն է ցույց տալիս նաև գործարանի տեխնիկական գրադարանի՝ «Ռացիոնալիզատորի անկյունը»-ը,*



*որտեղ նրանք կարող են գտնել իրենց հետաքրքրող շատ գրքեր, հայրենական և արտասահմանյան գիտության նվաճումների մասին աշխատություններ, բրոշյուրներ և բյուլետեններ:*

*Այժմ գործարանում լայն աշխատանք է տարվում ՀՍՍՌ Ժողտնտխորհի և ՀԱՄԽ-ի կողմից հայտարարված մրցության մեջ առաջնություն շահելու համար: Ալյումինի գործարանը ընդլայնման լայն հեռանկարներ ունի յոթնամյակի ընթացքում: 1965 թվականին գործարանի համախառն արտադրանքի ծավալը, 1958 թվականի համեմատությամբ, կաճի 68 տոկոսով:*

*Տեխնիկական կատարելագործման, կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման մեծ հեռանկարներ ունի գործարանի էլեկտրոլիզի ցեխը: Յոթնամյակի ընթացքում ցեխում ալյումինի արտադրությունը կաճի 16 տոկոսով: Այդ կկատարվի, մի կողմից, հիմնական տեխնոլոգիական ագրեգատների պարապուրդները կրճատելու, մյուս կողմից՝ այդ ագրեգատների կոնստրուկցիայի և տեխնոլոգիական պրոցեսների հետագա կատարելագործման միջոցով: Գործարանի կենտրոնական լաբորատորիայի և ցեխի ուժերով արդեն հետազոտական աշխատանքներ են տարվում էլեկտրոլիզի բաղադրությունը բարելավելու համար:*

*Նախատեսված է յոթնամյակի ընթացքում կավահողի փորձնական ցեխը լայնացնելու և սարքավորումներով հագեցնելու միջոցով հնարավորություն ստեղծել համեմատաբար փոքր մասշտաբով փակ ցիկլում վարելու տեխնոլոգիական բոլոր պրոցեսները:*

*ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների քննարկման ժամանակ ցեխի կոմունիստներն իրենց ելույթներում իրավացիորեն քննադատեցին ՀՍՍՌ Ժողտնտխորհին այն բանի համար, որ կոնկրետ միջոցներ չեն ձեռնարկվում ցեխի լայնացման համար: Գործարանի մշտական գործող արտադրական խորհրդակցությունը քննարկեց 1959 թվականի կազմակերպական-տեխնիկական միջոցառումների պլանը, որով նախատեսվում է մեքենայացնել էլեկտրոլիզի ցեխի 2-րդ տեղամասի վաննաների անոդների բարձրացման, բեռնման և բեռնաթափման, վաննաներում տեխնոլոգիական մշակման աշխատանքները և ուրիշ աշխատատար պրոցեսներ: Նախատեսվում է խտացած օդի միջոցով հումքը հասցնել մինչև էլեկտրոլիզի վաննաները, դրանք անընդհատ սնել և կատարելագործել տեխնոլոգիական պրոցեսները: Լուրջ միջոցառումներ են նշված տեխնոլոգիական պրոցեսներն ու սարքավորումների աշխատանքն ավտոմատացնելու ուղղությամբ:*

*Այս պրոբլեմի դրական լուծումը կապահովի այնպիսի տեխնոլոգիական պարամետրերի օգտագործում, որը կթեթևացնի ծանր աշխատանքը և կապահովի արտադրանքի ինքնարժեքի հետագա իջեցումը:*

---

# ԴՊՐՈՑԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ, Ժ. ԹՈՓՉՅԱՆ*

*Դպրոցի առջև դրված նոր խնդիրները պարզորոշ շարադրված են ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներում, ինչպես նաև «Կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման և ՍՍՌՄ-ում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին» ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընդունած օրենքում։ Անտարակույս այս կարևոր խնդիրների իրականացման համար վճռական դեր ունեն կատարելու դպրոցական պարտիական կազմակերպությունները։*

*Երևան քաղաքի դպրոցական պարտիական կազմակերպությունները կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու նպատակով լուրջ միջոցառումներ են ձեռնարկել պոլիտեխնիկական կրթությունը բարելավելու և դրա համար համապատասխան նյութական բազա ստեղծելու ուղղությամբ։ Մեծ տեղ տալով առարկայական խմբակների և հանձնաժողովների գործունեությանը, պարտիական կազմակերպությունների օգնությամբ նրանց աշխատանքում արմատավորվում են տեսական և մեթոդա-մանկավարժական այնպիսի թեմաներ, որոնք բխում են ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներից։*

*ՍՄԿՊ XX համագումարի որոշումներից հետո Երևանի դպրոցներում մեծ թափ ստացավ պոլիտեխնիկ ուսուցումը։ Պուշկինի, Ձերժինսկու, Բելինսկու, Կրուպսկայայի, Շևչենկոյի անվան և մի շարք այլ դպրոցներում ստեղծվել են մեխանիկական, փայտամշակման ընդարձակ արհեստանոցներ, որոնք ապահովված են դազգահներով, սարքերով և համապատասխան մասնագետ ղեկավարներով։ Չեխովի անվան դպրոցի պարտիական կազմակերպության և դիրեկցիայի հետևողական աշխատանքի շնորհիվ հաջողվեց ստեղծել լրիվ կահավորված մետաղամշակման և փայտամշակման արհեստանոցներ, որոնց արտադրանքն արդեն նյութական արժեք է ներկայացնում։ Աշակերտների ուժերով դպրոցի մետաղամշակման արհեստանոցում պատվիրատուների համար պատրաստվել են 10.000 ռուբլու արժողությամբ վերարկուների կախիչներ և էլեկտրալուսամփոփիչներ, իսկ փայտամշակման արհեստանոցում մանկապարտեզների համար պատրաստվել են սեղաններ, աթոռներ, նկարների շրջանակներ և ուսումնական զանազան առարկաներ։ Նրանց ձեռքով կատարված աշխատանքների դիմաց ստացված գումարը տրամադրվել է լաբորատորիաների և կաբինետների կահավորման և այդ աշխատանքներում աչքի ընկած մի խումբ աշակերտների հեռավոր էքսկուրսիա (Թբիլիսի—Մոսկվա) ուղարկելու նպատակին։*

*Այժմ դպրոցական պարտիական կազմակերպություններին հուզում է ոչ միայն դպրոցականների ուսման առաջադիմության բարձրացման հարցը, այլև նրանցից կյանքին պիտանի երիտասարդներ պատրաստելը։*

*№ 77 դպրոցի պարտիական կազմակերպությունը (քարտուղար Ռ. Եղի-*



*գարյան) դեռևս 1957—58 ուս. տարվանից իր առջև խնդիր էր դրել՝ բարձր դասարանների աշակերտների համար արտադրական ուսուցումը կազմակերպել այնպես, որ շրջանավարտները հասունության ատեստատի հետ միասին կարողանան ստանալ նաև որևէ մասնագիտական որակավորում։ Այս տարի դպրոցի շրջանավարտներից 25-ը բացի ատեստատից, ստացան նաև խառատի, փականագործի, լաբորանտի և այլ մասնագիտությունների գծով վարպետի որակավորում։ Նրանք կարող են անմիջապես աշխատանքի անցնել դպրոցի շեֆ՝ ալյումինի գործարանում։ Սա կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու, դպրոցի վերակառուցման մասին օրենքի իրականացման առաջին քայլերն են։*

*Դպրոցներում նոր է և այն, որ աշակերտներն իրենք են կատարում դպրոցական շենքերի և գույքի վերանորոգումը։ Երևան քաղաքում առաջին անգամ Ձերժինսկու անվան դպրոցի պարտիական կազմակերպությունը եղավ այդ գործի նախաձեռնողը։ Պարտիական կազմակերպությունը (քարտուղար Տ. Ասրյան) այդ հարցը դարձրեց կոմերիտական կազմակերպության ժողովի քննարկման առարկա։ Կազմվեցին աշխատանքային բրիգադաներ, որոնք ձեռնամուխ եղան դպրոցական շենքի և գույքի վերանորոգման։ Ձերժինսկու անվան դպրոցի փորձով այժմ գրեթե բոլոր դպրոցական շենքերի և գույքի վերանորոգման աշխատանքները կատարվում են աշակերտների միջոցով։ Այսպիսով, դպրոցներում արդեն հիմք է դրվել աշխատանքային ճիշտ դաստիարակության և երևում են նրա առաջին սաղմերը։*

*Խրախուսելի է նաև Կրուպսկայայի, Ձերժինսկու, Պուշկինի անվան դպրոցների աշակերտների աշխատանքը՝ իրենց դպրոցներին կից արհեստանոցների կառուցման գործում։ № 49 դպրոցում երկար տարիներ ֆիզիկական դաստիարակության գործը ձախողվում էր, որովհետև դպրոցը չուներ սպորտ հրապարակ, հնարավոր չէր կազմակերպել սպորտ սեկցիաների աշխատանքը։ Դպրոցի պարտիական կազմակերպությունը և դիրեկցիան անցած ուս. տարում աշակերտների միջոցով ձեռնամուխ եղան սպորտ հրապարակի կառուցման աշխատանքներին։ Որոշ ժամանակ անց դպրոցն ունեցավ հիանալի սպորտ հրապարակ, որի համար աշակերտությունն արժանացավ ՀԼԿԵՄ Կենտկոմի «Լավագույն աշակերտական շինարարական բրիգադա» հուշադրոշին։*

*Սակայն վատն այն է, որ մի շարք դպրոցների պարտիական կազմակերպություններ (№ № 47, 60, երկաթգծի № 36, Գրիբոեդովի անվան և այլն) դեռևս սիստեմատիկաբար չեն զբաղվում աշակերտության պոլիտեխնիկ ուսուցման հարցերով։ Պոլիտեխնիկ ուսուցման նկատմամբ անհոգությունը հասել է այնտեղ, որ № 60 դպրոցի փայտամշակման արհեստանոցի ղեկավարությունը հանձնել են բիոլոգիայի դասատու Ա. Նուրիջանյանին, որը չի հասկանում այդ գործը։*

*№ № 35, 48, 37, 54 և մի շարք այլ դպրոցների պարտիական կազմակերպությունները լրջորեն չեն զբաղվում մաթեմատիկայի, ֆիզիկայի և բիոլոգիայի առարկաների դասավանդման որակի բարձրացման հարցերով։ Երբեմն այդ առարկաների դասավանդումն ընթանում է կյանքից կտրված, սահմանափակվելով միայն գրատախտակով և կավիճով։*

*Դպրոցական պարտիական կազմակերպությունների խնդիրն է մոտ ապագայում լիովին վերացնել այն կտրվածությունը, որ դեռևս գոյություն ունի կրթության ու պրակտիկայի միջև, խորապես շաղկապել ուսուցումը հանր-*

*օգուտ աշխատանքի հետ, պրակտիկ կերպով լուծել բազմակողմանիորեն զարգացած մարդու դաստիարակման գործը։*

*Սովորողների աշխատանքային և բարոյական դաստիարակության համար կարևոր նշանակություն ունի ինքնասպասարկումը։ Երևան քաղաքի դպրոցներում դեռևս 1958 թվի վերջերին հիմք դրվեց ինքնասպասարկման, որն ավելի ուժգնությամբ ծավալվեց ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ ինքնասպասարկման անցնելու մասին կայացրած որոշումից հետո։ Որոշման մեջ նշված է, որ սովորողների ինքնսպասարկման աշխատանքը նպաստում է նրանց նախաձեռնության և ինքնագործունեության զարգացմանը, բարձրացնում է կարգապահությունը, աշակերտներին ներարկում է պետական գույքի նկատմամբ հոգատար վերաբերմունքի զգացում, սեր և հարգանք դեպի աշխատանքն ու աշխատավորը, դրական ազդեցություն է ունենում սովորողների վարքի, կուլտուրայի վրա։*

*Արձագանքելով Կիրովյան շրջանի դպրոցների կոչին, այժմ քաղաքի դպրոցներում լայն ծավալ է ստացել ինքնասպասարկումը, որի շնորհիվ վերացել են գույքը փչացնելու դեպքերը, զգալի չափով բարելավվել է դպրոցների սանիտարական վիճակը, աստիճանաբար փոխվում է աշակերտների վերաբերմունքը դեպի աշխատանքը, աճում է նրանց հոգատարությունը հանրային գույքի պահպանման նկատմամբ։ Այժմ դպրոցներում ինքնասպասարկման հարցով զբաղվում են պարտիական, կոմերիտական ու պիոներական կազմակերպությունները։ Դպրոցներում ստեղծվել են առանձին շտաբներ, որոնք ամփոփում են օրվա, շաբաթվա աշխատանքները։ Ինքնասպասարկման գործը դարձել է մի մեծ շարժում, սոցմրցման են դուրս եկել առանձին շրջաններ, դպրոցներ, դասարաններ։*

*Ինքնասպասարկման գործը դպրոցներում չի սահմանափակվում միայն դասասենյակների և դպրոցի մաքրությանը հետևելով։ Այժմ աշակերտների ուժերով են նախապատրաստվում ֆիզիկայի և քիմիայի փորձերը, դիդակտիկ նյութերն ու սարքերը, ինքնաշեն գործիքները, դպրոցականներն իրենց պատրաստած սարքերի վրա են լուծում երկրաչափական ու եռանկյունաչափական խնդիրները։ Նրանց թողարկած իրերը լուրջ ուշադրության են արժանացել վերջերս դպրոցներում բացված ցուցահանդեսներում։*

*Լենինյան շրջանի № 70 դպրոցը լաբորատոր կաբինետների հարմարություններ չունենալու պատճառով տարիներ շարունակ հնարավորություն չուներ որևէ փորձ դնելու։ Անցած ուսումնական տարվանից պարտիական կազմակերպությունը դպրոցի դիրեկցիայի հետ միասին ձեռնամուխ եղավ այդ գործի իրականացմանը։ Աշակերտական կոլեկտիվի հանրօգուտ աշխատանքի շնորհիվ այժմ դպրոցն ունի հիանալի դիդակտիկ նյութեր, սարքեր, մոդելներ, քերականական սխեմաներ ու հերբարիումներ։ Այս բնագավառում, իհարկե, կան նաև թերություններ։ Մի շարք դպրոցներում ինքնասպասարկման աշխատանքներին դեռևս չեն մասնակցում դպրոցի բոլոր աշակերտները, ինքնասպասարկման աշխատանքներում աչքի ընկած աշակերտները ինչպես հարկն է չեն խրախուսվում։*

*Դպրոցի վերակառուցման մասին օրենքի կենսագործումը համաժողովրդական գործ է։ Միայն դպրոցները ի վիճակի չեն լինի այդ մեծ գործի իրականացմանը, եթե նրանց օգնության չգան պարտիական, սովետական օրգանները, արտադրական ձեռնարկությունները։ Հատկապես մեծ է արտադրական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների դերը դպրոցին շեֆական օգնություն ցույց տալու, պոլիտեխնիկ ուսուցման կիրառման, արհեստանոցների հարստացման, ինչպես նաև արտադրական պրակտիկայի անցկացման գործում։*



*Դպրոցներում աշխատանքային դաստիարակության հետ միասին պետք է անընդհատ կատարելագործել ուսուցման պրոցեսը, աշակերտներին զինել խոր գիտելիքներով։ Անցած ուսումնական տարվա ամփոփումները ցույց տվին, որ Երևան քաղաքի Ձերժինսկու, Բելինսկու, Կրուպսկայայի, Իսահակյանի անվան և մի շարք այլ դպրոցների պարտիական կազմակերպություններ զգալի աշխատանք են կատարել ուսման առաջադիմության բարձրացման բնագավառում։*

*Անցած ուսումնական տարվա սկզբին ուսման առաջադիմությունը ցածր էր № 80 դպրոցում։ Պարտիական կազմակերպությունն իր ժողովներում մի քանի անգամ քննարկեց ուսումնական հարցեր, լսեց դիրեկտորի, ուսմասվարի, առարկայական հանձնաժողովների նախագահների, ինչպես նաև առանձին դասղեկների ինֆորմացիաները։ Հանձնարարվեց առանձին կոմունիստ ուսուցիչների (Գ. Վարդգեսյան, Մ. Կարապետյան, Ն. Թովմասյան) զբաղվելու հատկապես 6-րդ, 7-րդ և 8-րդ դասարաններով, որտեղ շատ ցածր էր առաջադիմությունը։ Հրավիրվեցին ծնողական, դասարանական ժողովներ, քննարկվեց այդ դասարանների առանձին աշակերտների կարգապահության և ուսման առաջադիմության հարցը։ Դասղեկների, դասավանդող ուսուցիչների, կոմունիստների հետևողական աշխատանքի շնորհիվ ուսման առաջադիմությունը զգալիորեն բարձրացել է։*

*Սակայն անհրաժեշտ է նշել, որ քաղաքի ոչ բոլոր դպրոցական պարտիական կազմակերպություններն են, որ սիստեմատիկաբար և հետևողականորեն զբաղվում են ուսումնադաստիարակչական հարցերով։*

*Երկաթգծի № 36 դպրոցում լուրջ թերություններ կան ուսումնադաստիարակչական աշխատանքներում. ցածր է ուսման առաջադիմությունը և կարգապահությունը։ Այս ամենը գրեթե չեն անհանգստացրել պարտիական կազմակերպությանը (քարտուղար Հ. Կյուրեղյան)։ Ամբողջ ուսումնական տարվա ընթացքում հրավիրվել է 8 պարտիական ժողով և ոչ մի անգամ չի քննարկվել ուսումնադաստիարակչական աշխատանքներին վերաբերող հարցը։ Ժողովներում քննարկվել են միայն վերադաս պարտիական օրգանների որոշումներ, իսկ պարտիական բյուրոյի նիստերը հրավիրվել են միայն աշխատանքի պլանները հաստատելու համար։ Այդպես է վիճակը նաև № № 47, 64 և այլ դպրոցներում։*

*Առանձին դպրոցական պարտիական կազմակերպություններում անբավարար է ծավալվում քննադատությունն ու ինքնաքննադատությունը, հաճախ էլ հաշտվողականություն է ցուցաբերվում աղաղակող թերությունների նկատմամբ։ Նման վիճակ գոյություն ունի № № 64, 43, Մայակովսկու, Հակոբ Հակոբյանի, Վորոշիլովի անվան դպրոցներում։*

*Նկատվում են նաև այնպիսի դեպքեր, երբ պարտիական կազմակերպությունների քարտուղարներն ու դպրոցի դիրեկտորները մտնում են անսկզբունքային պայքարի մեջ։ Անցած ուսումնական տարում № 64 դպրոցի դիրեկտորի (Ս. Գուլյան) և պարտիական կազմակերպության քարտուղարի (Խ. Երիցյան) հարաբերությունները այնքան էին սրվել, որ անդրադարձել էին կոլեկ-*

տիվի անդամների վրա, որի հետևանքով դպրոցում տուժում էին ուսումնադաստիարակչական աշխատանքները։ №№ 64, 47, 59 և այլ դպրոցական պարտիական կազմակերպություններ հանդես չեն բերում պահանջկոտություն դիրեկտորների, ուսմասվարների և ամբողջ ուսուցչական կոլեկտիվի աշխատանքների նկատմամբ։

Երևանի 26 կոմիսարների շրջանի որոշ դպրոցական պարտիական կազմակերպություններ անբավարար են կենսագործում ՀԿՊ Կենտկոմի 1956 թ. ապրիլի 29-ի «Միջոցառումներ ռեսպուբլիկայի դպրոցներում ռուսաց լեզվի դասավանդման վիճակը բարելավելու մասին» որոշումը։ Ռուսաց լեզու են ավանդում ուսուցիչներ Ա. Այլամազյանը (№ 63 դպրոց), Ա. Քեսյանը (№ 56 դպրոց), Ս. Հովհաննիսյանը (№ 59 դպրոց) և ուրիշներ, որոնք չեն տիրապետում այդ լեզվին։

Դպրոցական պարտիական կազմակերպությունների ուշադրությունից չպետք է վրիպեն նաև աշակերտության էսթետիկական դաստիարակության հարցերը։ Այս տարվա օլիմպիադան ցույց տվեց, որ դպրոցներում գեղարվեստական դաստիարակության հարցերին մեծ տեղ է տրված։ Աշակերտների զգալի մասն ընդգրկված է դպրոցներում գործող այս կամ այն գեղարվեստական խմբակներում, որոնց աշխատանքների ամփոփումը հանդիսացավ գեղարվեստական օլիմպիադայի եզրափակիչ համերգը, որին մասնակցեցին ավելի քան 1200 աշակերտ։ Բոլոր դպրոցներում արդեն կազմակերպված են երգեցիկ խմբեր։ Պուշկինի անվան դպրոցում կազմակերպված է տղաների առանձին երգեցիկ խումբ։ Վերջին տարիներս շարունակ բարձր գնահատականի է արժանանում Սպանդարյան շրջանի Շևչենկոյի անվան դպրոցի պարի խումբը։

Դպրոցներում տնարարության ուսուցումը օգնում է օլիմպիադաներին մասնակցողների զգեստավորումը աշակերտների ձեռքով կատարելու գործին։ Այսպես, օրինակ, «Ժողովուրդների բարեկամությունը» աշակերտության մոնտաժի զգեստները № 58 դպրոցի աշակերտներն իրենք էին կարել։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ո՛չ միայն զբաղվել աշակերտների ուսման առաջադիմության բարձրացման, աշխատանքային դաստիարակության հարցերով, այլև ճիշտ կազմակերպել նրանց արտադպրոցական և արտադասարանական աշխատանքները, զարգացնել աշակերտների գեղարվեստական ճաշակը, բարձրացնել նրանց մտահորիզոնը։

Դպրոցների առջև ծառացած կարևորագույն խնդիրների հաջող լուծման հիմնական գրավականն է՝ ամեն կերպ բարձրացնել ուսուցիչների պատասխանատվությունը ուսման, կրթության և դաստիարակության հարցերի նկատմամբ։ Այս առումով չափազանց կարևոր է ուսուցիչների քաղաքական-գաղափարական մակարդակի բարձրացման հարցը։

Նոր-Դոսի, Սպանդարյանի, Քանաքեռի Աբովյանի անվան, №№ 80, 16 և մի շարք այլ դպրոցական պարտիական կազմակերպություններ բավականին դրական աշխատանք են կատարել ՍՄԿՊ XXI համագումարի նյութերը մասսայականացնելու, ուսուցիչների քաղաքական-գաղափարական մակարդակը բարձրացնելու ուղղությամբ։ Պարտիական կազմակերպությունները սիստեմատիկաբար անցկացրել են տեսական կոնֆերանսներ, կազմակերպել են ռեֆերատների քննարկումներ, դասախոսություններ և զեկուցումներ, որտեղ ակտիվորեն հանդես են եկել ինչպես պարտիական, այնպես էլ անպարտիա-



կան ուսուցիչները։ Պարտիայի քաղկոմի նախաձեռնությամբ ռեսպուբլիկայում առաջին անգամ Սպանդարյանի շրջանի ուսուցչության համար բացվեց երկամյա կուլտուրայի համալսարան։ Համալսարանի ունկնդիրները (թվով 104 հոգի) ուսումնասիրում են արվեստը, գեղանկարչությունը, երաժշտությունը, հասարակական գիտությունները։ Անցած ուսումնական տարում նրանք լսել են «Ի՞նչ է գեղեցիկը և ինչպես ճանաչել այն մարդու մեջ», «Հայաստանի գեղարվեստի կլասիկները», «Հայկական բեմական արվեստը», «Կլասիկ սիմֆոնիկ երաժշտությունը» և այլ թեմաներով դասախոսություններ։

Կուլտուրայի համալսարանների կազմակերպումը մեծ նշանակություն ունի մանկավարժների կուլտուրական, էսթետիկական ճաշակի զարգացման գործում։ Քաղաքի պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ այս արժեքավոր փորձը կենսագործել նաև բոլոր շրջանների ուսուցչության համար։ Սակայն առանձին դպրոցների պարտիական կազմակերպություններ հոգ չեն տանում, որպեսզի բոլոր ուսուցիչներն ընդգրկվեն նոր կազմակերպված կուլտուրայի համալսարաններում։

Դպրոցական պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ մոբիլիզացնել մանկավարժական ողջ կոլեկտիվների, կոմերիտական ու պիոներական կազմակերպությունների ուժերը, դպրոցի վերաբերյալ պարտիայի և կառավարության որոշումները կենսագործելու համար։

---

> «Անհրաժեշտ է միջոցառումներ ձեռնարկել ետ մնացող կոլտնտեսությունները տնտեսապես ամրապնդելու և յուրաքանչյուր շրջանում այդպիսիներն առաջավոր կոլտնտեսություններին հասցնելու համար»:
>
> ՀԿԿ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՆԱՁԵՎԻՑ

# ԵԼՂՈՎԱՆՑԻՆԵՐԻ ԽՈՍՔՆ ՈՒ ԳՈՐԾԸ

Լուրջ հաջողությունների է հասել Կոտայքի շրջանի Ելղովան գյուղի Կույբիշևի անվան կոլտնտեսությունը, որն ունի 360 հեկտար հացահատիկային կուլտուրաների ցանք, 50 հեկտար ծխախոտի պլանտացիա, 25 հեկտար այգի, 18 հեկտար բանջարանոց, 80 հեկտար ցանովի խոտհարք և 130 հեկտար բնական խոտհարք: 1953—1954 թվականների համեմատությամբ խոշոր և մանր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է մեկ ու կես անգամ, խոզերինը՝ 5 անգամ, թռչուններինը՝ 10 անգամ: Այդ նույն ժամանակաշրջանում կոլտնտեսության անբաժանելի դրամագլուխը 700 հազար ռուբլուց հասել է 2 միլիոն 100 հազար ռուբլու: 1952—1953 և 1954 թվականների համեմատությամբ ավելի քան 4 անգամ ավելացել է աշխօրերի արժեքը: Եթե 1953 թվականին ամեն մի աշխօրին բաշխվել է 1 կգ հացահատիկ և 4 ռուբլի դրամ, ապա 1958 թվականին իրենց յուրաքանչյուր աշխօրի դիմաց կոլտնտեսականներն ստացել են 4,5 կգ հացահատիկ, 18 ռուբլի դրամ և շատ ուրիշ կենսամթերքներ: Վերջին 3—4 տարում շատ կոլտնտեսային ընտանիքներ իրենց աշխօրերի դիմաց տարեկան ստացել են 20 հազար ռուբլի կանխիկ դրամ, 4—5 տոննա հացահատիկ, 50—100 կգ յուղ, 100—150 կգ. պանիր և այլն:

Ինչպե՞ս են ձեռք բերված այդ հաջողությունները:

Կոլտնտեսային արտադրության ղեկավարումը հեշտ գործ չէ, որովհետև կոլտնտեսությունը բազմաճյուղ, բարդ և խոշոր տնտեսություն է, որտեղ հարյուրավոր աշխատավորներ ստեղծում են նյութական բարիքներ: Աշխատանքի ճիշտ կազմակերպումից է կախված այդ բազմաճյուղ տնտեսությունում աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացումը, հողի, գյուղատնտեսական մեքենաների լրիվ և արդյունավետ օգտագործումը:

Ելղովանի կոլտնտեսության վարչությունը և պարտիական կազմակերպությունը լավ են հասկացել այդ պարզ ճշմարտությունը և անում են ամեն բան, որպեսզի աշխատանքը ճիշտ կազմակերպելու միջոցով ապահովեն կոլտնտեսության հետագա զարգացումը:

Ելղովանում կա կոլտնտեսային 4 մշտական դաշտավարական բրիգադա, որտեղ աշխատում են 227 կոլտնտեսական, իսկ բրիգադներն ունեն երեքական օղակ: Տասը տարի է, ինչ արտադրական բրիգադներին ամրացված են ցանքային տարածությունները: Կոլտնտեսականները տարիներ շարունակ աշխատում են նույն բրիգադայում, որը նպաստում է հողի մշակման կատարելագործմանը:



Աշխատանքը կազմակերպելիս կոլտնտեսությունում խոշոր ուշադրություն է դարձվում բրիգադավարների և օղակավարների ընտրության վրա: Բրիգադավարներ և օղակավարներ են առաջադրվում այն կոլտնտեսականները, որոնք ամենից առաջ աչքի են ընկնում իրենց գործիմացությամբ, ունեն կազմակերպական ունակություն և հարգանք են վայելում կոլտնտեսականների մոտ: Իրենց լավ աշխատանքով օրինակելի են բրիգադավարներ Ա. Համբարձումյանը, Ա. Արզումանյանը և ուրիշներ:

Հաշվի առնելով առաջավորների փորձը, անցած 5 տարիների ընթացքում մի քանի անգամ բարձրացվել են հացահատիկային կուլտուրաների մշակության նորմաները, և դեռ չի եղել մի դեպք, որ դաշտավարական բրիգադաները թերակատարեն իրենց աշխատանքի պլանները:

Աշխատանքի ճիշտ կազմակերպման շնորհիվ բոլոր աշխատունակ կոլտնտեսականները կատարում են աշխօրերի մինիմումը և նվազ տարբերությամբ օգտվում կոլտնտեսային բարիքներից: Միջին հաշվով ամեն մի աշխատունակ կոլտնտեսական տարեկան վաստակում է 220 աշխօր:

Կոլտնտեսային արտադրության զարգացման գործում վճռական նշանակություն ունի աշխատանքի վարձատրությունը: Ինչպես ռեսպուբլիկայի մյուս կոլտնտեսություններում, այնպես էլ Ելղովանի կոլտնտեսությունում կիրառվում է գործարքային վարձատրության երկու հիմնական ձև՝ անհատական և խմբային: Երկու դեպքում էլ վարձատրությունը կատարվում է նկատի ունենալով աշխատանքի քանակը և որակը: Բայց այստեղ կարևորը և ուսանելին այն է, որ խստորեն պահպանվում է գործարքային վարձատրության սիստեմը: Մեծ ուշադրություն է հատկացվում կոլտնտեսականների անհատական շահագրգռվածությունը բարձրացնելու և նրանց խրախուսելու գործին: Կոլտնտեսականների կեսից ավելին ստացել են լրացուցիչ վարձատրություն:

Ելղովանի կոլտնտեսականները սկսած 1954 թվականից ամեն կերպ զարգացրել են հացահատիկային տնտեսությունը, ավելացրել հատկապես ցորենի արտադրությունը: Այժմ նրանք ցանում են միայն տեսակավոր սերմ, որը զտված, ախտահանված և պետական կոնդիցիայի բերված է: Իբրև կանոն, ցանքի համար առանձնացված սերմացուն մինչև հողի մեջ գցելը երկու, շատ հաճախ երեք անգամ ենթարկվում է լաբորատոր ստուգման: Դա արվում է նրա համար,— ասում է կոլտնտեսության նախագահ Զ. Զաքարյանը,— որ սերմի ընտրության հարցում որևէ սխալ թույլ չտրվի, որպեսզի հողի մեջ ընկնեն միայն կենսունակ հատիկներ: Մինչ այդ,— ավելացնում է նա,— ձմռան ամիսներին մենք ստուգում ենք նաև սերմերի ծլունակությունը:

Կոլտնտեսությունում վերջին 6 տարում խոշոր աշխատանք է կատարվել հողը բերրի դարձնելու ասպարեզում: Առաջ կոլտնտեսության համար մեծ չարիք էին մոլախոտերը, հողային տարածության մեջ գտնվող թմբերը և քարակույտերը: Վերջին տարիներին կոլտնտեսությունը վերացնում է դրանք: Այդ շնորհակալ աշխատանքը լուրջ հաջողությամբ է պսակվել: Մեքենահարմար հողերի տարածությունը 300 հեկտարով ավելացել է: Ելղովանում տեխնիկան սկսում է մուտք գործել լեռներում, վերացնելով ձեռքի աշխատանքը:

Կոլտնտեսությունում լավ է դրված ցանքերի պարարտացման գործը: Այն դաշտերում, ուր աշնանացան է կատարվում, գոմաղբն ու խառն աղբը օգ-

*տագործվում է կրկնավարի, իսկ գարնանացանի դաշտերում՝ ցրտահերկի ժամանակ։ Տեղական պարարտանյութերից բացի, օգտագործվում են նաև հանքային պարարտանյութեր, որոնց քանակը հողի մեջ տարեցտարի ավելանում է։ 1958 թվականին, 1954 թվականի համեմատությամբ, 4—5 անգամ ավելացել է հանքային պարարտանյութերի օգտագործումը։ Ռոպեսգի փչացումից պաշտպանվելն տեղական և հանքային պարարտանյութերը, կոլտնտեսությունը դրանք պահում է գոմաղբի ամբարում և հատուկ պահեստում։*

*Աճեցնելով հացահատիկի լավ ցանքեր, եղվարդցիները չեն հանգստանում դրանով, այլ խնամքով նախապատրաստվում, ժամանակին և կազմակերպված կերպով ավարտում են հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը։*

*Վերջին 5 տարում կոլտնտեսությունում մեծ աշխատանք է կատարված կովերի ցեղայնությունը բարելավելու ուղղությամբ։ Սեփական նախիրում աճել են այնպիսի կովեր, որոնք այժմ 4000-ից մինչև 5000 կգ կաթ են տալիս։ Շուտով կոլտնտեսության ամբողջ նախիրը կազմված կլինի բարձր կաթնատու կովերից։ Դա հնարավորություն կտա յոթնամյակում կաթի արտադրությունն ավելացնել 2,5 անգամ։*

*Եղվարդի կոլտնտեսությունում անասնաբուծության զարգացումը զուգակցվում է կերի կայուն բազա ստեղծելու հետ։ Նախկինում մշակած 5 հեկտարի փոխարեն, այժմ կոլտնտեսությունը մշակում է 50 հեկտար եգիպտացորեն։ Կոլտնտեսությունը հենց առաջին տարում յուրաքանչյուր հեկտարից ստացել է 450 ցենտներ կանաչ զանգված։ Այժմ սովորական երևույթ է դարձել ամեն մի հեկտարից 170 ցենտներ առվույտ և 350—500 ցենտներ կերի ճակնդեղ ստանալը։ Եթե մինչև վերջերս խոշոր և մանր եղջերավոր անասունների մսուրային շրջանի կերաբաժնում հիմնական տեղ էին գրավում չոր խոտը և ծղոտը, այժմ կերաբաժնում մեծ մասը հյութալի և խտացրած կեր է։ Բավական է ասել, որ 1954 թվականի համեմատությամբ այժմ կոլտնտեսությունում հյութալի կերի կուտակումն ավելացել է 12 անգամ, խտացրած կերինը՝ 9 անգամ։*

*Վերջին 5—6 տարում կոլտնտեսությունը խոշոր կապիտալ ներդրումներ է կատարել անասնաբուծության զարգացման նպատակով։ Կառուցվել են կովանոց, հորթանոց, ոչխարանոց, ծնարան և օժանդակ հարմարություններ։*

*Անասունների բարձր մթերատվությունը կախված է թե՛ կերի առատ և սննդարար լինելուց, և թե հոգատար խնամքից։*

*Եղվարդում խոշոր եղջերավոր անասունները և ոչխարները սովորաբար մինչև ցրտերն ընկնելը պահվում են արոտավայրերում։ Ամեն տարի մի քանի անգամ արոտավայրերը մաքրվում են թունավոր բույսերից, բաժանվում մասերի և օգտագործվում հերթականությամբ։ Արոտամասերը հերթականությամբ օգտագործելը խոշոր տնտեսական նշանակություն ունի, խոտաբույսերը լավ են աճում և անասունները առատ սնունդ են ստանում։ Դա նպաստում է մթերատվության բարձրացմանը։*

*Անասնաբուծությունը զարգացնելու գործում վճռական դերը պատկանում է կադրերին։ Վերջին տարիների ընթացքում կոլտնտեսությունում հիանալի կադրեր են աճել, որոնք իրենց լավ աշխատանքով նպաստում են անասունների մթերատվության բարձրացմանը։ Օրինակ, կթվորուհի Սրբուհի Հովսափյանն իր խնամած ամեն մի կովից անցյալ տարի ստացավ 3200 կգ կաթ, Զաբել Մելքոնյանը՝ 3000 կգ և այլն։*



*«...Մեքենայացումը,— ասում է ընկեր. Ն. Ս. Խրուշչովը,— հանդիսանում է այն ուժը, առանց որի հնարավոր չէ պահպանել ոչ զարգացման մեր տեմպերը, ոչ արտադրության խոշոր մասշտաբները»։*

*Գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման շնորհիվ Եղվարդի կոլտնտեսությունում հետզհետե ձեռքի աշխատանքը փոխարինվում է մեքենայական աշխատանքով։*

*Անբաժանելի դրամագլխից 300 հազար ռուբլի հատկացվել է գյուղատնտեսական մեքենաներ և գործիքներ գնելու համար։ Այժմ կոլտնտեսությունն ունի 3 տրակտոր, որից երկուսը դիզելային, հացահատիկային 3 կոմբայն, սերմաղտիչ, 4 բեռնատար ավտոմեքենա, ցանքերը բուժող 10 մեքենա և այլն։ Կոլտնտեսությունում կազմակերպվել է տրակտորային կոմպլեքսային բրիգադա, որտեղ կենտրոնացված են վերը հիշված արտադրական բոլոր միջոցները։ Դրա շնորհիվ կոլտնտեսությունում մեքենայացված է հացահատիկային կուլտուրաների մշակության և բերքահավաքի աշխատանքների ավելի քան 95 տոկոսը, բանջարանոցային կուլտուրաների մշակության մոտ 80 տոկոսը, ծխախոտի մշակության՝ 60 տոկոսը, սիլոսի պատրաստման՝ 98 տոկոսը, ցանքերի պարարտացման՝ 95 տոկոսը, եգիպտացորենի մշակության գրեթե 100 տոկոսը և այլն։ Մեքենայացված է նաև անասնաբուծության աշխատատար պրոցեսների զգալի մասը, ինչպես, օրինակ, մսուրային շրջանում անասունների ջրումը, գոմաղբի տեղափոխումը, կերի պատրաստումը, ոչխարների խուզը։*

*Շուտով հացահատիկի արտադրության ամբողջ աշխատանքը լիովին կմեքենայացվի։ Մեքենայացումը լայնորեն ծավալվում է բանջարանոցային կուլտուրաների մշակության, պտղատու նոր այգիներ տնկելու և անասնաբուծության բնագավառում։*

*Կոլտնտեսությունում գնալով աճում է գյուղատնտեսական տեխնիկայի արտադրողականությունը։ Մինչև մեքենա-տրակտորային կայանի վերակազմումը, Եղվարդի դաշտերում աշխատող մեկ տրակտորի արտադրողականությունը կազմում էր 230—250 հեկտար, իսկ այժմ այն մեծ չափով ավելացել է։ 1955 թվականին կոլտնտեսության դաշտերում աշխատել է 4 կոմբայն, հացահատիկի բերքահավաքը տևել է 28 օր, իսկ 1958 թվականին աշխատել է 2 կոմբայն, և հացահատիկի բերքահավաքը տևել է 12 օր։*

*Սեփական տեխնիկա ունենալու շնորհիվ կոլտնտեսությունում ստեղծվել են մշտական որակյալ մեխանիզատորական կադրեր, որոնք արտադրողաբար են օգտագործում տեխնիկան։ Որակյալ մեխանիզատորական կադրերով ապահովված են կոլտնտեսային արտադրության բոլոր ճյուղերը։ Լավագույն մեխանիզատորներից են Ա. Պատվականյանը, Վ. Ոսկանյանը, Ս. Եփրեմյանը, Պ. Սիմոնյանը, որոնք ծնվել և մեծացել են Եղվարդում, ձեռք են բերել տրակտորիստի որակավորում և այժմ արտադրողաբար են օգտագործում տեխնիկան։*

*Կոլտնտեսությունում խելացիորեն է կազմակերպված նաև տրակտորների և մյուս մեքենաների նորոգման և դրանց պահպանության գործը։ Եղվարդցիները չեն կարող հանդուրժել, որ տեխնիկան անտնտեսվար կերպով պահվի, փչանա և ժամանակից շուտ անպետքանա։ Մեքենաները ձմռանը*

*պահպանելու համար կառուցված են հատուկ շենքեր։ Այդ նպատակով կոլտնտեսությունը միայն վերջին 2 տարում կատարել է 314 հազար ռուբլու կապիտալ ներդրում։*

*Խոսելով կոլտնտեսային պարտիական կազմակերպությունների գործունեության մասին ընկ. Ն. Ս. Խրուշչովը դեռևս 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումում նշեց, որ «Մենք գյուղում ունենք ոչ քիչ թվով պարտիական ուժեր... Եթե մենք ճիշտ տեղաբաշխենք և օգտագործենք այդ ուժերը, ապա հաջողությամբ կկատարենք բոլոր խնդիրները և կհաղթահարենք նպատակի ճանապարհին եղած բոլոր դժվարությունները»։*

*Աշխատանքում ուղեցույց ունենալով ՍՄԿԿ XXI համագումարի որոշումները, գյուղի պարտիական կազմակերպությունը խելացիորեն է օգտագործել կոմունիստների, անպարտիական ակտիվի, գյուղի առաջավոր մարդկանց ուժերը։ Կոլտնտեսային արտադրության առավել պատասխանատու և դժվարին տեղամասում աշխատանքի են ուղարկվել կոմունիստները։ Պարտկազմակերպությունը բաղկացած է 38 կոմունիստներից, որոնցից 34-ն աշխատում է անմիջապես արտադրության մեջ։ Նրանց մեծ մասը կատարելով շարքային աշխատանք, իրենց անձնական օրինակով ոգևորում են կոլտնտեսականներին, հնարավորություն են ընձեռում պարտիական կազմակերպությանն ավելի կոնկրետ զբաղվելու արտադրության հարցերով, մանավանդ ճշտորեն իրականացնելու կոլտնտեսության գործունեության նկատմամբ վերահսկողության ֆունկցիան։*

*Բրիգադներում, անասնապահական ֆերմաներում և թաղամասերում 20 ագիտատորներ պարբերաբար կոլտնտեսականներին պարզաբանել ու պարզաբանում են պարտիայի ու կառավարության որոշումները, մեր երկրի ներքին ու արտաքին քաղաքականությունը։ Այստեղ ագիտատորներ են աշխատում կոլտնտվարչության նախագահը, բրիգադիրները, գյուղատնտեսը, զոոտեխնիկը, անասնաբույժը, ուսուցիչները։*

*Կոլտնտեսականների առջև զեկուցումներով ու զրույցներով հանդես են գալիս ռեսպուբլիկայի և հատկապես շրջանի ղեկավար աշխատողները։ Միայն անցյալ տարի և այս տարվա յոթ ամսում կոլտնտեսականների համար քաղաքական, գիտա-լուսավորական և գյուղատնտեսական թեմաներով ավելի քան 60 զեկուցում է կարդացվել, որին ունկնդրել են մոտ 5000 հոգի։ Բացի այդ, կոլտնտեսականների համար շաբաթական մի քանի անգամ գյուղում կամ յայլաղում ցուցադրվում են կինոնկարներ։ Միայն այս տարի ցուցադրվել է 24 կինոնկար, մի մասը գյուղատնտեսական թեմաներով։ Գյուղում ամեն մի ընտանիք 2—3 անուն թերթ և ամսագիր է ստանում։ Չկա մի ընտանիք, որ չունենա ռադիոբարձրախոս կամ ռադիոընդունիչ։ 10 ընտանիք ունեն հեռուստացույց։*

*Կոլտնտեսությունում պարտիական կազմակերպության կատարած կարևորագույն աշխատանքներից մեկը սոցիալիստական մրցության կազմակերպումն է, որը նոր ուժով է ծավալվել այժմ։ Բրիգադները բրիգադների և կոլտնտեսականները միմյանց հետ մրցում են բարձր բերքի և անասունների բարձր մթերատվության համար։*

*Արդեն երրորդ տարին է, որ Ելղովանի կոլտնտեսությունը սոցիալիստական մրցության մեջ է մտել եղբայրական Վրաստանի Բոլնիսի շրջանի Բոլնիս ավանի Ստալինի անվան կոլտնտեսության հետ։*



*— Այդ մրցությունը մեր երկու կոլտնտեսություններին,— ասում է պարտկազմակերպության քարտուղար ընկ. Կ. Պողոսյանը,— լավ արդյունքի է հասցրել։ Մեր և նրանց փոխադարձ այցելությունները եղել են լավագույն միջոց առաջավոր փորձն ուսումնասիրելու և այն կոլտնտեսային արտադրության մեջ արմատավորելու համար։*

*Պարտիական կազմակերպության աշխատանքում խոշոր տեղ է գրավում առաջավոր փորձի ընդհանրացումն ու տարածումը։ Օրինակ, գարնանը դաշտավարական բրիգադներում հանգամանորեն պարզաբանվել է Ա. Գիտալովի և Ն. Մանուկովսկու փորձը։ Անցյալ գյուղատնտեսական տարին ամփոփելիս, երբ հայտնի է դառնում, որ կթվորուհի Սրբուհի Հովասափյանը ամեն մի կովից ստացել է 3200 կգ կաթ, պարտկազմակերպությունն անմիջապես նախաձեռնում է նրա փորձի տարածման գործը։ Ագիտատորները մանրամասնորեն ուսումնասիրում են առաջավոր կոլտնտեսուհու աշխատանքի փորձը և այն լուսաբանում պատի թերթում, իսկ հետո՝ առանձին տպագիր բյուլետենում։*

*Սակայն առաջավոր փորձի լավագույն պրոպագանդիստն ու տարածողը հենց ինքը՝ գյուղատնտեսության առաջավորն է։ Այդ է ցույց տալիս կոլտնտեսության պարտիական կազմակերպության գործնական աշխատանքը։ Օրինակ, առաջավոր կթվորուհիներ՝ Սրբուհի Հովասափյանը, Բավական Արզումանյանը, Զաբել Մելքոնյանը, Անախաս Թադևոսյանը, Մարուշ Կարապետյանը և շատերը հանդես են եկել կոլտնտեսականների առջև և պատմել իրենց փորձի մասին։*

*Ելղովանի կոլտնտեսականները քննարկել են իրենց կոլտնտեսության զարգացման յոթնամյա պլանը։ Վերջերս նրանք որոշել են յոթնամյակը 4 տարում կատարել։ Նախատեսված է գյուղատնտեսական կուլտուրաների արտադրությունն ավելացնել երկու ուղղությամբ՝ նախ գերազանցապես բերքատվության բարձրացման, ապա անջրդի հողերը ոռոգելի դարձնելու ճանապարհով։*

*Կոտայքի ջրանցքի կառուցման շնորհիվ կոլտնտեսության 750 հեկտար անջրդի հողերը դառնալու են ոռոգելի։ Այդ լայն հնարավորություն կստեղծի մասնագիտացնել կոլտնտեսությունը ինտենսիվ անասնաբուծության, մսատու խոզաբուծության, բանջարաբուծության, խաղողագործության ու պտղաբուծության, ինչպես նաև ծխախոտագործության ուղղությամբ։*

*Կոլտնտեսականները նախատեսել են կովերի գլխաքանակն ավելացնել 3 անգամ, խոզերինը՝ 2,5 անգամ, ամեն մի ֆուրաժային կովից ստանալ ոչ պակաս 4000 կգ կաթ, մեկ մայր խոզից մեկ տոննա միս, դրամական եկամուտը հասցնել 5 միլիոն ռուբլու, 100 հեկտար հողատարածության հաշվով արտադրել 120 ցենտներ միս, 560 ցենտներ կաթ, 800 կգ բուրդ և այլն։*

*Յոթնամյակում խոշոր աշխատանք է կատարվելու կերի բազան ամրապնդելու ուղղությամբ։ Նախատեսվում է տարեկան ցանել 150 հեկտար եգիպտացորեն և ամեն մի հեկտարից ստանալ 550—600 ցենտներ կանաչ մասսա, առվույտի ցանովի խոտերի ցանքատարածությունն այժմյան 10 հեկտարի փոխարեն, 1965 թվականին լինելու է 70 հեկտար։ Առվույտի ամեն մի հեկտարից ստացվելու է 150 ցենտներ բերք։ Մեծ չափերով ընդարձակվելու են արմատապտուղների ցանքատարածությունները։*

*Յոթնամյակում բարձր զարգացման է հասնելու նաև բանջարանոցային*

*կուլտուրաների մշակությունը: Այժմ 18 հեկտարի փոխարեն, մշակվելու է 70 հեկտար կարտոֆիլ, կաղամբ, վարունգ, պղպեղ, պամիդոր և բանջարա-բոստանային ուրիշ կուլտուրաներ: Նախատեսվում է Երևանի բնակչության կարիքների համար ամեն տարի վաճառքի հանել 10 հազար ցենտներ թարմ բանջարեղեն: Յոթնամյակի վերջին տարում 100 հեկտարի հաշվով կոլտնտեսությունը կունենա 40 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, որից 20 գլուխը կովեր և 115 գլուխ մանր եղջերավոր անասուն: Կոլտնտեսությունը յուրաքանչյուր կովի համար կկուտակի 10 տոննա սիլոս, 8 ցենտներ խոտ, 12 ցենտներ արմատապտուղ, 3 ցենտներ հատիկային կեր:*

*Յոթնամյակում ընդլայնվելու է կոլտնտեսության արտադրական շենքերի տարածությունը: Կառուցվելու է մեկ կովանոց՝ 130 գլխի համար, սիլոսի 4 աշտարակ: Կառուցումներ են կատարվելու նաև կոլտնտեսականների կուլտկենցաղային սպասարկումը բարելավելու համար:*

*Զարգացման փայլուն հեռանկարներ է բացվում խաղողագործության և պտղաբուծության զարգացման համար: Յոթնամյակում նախատեսված է 270 հեկտար խաղողի և պտղատու ծառերի այգի տնկել: Այդ գործին կոլտնտեսությունն արդեն ձեռնամուխ է եղել: Այս տարի հիմնված է 25 հեկտար պտղատու այգի, որտեղ աճում են խնձորենի, տանձենի և այլ պտղատու ծառեր:*



*Կոլտնտեսության վարչությունը և պարտիական կազմակերպությունը ամեն ինչ չէ, որ կատարել են օրինակելիորեն: Նրանք մեծ անելիքներ ունեն դեռևս թաքնված անսպառ հնարավորություններն արդյունավետ օգտագործելու և գյուղատնտեսական մթերքների արտադրությունն անընդհատ ավելացնելու ուղղությամբ: Այժմ խնդիրն այն է, որ կոլտնտեսությունը բարձր բերք ստանալու ներկա մակարդակից անցում կատարի առավել բարձր մակարդակի, առատ բերք ստանա ցանքային բոլոր տարածություններից ու բոլոր կուլտուրաներից և յոթնամյա պլանը կատարի ժամկետից շուտ, բարձր ցուցանիշներով:*

Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ



Երևանի Ֆ. Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի վարպետ ընկ. Ռ. Թելունցը դիմել է մեր ամսագրի խմբագրությանը, խնդրելով պարզաբանել, թե ինչպես և երբ է առաջացել հայ ժողովուրդը:

## ԵՐԲ ԵՎ ԻՆՉՊԵՍ Է ԱՌԱՋԱՑԵԼ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ

*Հայկական բարձրավանդակը և նրան հարող մի քանի երկրամասեր, ուր առաջացել և ձևավորվել է հայ ժողովուրդը, մարդկության հնագույն օրրաններից մեկն են: Այնտեղ հազարավոր տարիներ առաջ ապրել են մի շարք ցեղեր, ցեղախմբեր և նույնիսկ ժողովուրդներ, որոնցից շատ քչերին է վիճակվել իրենց գոյությունը պահպանել մինչև մեր օրերը: Այդ քչերից մեկը՝ հայ ժողովուրդն է:*

*Հայերի ձևավորումը որպես ժողովրդի, տեղի է ունեցել մեր թվարկությունից առաջ, երբ դեռ պատմագիտություն գոյություն չուներ և ցեղախմբերի ու ժողովուրդների կյանքում տեղի ունեցած շատ կարևոր երևույթներ և իրադարձություններ դարերի ընթացքում կամ բոլորովին մոռացվում էին կամ դառնում ավանդություն ու վերածվում առասպելի: Նման վիճակի է արժանացել նաև հայ ժողովրդի առաջացման և ձևավորման պատմությունը, որի մասին առայժմ շատ քիչ տեղեկություններ կան և եղածի մի մասն էլ հավաստի չէ: Այդ պատճառով հայերի առաջացման հարցը պատմագիտության կողմից մինչև այսօր էլ որոշակիորեն լուծում չի ստացել, և տարբեր գիտնական-պատմաբաններ այդ մասին զարգացրել ու զարգացնում են տարբեր տեսակետներ: Նման իրարամերժ տեսակետների առաջացմանը մասամբ նպաստել է նաև այն, որ ուրիշ ժողովուրդներ հայերին տալիս են այլ անուն, «արմին», «արմեն» ու նրանց երկրին՝ «Արմենիա», «Արմինա», իսկ իրենք՝ հայերը իրենց անվանում են «հայ» և երկիրը՝ «Հայաստան»: Մի շարք գիտնականներ գտնում են, որ հայերենը պատկանում է հնդեվրոպական լեզվախմբին, իսկ հայ ժողովուրդը ձևավորվել է Հայկական բարձրավանդակում, որի նախկին բնակիչները մեծ մասամբ եղել են այլ լեզվախմբի պատկանող ցեղեր:*

*Որպեսզի եղած տեսակետները մեզ համար հասկանալի լինեն և հնարավոր դառնա որոշ գաղափար կազմել հայ ժողովրդի առաջացման ու ձևավորման մասին, տեսնենք, թե ինչպիսի տեղեկություններ կան մեր ժողովրդի այդ հնագույն շրջանի պատմության վերաբերյալ: Առաջին հերթին նշենք գոյություն ունեցող ավանդությունները:*

*Մեր պատմահայր, V դարի պատմագիր Մովսես Խորենացին իր «Հայոց պատմության» մեջ բերում է իր ժամանակ դեռևս ժողովրդի մեջ պահպանված այն ավանդությունը, թե մեր ժողովրդի նախահայրերը եղել են Հայկը և նրա որդիներ Արամն ու Արմենակը, որոնք ըմբոստացել են Բել անունով բռնակալի դեմ ու Հյուսիսային Միջագետքից եկել են Հայկական բարձրավանդակ, հաստատվել այնտեղ, և նրանց սերնդից էլ առաջացել է հայ ժողովուրդը, որն իր նախահոր անունով իրեն «հայ» է կոչել, իսկ երկիրը՝ «Հայաստան»: Այս*

ավանդությունը թեև իր մեջ պարունակում է հեռավոր անցյալի պատմական դեպքերի արձագանքներ, բայց չի կարելի համարել պատմական իրողություն։

Հայ ժողովրդի ծագման մասին մի ավանդություն էլ պահպանվել է հունական աղբյուրներում։ Մեր տարեգրությունից առաջ առաջին դարի հեղինակ Ստրաբոնն իր «Աշխարհագրության» մեջ հաղորդում է, որ ուրիշների պատմածով արգոնավորդների հետ միասին Արևելք է եկել Թեսալիայի Արմենիոն քաղաքի բնակիչ Արմենոսը։ Որ նա իբր թե թողնում է իր ընկերներին, գալիս է Հայաստան, հաստատվում է այդտեղ և նրա սերնդից էլ առաջանում են «արմենները» (հայերը) ու նրա անունով էլ երկիրը կոչվել է «Արմենիա»։ Սա առասպել է, և ինչպես իրավացի կերպով նկատել են որոշ պատմագետներ, հորինվել է Հունաստանում և արտահայտել է շատ վաղ անցյալի հունական գաղութարարների ձգտումները։

Կա նաև մի այլ ավանդություն, որ պահպանվել է վրացական աղբյուրներում։ Այդ ավանդության համաձայն Անդրկովկասի ժողովուրդները եղբայրակից ժողովուրդներ են և նրանցից յուրաքանչյուրը սերվել է եղբայրներից մեկի ժառանգներից, ինչպես օրինակ, Հայոսից՝ հայերը, Քարթլոսից՝ վրացիները և այլն։ Այս ավանդությունն էլ հավաստի լինել չի կարող։

Այդ երեք ավանդություններն էլ հեռու են պատմական իրականությունից և իրենցից ներկայացնում են առասպելախառն զրույցներ, որոնք համարյա թե ճշմարտացի բան չեն ասում հայ ժողովրդի առաջացման և ձևավորման մասին։ Այդ պատճառով էլ մեզ հետաքրքրող հարցը պարզաբանելու և այդ մասին շատ թե քիչ ճիշտ պատկերացում ունենալու համար պետք է դիմել նաև այլ, ավելի հավաստի աղբյուրների, որոնցում պատմական դեպքերն ավելի ճիշտ են արձանագրվել։ Այդպիսի աղբյուրներ են հանդիսանում վերջին մի քանի տասնամյակներում հայտաբերված և ընթերցված խեթական, ասորական, ուրարտական ու պարսկական սեպագիր արձանագրությունները և այլ հունական վաղ ժամանակաշրջանի պատմական երկերը, որոնցում տեղեկություններ կան Հայկական բարձրավանդակում ապրած ցեղախմբերի մասին։

Ժամանակագրական կարգով ավելի հին են խեթական արձանագրությունները։ Նրանք գրված են մեր թվարկությունից առաջ XIV—XIII դարերում և նրանցում տեղեկություններ կան Փոքր Հայքում և Հայկական բարձրավանդակի արևմտյան մասերում հիշյալ դարերում ապրած ցեղախմբերի և ժողովուրդների մասին։ Պարզվում է, որ Ճորոխ, Եփրատ և Արաքս գետերի վերին հոսանքներում ընկած վայրերում, այսինքն Փոքր Հայքում և Մեծ Հայքի հյուսիս արևմտյան շրջաններում գոյություն է ունեցել մի ժողովուրդ, որի երկիրը արձանագրություններում անվանված է «Հայասա», իսկ ժողովուրդը՝ «հայաս» կամ «հայասցիներ»։ Այս ժողովուրդը երբեմն էլ հիշատակվում է երկու անունով՝ «Հայասա-ազզի» ձևով։ Հայասները ունեցել են իրենց պետությունը, որն իր գոյությունը պահպանել է մի քանի դար՝ XIV—XI դարեր մեր թվարկությունից առաջ և տնտեսական ու կուլտուրական բարձր մակարդակի է հասել, թեև հաճախ ենթակա է եղել խեթական ավելի հզոր պետության։

Խեթական սեպագիր արձանագրություններից հետո, սկսած XIII դարից մինչև VI դարը՝ Հայկական բարձրավանդակի բնակիչների մասին տեղեկություններ կան ասորեստանյան սեպագիր արձանագրություններում։ Այդ տեղեկություններից պարզվում է, որ սկզբում Հայկական բարձրավանդակի ցեղերն ու ցեղախմբերը, որոնք արձանագրություններում հիշատակվում են



«Նայիրցիի» ընդհանուր անունով, կազմել են միություն և միացյալ ուժերով պաշտպանվել են ասորեստանցիների արշավանքներից։ Իսկ մեր թվարկությունից առաջ IX դարից սկսած այդ ցեղերը համախմբվում են միացյալ պետության մեջ և այդ պետությունը IX դարի արձանագրություններում անվանվում է «Նայիրյան», իսկ հետագա ժամանակի արձանագրություններում՝ «Ուրարտու», կամ «ուրարտական»։ Վերջինս մեր թվարկությունից առաջ IX—VIII դարերում իր իշխանությունը տարածում է ամբողջ Հայկական բարձրավանդակի վրա և իր գոյությունը պահպանում է մինչև նախքան մեր թվարկության VI դարը, ապրելով քաղաքական, կուլտուրական և տնտեսական կյանքի բարձր զարգացում։

Դեռևս նախքան մեր թվարկության երկրորդ հազարամյակի արձանագրություններում Հայկական բարձրավանդակում և սրան հարող շրջաններում ապրած ցեղերի ու ժողովուրդների մեջ երբեմն հիշատակվում է մի ցեղ, որ իր անունով հիշեցնում է «արմեններին», իսկ ուրարտական Սարդուրի թագավորի թողած արձանագրության մեջ, որ գրված է VIII դարում մեր թվարկությունից առաջ, արդեն որոշակի կերպով խոսվում է «Արմե» երկրի և նույնանուն ցեղի մասին։ Այնտեղ ասված է, որ Սարդուրին գրավել է Արմե երկիրը և նրա թագավորը հնազանդվել է ուրարտացիներին։ Արձանագրության տվյալներով Արմե երկիրը գտնվել է Հայաստանի հարավային շրջաններում, հին Աղձնիքում, Տիգրանակերտ քաղաքի շրջանում։ Պատմաբաններից ոմանք և առանձնապես Բ. Բ. Պիոտրովսկին Արմե անվան հետ է կապում «Արմենիա» և «արմեններ» անունները։

Արմենների մասին ավելի հաստատուն կերպով և առավել մանրամասնությամբ խոսվում է պարսից թագավոր Դարեհ Ա-ի (522—486 թթ. մ. թ. ա.) թողած արձանագրության մեջ, որ գրված է VI դարում մեր թվարկությունից առաջ և հայտնի է «Բիհիսթունի արձանագրություն» անունով։ Այնտեղ ասված է, որ Դարեհը գրավել էր Արմենիան, կամ ինչպես արձանագրության մեջ է ասված «Արմինան», բայց արմեններն ապստամբում են Դարեհի տիրապետության դեմ։ Նա զորք է ուղարկում Արմինան նվաճելու համար։ Մեր տարեգրությունից առաջ 521—520 թթ. տեղի է ունենում հինգ ճակատամարտ, որից հետո միայն Դարեհի բանակին հաջողվում է հաղթել արմեններին և Արմենիան նորից ենթարկել պարսիկների գերիշխանությանը։ Արձանագրության մեջ հիշատակվում են բոլոր ճակատամարտերի տեղանունները, որոնք, ինչպես հաստատում են շատ պատմաբաններ, գտնվում են Հայաստանի հարավային շրջանում և Հյուսիսային Միջագետքում։

Սրանք են հնագույն, ժամանակակից և փաստական տեղեկությունները Հայկական բարձրավանդակի հիմնական բնակիչների մասին։ Դրանից հետո հանդես են գալիս հույն մատենագիրները, որոնց աշխատություններից հնագույնը Հերոդոտի (484—425 թթ.) պատմությունն է, որի մեջ մանրամասն հաղորդվում է, որ իր ժամանակ, այսինքն V դարում մեր թվարկությունից առաջ, արմենները ապրում էին Հայաստանի հարավ-արևմտյան գավառներում, այն է Ծոփքում, Արածանիի ստորին հոսանքում, Աղձնիքում, Տիգրիսի վերին հոսանքում և Փոքր Հայքում, որ գտնվում է Եփրատի մյուս ափին, և արմեններին պատկանած այդ նահանգները մտնում էին պարսկական պետության մեջ ու կազմում էին նրա XIII սատրապությունը։ Այնուհետև այդ աշխատության մեջ հաղորդվում է նաև այն մասին, որ Հայկական բարձրավանդակի հյուսիս

*արևելյան շրջաններում ապրում էին այլ ցեղեր, որոնք նույնպես ենթակա էին պարսից պետության, և այդ շրջանները կազմում էին Պարսկաստանի XVIII սատրապությունը։ Հերոդոտի աշխատության մեջ կան նաև տեղեկություններ այն մասին, որ արմենները հարևան են եղել Փոքր Ասիայի փռյուգացիներին և իրենց նիստ ու կացով, հագուստի և զինաձևով նմանվել են նրանց։*

*Հերոդոտից հետո (մեր թվարկությունից առաջ V դարի վերջին, IV դարի սկզբներին), Հայաստանի և հայերի մասին տեղեկություններ է հաղորդում մի այլ հույն մատենագիր՝ Քսենոֆոնը։ Վերջինս գրել է երկու աշխատություն՝ «Կյուրոպեդիա» և «Անաբազիս»։ Առաջին աշխատությունը պատմական վեպի բնույթ ունի և նկարագրում է պարսկական պետության հիմնադիր Կյուրոսի կյանքն ու գործունեությունը։ Այդ կապակցությամբ պատմվում է նաև այն մասին, որ Հայաստանը մեր թվարկությունից առաջ VI դարում նվաճվել էր մեդական թագավոր Կիաքսարի կողմից, բայց արմենների թագավորը ապստամբել է մեդական պետության դեմ և Կիաքսարը Կյուրոսին ուղարկել է արմենների ապստամբությունը ճնշելու։*

*«Անաբազիսը» հայ ժողովրդի հնագույն շրջանի պատմության կարևորագույն աղբյուրներից մեկն է։ Այդ աղբյուրի հաղորդած տեղեկություններից երևում է, որ արմենները այդ ժամանակ արդեն բնակություն էին հաստատել Հայկական բարձրավանդակի զգալի մասում։ Նկարագրվում է նրանց տնտեսության վիճակը, կենցաղային որոշ սովորույթներ և այլն։*

*Հայաստանի և հայերի մասին տեղեկություններ հաղորդող հունական հնագույն աղբյուրների շարքին է պատկանում նաև Ստրաբոնի «Աշխարհագրությունը»։ Այնտեղ արդեն խոսվում է մեր թվարկությունից առաջ II դարի քաղաքական անցուդարձի մասին Հայաստանում և նկարագրվում է հայկական միասնական պետության առաջացումը՝ Արտաշեսյան դինաստիայի հաստատումը։*

*Վերոհիշյալ աղբյուրների կողքին կուզենայինք հիշատակել նաև հայ պատմագիր Մովսես Խորենացու «Հայոց պատմությունը»։ Ճիշտ է, Խորենացին այդ աշխատությունը գրել է մեր թվարկության V դարի վերջին VI դարի սկզբին, բայց նրա ձեռքի տակ են եղել հին աղբյուրներ, որոնցից նա շատ արժեքավոր տեղեկություններ է վերցրել հայ ժողովրդի հնագույն շրջանի պատմության մասին։ Բացի այդ, նա օգտվել է ժողովրդի մեջ պահպանված ավանդություններից, որոնք նույնպես օժանդակում են հայ ժողովրդի, նրա պետականության և նրա առաջացման մութ հարցերը պարզաբանելու գործին։ Հայ ժողովրդի պատմության հնագույն շրջանի մասին Խորենացու հաղորդած մի շարք տեղեկություններ, որոնք այլ պատմագիտական աղբյուրներում չեն հիշատակվում, հաստատվում են ասորեստանյան թագավորների թողած ու հունարեն լեզվով եղած արձանագրությունների տվյալներով, ինչպես ցույց են տալիս վերջին տարիների ուսումնասիրությունները։*

*Վերևում հիշատակված սեպագիր արձանագրություններն ու պատմագիտական աշխատություններն են այն հիմնական աղբյուրները, որոնք տեղեկություններ են տալիս Հայկական բարձրավանդակում շատ վաղ ժամանակներում ապրած ցեղերի և ժողովուրդների մասին։ Այդ տեղեկություններն էլ հանդիսանում են այն հիմնական նյութը, որի օժանդակությամբ բացատրվում է հայ ժողովրդի առաջացումն ու կազմավորումը։ Բայց թերի կլինի այդ նյութը, եթե դրա կողքին չավելացնենք նաև հայերեն լեզվի տվյալները,*



*որոնք նույնպես օժանդակում են գիտնականներին հայերի առաջացման հարցը պարզաբանելու։*

*Ահա սրանք են այն նյութերը, որոնց հիման վրա պատմաբանները, լեզվաբաններն ու բանասերները կատարում են իրենց ուսումնասիրությունները հայ ժողովրդի առաջացման և ձևավորման մասին և հանգում են այս կամ այն եզրակացության։ Իսկ հայ ժողովրդի առաջացման և նրա լեզվի հարցով զբաղվել են ինչպես օտարազգի, այնպես էլ հայ մի շարք անվանի գիտնականներ-պատմաբաններ, լեզվաբաններ ու բանասերներ։ Այժմ տեսնենք, թե նրանք ինչպիսի եզրակացությունների են հանգել և ինչպիսի տեսակետներ կան հայ ժողովրդի առաջացման մասին։*

*Հարցը չխճճելու համար մենք զանց ենք անում առանձին գիտնականների տեսակետների միջև եղած ոչ էական տարբերությունները և եղած տեսակետները բաժանում ենք երկու հիմնական խմբի։*

*Առաջին խմբում մենք նկատի ունենք այն գիտնականների կարծիքները, որոնց համաձայն հայերը հին արմենների հետևորդներն են։ Այդպիսի կարծիք հայտնող գիտնականները, որոնց թվում առանձնապես ակադեմիկոսներ Աճառյանն ու Մանանդյանը, վերջերս էլ նաև սովետական արևելագետ Դյակոնովը հենվելով հունական աղբյուրների և հայերեն լեզվի տվյալների վրա, գտնում են, որ արմենները սկզբում ապրելիս են եղել Բալկանյան թերակղզու շրջանում՝ Թրակիայում, ապա XII դարում մեր թվարկությունից առաջ տեղահան են եղել և փռյուգացիների հետ միասին գաղթել են դեպի Փոքր Ասիա։ Այստեղ նրանք տեղավորվել են Կապադովկիայից հարավ և արևելք ընկած շրջաններում, եղել են փռյուգացիներին հարևան և միայն մեր թվարկությունից առաջ VII դարում շարժվել դեպի Հայկական բարձրավանդակ, իրենց են ենթարկել Հայկական բարձրավանդակում եղած ցեղերին ու ժողովուրդներին, նրանց ձուլել են իրենց հետ և այդպիսով VII—III դարերում ձևավորվել է ժամանակակից հայ ժողովուրդը։ Այդ գիտնականները միաժամանակ գտնում են, որ հայերեն լեզուն արմենների լեզուն է և պատկանում է հնդեվրոպական լեզվաճյուղին, չժխտելով սակայն, որ նաև արմենների հետ ձուլված ցեղերի և ժողովուրդների լեզվից շատ բան է անցել հայերեն լեզվին։*

*Երկրորդ խմբին են պատկանում այն գիտնականների կարծիքները, որոնցում ժխտվում են արմենների գաղթը Թրակիայից և նրանց վճռական դերը հայ ժողովրդի առաջացման գործում։ Այդպիսի կարծիք արտահայտող գիտնականները, հատկապես հանգուցյալ ակադեմիկոս Ղափանցյանը և Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Բ. Պիոտրովսկին, հենվելով խեթական, ասորեստանյան և ուրարտական արձանագրությունների տվյալների վրա, գտնում են, որ հայերի նախորդները եղել են Հայկական բարձրավանդակի բնակիչներ և նրանք որևէ այլ վայրից չեն տեղափոխվել Հայաստան, որ հայ ժողովրդի ձևավորման գործում վճռական դեր են խաղացել ոչ թե արմենները, այլ հայասաները, որի համար էլ հայերը իրենց «հայ» են անվանում և ոչ թե «արմեն», որ հայերեն լեզուն չի պատկանում հնդեվրոպական լեզվաճյուղին, այլ ազգակից է տեղական, այսպես կոչված «ալխանիկ» լեզվախմբին։ Ակադեմիկոս Ղափանցյանը կարծում է, որ հայասաներն են հետագայում կոչվել «արմեն», իսկ Պիոտրովսկին ենթադրում է, որ հայերը օտարազգիների կողմից «արմեն» են կոչվում Հայաստանում ապրած «արմեն» ցեղի անունով։ Ըստ ակադեմիկոս Ղափանցյանի՝ հայասաները մեր թվարկու-*

թյունից առաջ VII դարում Փոքր Հայքից և Բարձր Հայքից, այսինքն այժմյան Երզնկայի և Կարինի շրջակայքից իջել են նախ դեպի Հարավ՝ դեպի Ծոփքը, Աղձնիք ու Տարոնի դաշտը և ապա շարժվել Հայաստանի կենտրոնական մասերը։ Նրանք իրենց հետ են ձուլել Հայաստանի մնացած ցեղերին և այդպիսով կազմավորել հայ ժողովուրդը։

Սրանք են այն հիմնական տեսակետները, որ գոյություն ունեն ժամանակակից պատմագիտության մեջ հայ ժողովրդի առաջացման և ձևավորման մասին։ Անտարակույս, այդ տեսակետներից յուրաքանչյուրը արտահայտում է որոշ պատմական ճշմարտություն, բայց դրա հետ միասին ունեն վիճարկելի և չհիմնավորված կողմեր։ Քննարկվող հարցն ավելի ըմբռնելի դարձնելու համար տեսնենք, թե հայ ժողովրդի առաջացման հետ կապված ինչ հարցերն են պարզաբանված և ընդունված ժամանակակից պատմագիտության և լեզվաբանության կողմից։

Այժմ արդեն անվիճելի կերպով հաստատված է, որ հայերեն լեզուն իր հիմնական բառապաշարով և քերականական կառուցվածքով պատկանում է հնդեվրոպական լեզվաճյուղին։ Այս դրույթն ընդունվում է համարյա բոլոր պատմագետների և լեզվաբանների կողմից, իսկ դա խոշոր նշանակություն ունի հայ ժողովրդի առաջացման հարցի լուսաբանման համար։ Այդ նշանակում է, որ հայ ժողովրդի կազմավորման գործում կարևոր, գուցե և վճռական դեր խաղացող տարրերից մեկը պատկանել է հնդեվրոպական լեզվախմբին։

Այնուհետև, ուրարտական և պարսկական սեպագիր արձանագրությունների տվյալներով հաստատված է, որ Հայկական բարձրավանդակի հին ցեղերից մեկն էլ եղել են արմենները։ Ուրարտական Սարդուրի թագավորի արձանագրությունն արմեններին հիշում է մեր տարեգրությունից առաջ VIII դարում, իսկ Դարեհի Բիհիսթունյան արձանագրությունում երկու դար հետո արմենները հիշատակվում են որպես մեծ ուժ ունեցող ցեղախումբ։ Դեռևս չի ապացուցված և առասպելական է այն դրույթը, թե արմենները սկզբում ապրելիս են եղել Թրակիայում և հետո գաղթել Փոքր Ասիա։ Բ. Պիոտրովսկին իրավացի կերպով նկատում է, որ արմեններին Թրակիայից բերել տալու և կամ հույն Արմենոսից սերելու տեսությունը արտահայտում է հին հույների գաղութարարական ձգտումները։ Ինչպես հայտնի է, հունական առասպելաբանությունը ասիական որոշ ժողովուրդներին, որոնց թվում և պարսիկներին, համարում է հույներից սերված, մի բան, որ ճշմարտությունից շատ հեռու է։ Արմենների մասին աղբյուրների հաղորդած տեղեկություններից երևում է, որ նրանք հին ժամանակներից սկսած բնակվելիս են եղել Եփրատ գետի միջին հոսանքում, այսինքն Փոքր Հայքում, Ծոփքում և Աղձնիքում։ Իսկ թե նրանք ե՞րբ են հաստատվել այդ վայրերում, դեռևս մութ է մնում։ Ենթադրվում է, որ նրանք այդտեղ են եկել նախորդ հազարամյակի երկրորդ կեսին։

Ի վերջո, արդեն պատմական ճշմարտություն է դարձել նաև այն, որ սկսած մեր թվարկությունից առաջ XIV դարից մինչև հայ ժողովրդի ձևավորումը, այն է՝ VII—III դարերում, Հայկական բարձրավանդակում հաջորդաբար քաղաքական վճռական դեր են խաղացել երեք ցեղախմբեր՝ հայասները, ուրարտացիները և արմենները։ Այս ցեղախմբերին իրար հետ շփոթել կամ նույնացնել չի կարելի։ Նրանք թեև Հայաստանի բնիկներն են եղել, բայց պատկանել են տարբեր էթնիկական և լեզվական խմբավորումների։ Սկզբնաղբյուրները բացի հիշյալ երեք հիմնական ցեղերից, որպես Հայկական բարձ-



րավանդակի բնիկներ հիշատակում են նաև այլ ցեղեր, ինչպես օրինակ, մուխեր, խալիբներ և այլն։ Այս ցեղերը թեև իրենց լուման են դրել հայ ժողովրդի ձևավորման գործում, բայց վճռական կամ նույնիսկ աչքի ընկնող դեր չեն խաղացել այնպես, ինչպես առաջին երեքը։

Ժամանակակից պատմագիտության և լեզվաբանության կողմից հայ ժողովրդի առաջացման հետ կապված վերոհիշյալ հարցերի լուսաբանումն ու ընդհանուր եզրակացության հանգելը արդեն զգալի չափով նպաստում է հայ ժողովրդի ձևավորման ամբողջական պրոբլեմը ճիշտ կերպով լուսաբանելու։ Այժմ վիճում են այն մասին, թե նշված երեք ցեղախմբերից՝ հայասներից, ուրարտացիներից և արմեններից ո՞րն է հանդիսացել այդ ժողովրդի հիմնական տարրը, կորիզը։ Ինչպես նախորդ էջում տեսանք, այս մասին կա երկու ենթադրություն։ Պատմաբաններից ու լեզվաբաններից ոմանք պնդում են, որ հայ ժողովրդի կազմավորման գործում գլխավոր դերը պատկանել է հայասներին կամ խեթական ցեղերին, ինչպես պնդում է Դյակոնովը։ Որպես ապացույց իրենց տեսակետի ճշտությանը, նրանք մեջ են բերում «Հայասա» և Խեթ, Հաթ անունները և բացատրում, որ «հայ» անունը առաջացել է Հայասա կամ Խեթ, Հաթ անուններից, որոնք նույնն են, ինչ որ այժմյան «հայ»-ը, իսկ որովհետև հայերն իրենց «հայ» են անվանում, ուրեմն հայասները և խեթական մյուս ցեղերն էլ եղել են այն հիմնական տարրը, որի գլխավորությամբ կազմավորվել է ժամանակակից հայ ժողովուրդը։ Այս փաստարկին ավելացնում են նաև այն, որ հայասների լեզվից հայերենում կան մի քանի բառեր։

Մյուս ենթադրությունն այն է, որ արմեններն են գլխավորել հայ ժողովրդի կազմավորումը։ Այս տեսակետի կողմնակիցները բերում են հետևյալ փաստարկումները։ Նախ այն, որ հայերեն լեզուն պատկանում է հնդեվրոպական լեզվաճյուղին, իսկ Հայաստանում հնդեվրոպական լեզվաճյուղի ներկայացուցիչները եղել են արմենները։ Երկրորդ՝ սկսած VI դարից մեր թվարկությունից առաջ Հայկական բարձրավանդակում տեղի ունեցած քաղաքական դեպքերը կապվում են արմենների հետ և եղած սկզբնաղբյուրները արմեններին են ներկայացնում որպես առաջատար ուժ, իսկ հայ ժողովրդի ձևավորումը Հայկական բարձրավանդակում սկսվում է հենց այդ ժամանակաշրջանից։ Հետևապես հայ ժողովրդի կազմավորումն ընթացել է արմենների գլխավորությամբ։

Ի՞նչ կարելի է ասել այս տարբեր կարծիքների մասին։ Ամենից առաջ խոսենք հայասների մասին։ Նախորդ էջերում բերված աղբյուրներից պարզվեց, որ իրոք մեր թվարկությունից առաջ XIV—XII դարերում հայասները ապրել են Հայաստանի հյուսիս-արևմտյան նահանգներում՝ Ճորոխի, Եփրատի և Արաքսի վերին հոսանքներում, ունեցել են իրենց պետությունը և տնտեսական, կուլտուրական և քաղաքական զարգացման բարձր մակարդակի են հասել։ Սակայն մեր թվարկությունից առաջ XI դարից սկսած նրանց մասին այլևս ոչ մի տեղեկություն չկա։ Այս նշանակում է, որ նրանց տեղն ու դերը Հայկական բարձրավանդակի մնացած ցեղերի մեջ այնքան աննշան էր դարձել, որ նրանց մասին կարիք էլ չի եղել հիշատակելու։ Այդպիսի թուլացած, համարյա թե անհետացած ցեղ չէր կարող գլխավորել մի ժողովրդի կազմավորումը, որին մասնակցում էին ուժեղ ցեղեր ու ցեղային միավորումներ։ Այնուհետև, հայասների լեզվից մեզ չի հասել այնքան նյութ՝ բառապաշար, քերականական կառուցվածք, որ հնարավորություն տա պարզելու այդ լեզվի

ցեղակցությունը հայերենի կամ մի այլ լեզվի հետ։ Ակադեմիկոս Ղափանցյանը նույնիսկ պնդում է, որ հայասների լեզուն հնդեվրոպական լեզվաճյուղին չի պատկանում և իրենից ներկայացնում է ազիանիկ լեզվաճյուղի ներկայացուցիչ։ Եթե այդպես է, ապա հայասները առավել ևս չէին կարող լինել մի ժողովրդի կազմավորողը, այսինքն նրա հիմնական տարրը, որի լեզուն այլ լեզվախմբի է պատկանում։ Այս բոլորով հանդերձ, հայասներն ու խեթական այլ ցեղերն էլ եղել են հայ ժողովրդի կազմի մեջ մտնող այն էթնիկական տարրերից մեկը, որոնք իրենց լեզվից, սովորույթներից ու հավատալիքներից շատ բան են ներդրել հայ ժողովրդի լեզվի և հավատալիքների մեջ։ Այսպիսի դեպքում միանգամայն հնարավոր է, որ հայերն իրենց «հայ» անունն էլ ժառանգած լինեն հայասից, կամ ինչպես ենթադրում է Դյակոնովը խեթ, հաթ անուններից, որովհետև հայերենում «թ» կամ «տ» հնչյունը վերածվում է «յ»-ի ու խեթ կամ հաթը հայերենում դառնում է հայ։

Այժմ մի քանի խոսք ասենք արմենների մասին։ Վերևում տեսանք, որ մեր թվարկությունից առաջ VIII դարի ուրարտական սեպագիր արձանագրություններից մեկում խոսվում է այն մասին, որ Հայաստանի հարավ-արևմտյան մասում եղել է Արմե անունով մի երկիր ու ժողովուրդ, որն ունեցել է իր թագավորությունը։ Գիտնականներ Պիոտրովսկին, Դյակոնովը և Երեմյանը գտնում են, որ դա հենց արմենների երկիրն է եղել և այդ ժողովուրդը արմեններն են։ Այս տեսակետի հետ պետք է համաձայնել և ընդունել, որ արմենները եղել են Հայաստանի հնագույն բնակիչներից, ինչպես հայասներն ու ուրարտացիները ու նրանց, որպես հնդեվրոպական լեզվախմբին պատկանող ցեղի, Ասիա գալու հարցը կարող է կապվել մյուս հնդեվրոպական ժողովուրդների, օրինակ, փռյուգացիների, հնդիկների, պարսիկների և այլոց Ասիա գալու հետ։

VII դարից հետո եղած համարյա բոլոր աղբյուրներում, որոնք այս կամ այն չափով խոսում են Հայաստանի քաղաքական վիճակի և նրա հողերում ապրող ցեղերի ու ժողովուրդների մասին, առաջին հերթին նշում են արմեններին որպես Հայկական բարձրավանդակում ազդեցիկ գերակշռություն ունեցող ցեղախումբ, որպես քաղաքական ու ռազմական աչքի ընկնող ուժ, մանավանդ սկսած մեր թվարկությունից առաջ VI դարից։ Այդպիսի մի ուժ արդեն ի վիճակի էր գլխավորելու Հայկական բարձրավանդակի բնակիչների միավորումն ու տարբեր ցեղերի միաձուլումը, այսինքն հայ ժողովրդի կազմավորումը, որ պատմական դեպքերի բերումով սկսվել էր դեռևս VII դարում մեր թվարկությունից առաջ։

Այսպիսով, մենք գալիս ենք այն եզրակացության, որ Հայկական բարձրավանդակի երեք հիմնական ցեղախմբերից՝ հայասներից, ուրարտացիներից և արմեններից, վերջինին է վիճակվել գլխավորելու հայ ժողովրդի կազմավորումը։ Այդ նշանակում է, որ արմենները հայ ժողովրդի ձևավորման շրջանում հանդիսացել են երկրի տիրապետող քաղաքական ուժը, իրենց են ենթարկել մյուս ցեղերին, նրանց ձուլել են իրենց հետ և նպաստել են ցեղախմբերից մեկի լեզվի, իհարկե, իրենց լեզվի տարածմանը որպես ընդհանուր լեզու։ Այսպիսի եզրակացության հանգելուց հետո, այժմ տեսնենք, թե ինչպիսի պայմաններում է ընթացել հայ ժողովրդի կազմավորումը։

XV դարից մինչև XII դարը մեր թվարկությունից առաջ Հայկական բարձրավանդակի արևմտյան մասում տիրապետող ցեղախումբը եղել են հայասները։ Սակայն XI դարից սկսած նրանք այլևս երկրի քաղաքական կյանքում հանդես չեն գալիս և պատմությունը նրանց մասին լռում է։ Հայասներից հետո, սկսած IX դարից մեր թվարկությունից առաջ նախ Հայաստանի հարավ-արևելյան շրջանում՝ Վասպուրականում և ապա VIII դարի սկզբից մինչև VII դարը ամբողջ Հայկական բարձրավանդակում առաջատար դեր են կատարել ուրարտացիները։ Նրանք ստեղծել են իրենց ընդարձակ և հզոր պետությունը, որը հաջողությամբ մրցակցել է Ասորեստանի հետ, զարկ են տվել գյուղատնտեսությանը, հատկապես այգեգործությանը, արհեստներին, շինարարական գործին, կառուցել են քաղաքներ, ջրանցքներ, ստեղծել են իրենց սեպաձև գրերը և թողել են բազմաթիվ արձանագրություններ ուրարտերեն լեզվով։ Այլ կերպ ասած, հասել են զարգացման շատ ավելի բարձր մակարդակի, քան նրանցից առաջ եղած հայասները։

Սակայն ուրարտական այդ հզոր պետությունը, ինչպես և նրան հարևան ասիական այլ հին պետություններ մեր թվարկությունից առաջ VII դարում ապրեցին փլուզում, կիմերների ու սկյութների արշավանքների հարվածների տակ անհետացան քաղաքական ասպարեզից։ Կիմերներն ու սկյութները, որոնք հիշյալ դարում Ռուսաստանի հարավային մասերից արշավեցին դեպի Փոքր Ասիա, Անդրկովկաս և Հայաստան, թեև իրենք հետո հեռացան կամ միավորվեցին տեղական ցեղերի հետ, բայց մեծ իրարանցում առաջ բերեցին այդ երկրների քաղաքական կյանքում։ Նրանք խորտակելով հին պետությունները, հնարավորություն ստեղծեցին ասպարեզ ելնելու նոր ցեղերի և կազմելու նոր պետություններ։ Հենց այդ ժամանակ էլ ջախջախված ու թուլացած ուրարտացիների փոխարեն Հայկական բարձրավանդակում քաղաքական ասպարեզ են ելնում արմենները։

Քսենոֆոնի հաղորդած տեղեկությունների համաձայն մեր թվարկությունից առաջ VI դարի առաջին կեսին արմեններն արդեն լուրջ ուժ էին ներկայացնում։ Նրանք ունեին իրենց ավելի քան 40 հազարանոց բանակը, թագավորությունը և պայքարում էին քաղաքական ազատության համար։ Այդ շրջանում նրանց պայքարը մի կողմից ուղղված էր մեդական կամ, ինչպես մեր պատմագիրներն են անվանում, մարական պետության դեմ, որն ուրարտական պետության քայքայումից հետո տիրել էր նաև Հայկական բարձրավանդակին, իսկ մյուս կողմից ուրարտացիների դեմ նորանոր տարածություններ ձեռք բերելու և այնտեղ բնակություն հաստատելու համար։ Քսենոֆոնը Կյուրոպեդիայում պատմում է, որ մեդական Կիաքսար թագավորը ապստամբ արմեններին հնազանդեցնելու համար Հայաստան է ուղարկում իր զորավար Կյուրոսին։ Վերջինս գալիս է Հայաստան, նորից տիրում է երկրին և նույնիսկ գերում է արմենների թագավորին։ Սակայն շուտով Կյուրոսի մոտ է գալիս արմենների թագավորի ավագ որդին՝ Տիգրանը, որը Կյուրոսի որսորդական ընկերն էր, և նրա միջնորդությամբ հաշտություն է կնքվում արմենների թագավորի և Կյուրոսի միջև։ Արմենները համաձայնում են կատարել մեդական պետության հանդեպ իրենց դաշնակցային պարտավորությունները, այսինքն զորքով օգնել նրան և սահմանված տուրքը վճարել։ Դրանից հետո Կյուրոսը հաշտեցնում է արմեններին և Հայկական բարձրավանդակի առանձին ցեղերին, որոնք պայմանավորվում են իրար վրա չհարձակվել, թույլ տալ արմեններին օգտվելու լեռնային արոտավայրերից, իսկ մյուս ցեղերին՝ մշակելու դաշտային վայրերը, խնամիական կապեր հաստատել և խաղաղ դրացիական կյանք վարել։

Արմենների մասին Քսենոֆոնի հաղորդած այս տեղեկությունները վկայում են ոչ միայն նրանց արդեն ազդեցիկ ուժ լինելու մասին, այլև հաստատում են այն, որ նրանք Հայկական բարձրավանդակում աստիճանաբար գրավել էին ուրարտացիների հողերի զգալի մասը և նրանց հետ բնակություն էին հաստատել Հայաստանի որոշ շրջաններում։ Ընդ որում վերելքի, հզորացման և տիրապետման տենդենցը նկատվում է արմենների և ոչ թե ուրարտացիների մոտ։

VI դարի երկրորդ կեսին նախքան մեր թվարկությունը արմեններն առավել ևս մեծ ուժ են դառնում և ավելի լայն չափով տարածվում Հայկական բարձրավանդակում։ Այս ժամանակաշրջանի վերաբերյալ արմենների մասին հետաքրքիր տեղեկություններ են հաղորդում պարսից Դարեհ Ա. թագավորի թողած Բիհիսթունի սեպագիր արձանագրությունը և հույն պատմագիր Հերոդոտը։ Նրանց հաղորդած տեղեկություններից երևում է, որ արմեններն արդեն տիրող ուժ էին դառել Հայաստանի հարավային և արևմտյան նահանգներում, բայց գտնվում էին պարսկական պետության տիրակալության տակ։ Նրանք պարսկական լուծը թոթափելու համար հուժկու ապստամբություն են բարձրացնում Դարեհ Ա-ի դեմ և մի քանի ճակատամարտերում, ինչպես ցույց է տալիս ակադեմիկոս Մանանդյանը, հաղթանակ են տանում պարսկական բանակի դեմ և միայն վերջին ճակատամարտում պարտություն կրում։

Հաջորդ դարում, այսինքն մեր թվարկությունից առաջ V դարում արմեններն արդեն հանդես են գալիս Հայաստանի մեծագույն մասում, և դարեվերջին Հայաստանով անցած Քսենոֆոնը Տիգրիսի վերին հոսանքից սկսած մինչև Հայկական պարը և Եփրատից մինչև Վասպուրական համարյա թե միայն արմեններին է հանդիպել և նրանց է համարում գերիշխող ուժը։

Պատմական այսպիսի պայմաններում արմեններն ի վիճակի էին գլխավորելու Հայաստանում եղած մյուս ցեղերի մերումը իրենց հետ։ Ձուլել նրանց իրենց մեջ և նպաստել մի նոր ժողովրդի, ժամանակակից հայ ժողովրդի կազմավորմանը։ Որ այդպես է եղել, ցույց են տալիս մեր թվարկությունից առաջ IV դարից հետո Հայաստանի բնակիչների մասին եղած տեղեկությունները։ Եթե Հերոդոտն ու Քսենոֆոնը Հայկական բարձրավանդակի բնակիչների մասին խոսելիս բացի արմեններից թվարկում են նաև շատ այլ ցեղեր, ապա նրանցից հետո եկած հեղինակները, օրինակ, հույն աշխարհագիր Ստրաբոնը, ամբողջ Հայկական բարձրավանդակի բնակչությանը համարում են արմեններ։ Այդ չէր կարող ինչ որ թյուրիմացության հետևանք լինել և Հայաստանի բոլոր ցեղերին, եթե նրանք պահպանել էին իրենց նախկին դիրքն ու տեղը, չնկատեին ու նրանց շփոթեին արմենների հետ, անվանեին արմեններ, ինչպես կարծում են որոշ պատմաբաններ։ Այդ նշանակում է միայն մի բան, որ արմեններին հաջողվել էր մի քանի դարի ընթացքում տարածվել ամբողջ Հայկական բարձրավանդակում, իրենց ենթարկել մյուս ցեղերին, հաստատել իրենց քաղաքական գերիշխանությունը ամբողջ երկրում, դարձնել իրենց լեզուն համացեղային լեզու և միավորել հայասներին, ուրարտացիներին և մյուս մանր ցեղերին իրենց հետ որպես մի ամբողջական ժողովուրդ։

Այդ նոր ժողովրդին դրսեցիները շարունակում են անվանել «արմեն», «արմեններ» համանուն ցեղախմբի անունով, որ գլխավորել էր այդ ժողովրդի կազմավորումը, և նրանց երկիրը «Արմենիա», իսկ ինքը, այդ նոր ժողովուրդը սկսեց իրեն կոչել «հայ» ու երկիրը «Հայաստան»։ Թե ինչու նրանք իրենց



«հայ» են անվանել, առայժմ բավարար տվյալներ չլինելու պատճառով հնարավոր չէ ճշգրտորեն որոշել։ Այդ կապակցությամբ կարելի է ասել հետևյալը։ «Հայ» անունը եղել է ժողովրդի կազմի մեջ մտած մի խոշոր ցեղախմբի՝ «Հայասների» կամ խեթերի, հաթերի անունը և հավանորեն նրանցից էլ այդ անունը անցել է ամբողջ ժողովրդին։ Այսպես կարող է տեղի ունեցած լինել մանավանդ այն պատճառով, որ հայասները, խեթական ցեղերը և ուրարտացիները տնտեսական կյանքի զարգացմամբ, կուլտուրական մակարդակով և սոցիալական հարաբերություններով, ինչպես ընդունում են բոլոր ուսումնասիրողները, ավելի բարձր էին կանգնած քան արմենները։

Այդպիսով, ժամանակակից հայ ժողովուրդը կազմավորվել է արմենների, հայասների, ուրարտացիների և մի շարք այլ մանր ցեղերի միաձուլումով՝ արմենների գլխավորությամբ։ Այդ երկարատև մի պրոցես էր, որ թեև սկսվել էր շատ դարեր առաջ, բայց հիմնականում տեղի էր ունեցել մեր թվարկությունից առաջ VI—III դարերի ընթացքում։ Նախքան մեր թվարկության II դարի սկզբին հայ ժողովրդի կազմավորումը հիմնականում ավարտված էր և ստեղծվել էին նախապայմաններ հայկական միասնական պետության հիմնադրման համար։ Հայ ժողովրդի ձևավորման պատմական ամբողջ պրոցեսը կատարվել է Հայկական բարձրավանդակում, այսինքն Հայաստանում և ոչ թե այլ վայրում։

Ինչպես տեսնում ենք, հայ ժողովուրդը առաջացել է մի քանի ցեղերի միավորումից։ Թեև այդ միավորումը կատարվել է մի ցեղի գերակշռությամբ, սակայն յուրաքանչյուր ցեղ, հատկապես նրանցից խոշորները, զգալի ժառանգություն են թողել նոր ժողովրդին՝ նրա լեզվի, շինարարական արվեստի, տնտեսական կյանքի, հավատալիքների և այլ բնագավառներում։ Վերցնենք թեկուզ հայերեն լեզուն։ Այն, ինչպես նախորդ էջերում ասվեց, պատկանում է հնդեվրոպական լեզվաճյուղին, սակայն նրա բառապաշարում կան շատ բառեր և տերմիններ, որոնք պատկանում են այլ լեզվաճյուղերի։ Այդ նշանակում է, որ տվյալ բառերը ներթափանցել են հայերենի մեջ արմենների հետ ձուլված այլ էթնիկական և լեզվական խմբավորումներին պատկանող ցեղերի լեզուներից։ Իհարկե, այս չի նշանակում, որ այդ տարբեր լեզուները միախառնվել են և առաջացրել են ինչ-որ մի նոր լեզու, որը ո՛չ արմենների, ո՛չ հայասների և ո՛չ էլ մնացած ցեղերի լեզուն է։ Մարքս-լենինյան ուսմունքը լեզվի մասին մեզ ուսուցանում է, որ տարբեր լեզուների խառնուրդից չի առաջանում մի նոր լեզու, այլ լեզուներից մեկը հիմնականում պահպանում է իր բառապաշարը և քերականական կառուցվածքը՝ նրանց բոլոր հատկանշական գծերով և իր մեջ է ընդունում մյուս լեզուներից որոշ քանակի բառեր և նույնիսկ արտահայտության ձևեր, դրանով իսկ հարստացնելով իր բառային ֆոնդը և քերականական ձևերը։

Այդպես էլ կատարվել է հայերեն լեզվի հետ։ Արմենների լեզուն, որպես հեգեմոն դերը ձեռք բերած ցեղի լեզու, պահպանել է իր լեզվական բոլոր հատկանիշները և շարունակել է մնալ ինքնուրույն լեզու, իր մեջ առնելով մնացած ցեղերի լեզուներից որոշ բառեր և արտահայտության ձևեր։

Վերոհիշյալ ցեղերի միաձուլման, հայերեն լեզվի ընդհանրացման համար նրանց միջև հաստատված տնտեսական, ազգակցական և կուլտ-կենցաղային կապերից բացի կարևոր նշանակություն է ունեցել Հայաստանի հին բնակիչների և առանձնապես արմենների քաղաքական ինքնուրույնությունը։ Վերջինների

*մասին եղած առաջին իսկ տեղեկություններում հիշատակվում է, եթե ոչ պետականություն՝ իր բուն էությամբ, ապա պետականության տարրերի առկայությունը նրանց մոտ։ Ուրարտական թագավոր Սարդուրիի թողած արձանագրության մեջ խոսվում է այն մասին, որ Արմե ցեղը ունեցել է թագավոր։ Ուրարտական պետության անկումից հետո, մեդացիների գերիշխանության ժամանակ արմեններն ունեցել են իրենց թագավորությունը, բանակը և ձգտել են պահպանել քաղաքական անկախություն։ Քսենոֆոնը Կյուրոպեդիայում պատմում է, որ երբ Կյուրոսը ապստամբ արմենների թագավորին հնազանդեցնելուց հետո հարցնում է, թե ինչու էր ապստամբել մեդական պետության դեմ, հարկ չէր տալիս և ամրոցներ էր կառուցում, նա պատասխանում է, որովհետև ինքը ձգտում էր ազատության և կարծում էր, որ ավելի լավ կլինի ինքն էլ ազատ լինի և իր որդիներին էլ ազատություն թողնի։ Արմենների պետությունը այս շրջանում արդեն այնքան ուժ ու կարողություն է ունեցել, որ մեդական թագավորները և հետո էլ պարսկական թագավորները կարիք են զգացել նրա հետ դաշինք կնքելու և ռազմական օժանդակություն ստանալու։ Արմենների թագավորությունը թեև երբեմն-երբեմն ստիպված էր ճանաչել Արևելքի հզոր պետությունների գերիշխանությունը, բայց եղել է ինքնուրույն և նրա ենթարկվածությունը լոկ հարկատվության և ռազմական օգնության բնույթ է կրել։*

*Մեր թվարկությունից առաջ IV դարի 2-րդ կեսում Հայաստանում ձևավորվում է մի նոր թագավորություն՝ Օրոնտյան, կամ ինչպես հայկական աղբյուրներն են անվանում Երվանդյան թագավորություն։ Մովսես Խորենացու կարծիքով այդ թագավորության կենտրոնը եղել է Արարատյան դաշտը և այդ դինաստիայի օրոք են հայերը թոթափել օտարների գերիշխանությունը և ստեղծել իրենց սեփական պետությունը։*

*Մեր թվարկությունից առաջ II դարում Արտաշեսյան դինաստիայի հիմնադիր Արտաշես Ա-ն, ինչպես հաղորդում է Ստրաբոնը, հաջորդելով Երվանդյաններին, սկսեց իր թագավորության մեջ միավորել հայախոս շրջանները։ Նա իր թագավորությանն է միացնում Փայտակարանը, Վասպուրականը, Տայքը, Գուգարքը, Բարձր Հայքը, Տնորիքը, Դերջանը և այլն։ Հայ ժողովրդի համապարփակ միավորումը տեղի ունեցավ հետագայում՝ Տիգրան Բ-ի ժամանակ (95—45 թթ. մ. թ. ա.), երբ ստեղծվեց հայկական միասնական մի հզոր պետություն։*

*Արտաշեսյան թագավորության հիմնադրումը խոշոր իրադարձություն է եղել հայ ժողովրդի կյանքում։ Արտաշեսյան թագավորությունից առաջ Հայկական բարձրավանդակում եղած իշխանությունները՝ հայասների, ուրարտացիների և արմենների թագավորությունները ընդհուպ մինչև Երվանդյան դինաստիայի տիրապետության վերջին շրջանը, հանդիսացել են առանձին ցեղերի իշխանություններ։ Արտաշեսյան թագավորությունը ձևավորվեց որպես հայ ժողովրդի կազմավորման արդյունք (189 թ. մ. թ. ա.)։ Այն արդեն հայկական թագավորություն էր և շուրջ 200 տարի տևող իր գոյության սկզբի շրջանում կարևոր դեր խաղաց հայ ժողովրդի կազմավորումը լրիվ ավարտման հասցնելու գործում։*

Ս. ՊՈՂՈՍՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԼԱԳԵՐԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԲՈՒԼՂԱՐԻԱՅԻ ՏԱՍՆՀԻՆԳԱՄՅԱԿԸ

1944 թվականի սեպտեմբերի 9-ին Բուլղարիայի աշխատավորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ զինված ապստամբության դրոշ պարզեցին բուրժուազիայի և մոնարխո-ֆաշիստական ռեժիմի դեմ, նպատակ ունենալով երկրում հաստատել ժողովրդական իշխանություն։ Սովետական Բանակի մուտքը Բուլղարիա այն պահին, երբ ժողովրդական ապստամբությունը լայն ծավալ էր ստացել՝ որոշեց նրա հաղթական ելքը։ Բուլղարիայի պատմության մեջ առաջին անգամ իշխանությունն անցավ ժողովրդի ձեռքը, քաղաքի և գյուղի աշխատավորության ձեռքը։

Բուլղար ժողովուրդը դարձավ իր բախտի լիակատար տերը։ Նա, մի կողմ նետելով շահագործողների ծանր լուծը, չտեսնված եռանդով ձեռնամուխ եղավ նոր հասարակության՝ սոցիալիզմի կառուցման գործին։ Նշելով իր ազատագրման 15-րդ տարեդարձը, բուլղար ժողովուրդը հպարտ է և երջանիկ նրանով, որ պատվով է կատարում իր արժանի զավակ, Բուլղարիայի Կոմունիստական պարտիայի լավագույն ղեկավար Գեորգի Դիմիտրովի առաջադրած խնդիրը՝ «...15—20 տարում երկրի ինդուստրացման ու էլեկտրիֆիկացման և հողագործության մեքենայացման միջոցով հասնել այն բանին, ինչին այլ պայմաններում ուրիշ երկրները հասել են մի ամբողջ հարյուրամյակի ընթացքում»։

Անցած տասնհինգ տարիները բուլղար ժողովրդի համար, ինչպես քաղաքականության, այնպես էլ էկոնոմիկայի ու կուլտուրայի բնագավառներում եղել են խոր հեղաշրջումների և խոշոր նվաճումների տարիներ։ Այդ տարիներին Բուլղարիան անճանաչելիորեն փոխվել է։ Անցյալում հողագործական, արդյունաբերապես թույլ զարգացած, գյուղացիական մանր տնտեսությունների և խոշոր իմպերիալիստական տերությունների քմահաճույքից կախված երկիրն այսօր բուլղար աշխատավորների համառ ու քրտնաջան աշխատանքի շնորհիվ դարձել է ինդուստրիալ-ագրարային զարգացած սոցիալիստական պետություն։

Մինչև II համաշխարհային պատերազմը արդյունաբերության զարգացման մակարդակով Բուլղարիան Եվրոպայում գրավում էր վերջին տեղերից մեկը և գտնվում էր այնպիսի երկրների մակարդակին, ինչպիսիք Թուրքիան ու Հունաստանն են։ Բուլղարիայի Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ երկրի արդյունաբերության ազգայնացումից հետո ռեսպուբլիկայի աշխատավորությունը ձեռնամուխ եղավ երկրի ինդուստրացման մեծ գործին։ Այդ խնդիրը բուլղար ժողովուրդը հիմնականում լուծեց տասը տարում՝ երկու հնգամյակների ընթացքում, 1947—1957 թվականներին։ Պատմական այդ կարճ ժամանակամիջոցում Բուլղարիան չտեսնված հաջողությունների հասավ։ Այդ տարիներին երկրի տարբեր շրջաններում կառուցվեցին նոր քաղաքներ և արդյունաբերական կենտրոններ, հարյուրավոր կիլոմետրերով ձգվեցին երկաթուղագծեր, վառվեցին բազմաթիվ նորակառույց էլեկտրակայանների լույսերը, հայտաբերվեցին օգտակար հանածոների նոր հանքավայրեր, այդ թվում և նավթ։ Բուլղարիան այժմ ունի իր սեփական մեքենաշինությունը, սև և գունավոր մետալուրգիան, քիմիական արդյունաբերությունը և արտադրության շատ այլ ճյուղեր։ Գործարկվել են Վ. Ի. Լենինի անվան մետաղագործական, Կարլ Մարքսի անվան սոդայի, սուպերֆոսֆատային պարարտանյութերի, պենիցիլինի գործարանները, բազմաթիվ էլեկտրակայաններ և շատ այլ արտադրական ձեռնարկություններ։ Միայն 1953—1957 թվականներին Բուլղարիայում այնքան քարածուխ արդյունահանվեց, որքան 1879—1944 թվականների ընթացքում։

Արդյունաբերության նման արագ զարգացումը հնարավորություն տվեց ո՛չ միայն ինդուստրացնելու երկիրը, տնտեսապես անկախ դարձնելու այն, այլև որոշակիորեն նպաստեց լուծելու քաղաքական և տնտեսական խոշոր նշանակություն ունեցող մեկ ուրիշ խնդիր՝ գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը։

Հանրահայտ է, որ Բուլղարիայի գյուղատնտեսությունը նախկինում հետամնաց էր։ Հողը մշակվում էր ծայրաստիճանի պրիմիտիվ մի-

չոցներով, իսկ աշխատավոր գյուղացիները ենթարկված էին մշտական կեղեքման: Իսկ այժմ Բուլղարիան ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրներից առաջինն է, որ հիմնականում ավարտել է գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը: Մշակվող հողի մոտ 92 տոկոսը գտնվում է աշխատավորական կոոպերատիվ հողագործական տնտեսությունների ձեռքում: Նկատելիորեն աճում են կոոպերատիվ հողագործական տնտեսությունների և կոոպերատորների եկամուտները: Այսպես, երբ 1954 թվականին կոոպերատորի տարեկան միջին եկամուտը կազմում էր 2172 լև, ապա 1957 թվականին այն կազմեց 4042 լև:

Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը Բուլղարիայում վերջին հինգ տարիների ընթացքում ռեսպուբլիկայի ձեռք բերած ամենախոշոր նվաճումն է: Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունն այժմ դարձել է խոշոր, մեքենաներով հագեցված տնտեսություն: Կոմունիստական պարտիայի և ժողովրդական կառավարության վերջին տարիներին ձեռնարկած մի շարք կոնկրետ միջոցառումների շնորհիվ այժմ ստեղծված են բոլոր բարենպաստ պայմանները գյուղատնտեսության մեջ նոր տեխնիկայի ներդրման, խոշոր մասշտաբներով մելիորատիվ աշխատանքներ կատարելու, հողագործության կուլտուրայի վերելքն ապահովելու և գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար:

Գյուղատնտեսության զարգացման ասպարեզում ձեռք բերված խոշոր նվաճումների մասին Կոմունիստական պարտիայի VII համագումարն իր բանաձևում նշեց, որ բուլղարական գյուղացին հաստատակամորեն հետևելով իր սովետական եղբոր՝ կոլտնտեսականին, նրանից հետո երկրորդը Եվրոպայում ձեռք բերեց վերջնական հաղթանակ գյուղի սոցիալիստական վերակառուցման գործում:

Արդյունաբերության և գյուղատնտեսության հաջողությունների հիման վրա զգալիորեն բարձրացավ ժողովրդի կենսամակարդակը: 1947—1957 թվականներին ազգային եկամուտը միջին հաշվով աճել էր 9 տոկոսով: Տնտեսական թռիչքի պլանի համաձայն ազգային եկամուտը 1957 թվականի համեմատությամբ, 1959 թվականին կաճի մոտ 50 տոկոսով, 1962 թվականին՝ 2 անգամ, իսկ 1965 թվականին՝ 3 անգամ: Աշխատավարձի բարձրացման, նպաստների և թոշակների ավելացման շնորհիվ անհամեմատ մեծացել է աշխատավորության գնողունակությունը:

Սոցիալիստական Բուլղարիայում ազգային եկամտի 78 տոկոսը ծախսվում է բնակչության պահանջմունքների անմիջական բավարարման վրա, իսկ մնացած 22 տոկոսը՝ սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման, ընդլայնված վերարտադրության, գիտության, կուլտուրայի, առողջապահության զարգացման վրա: Ռեսպուբլիկայում մեծ թափ է ստացել ինչպես պետական, այնպես էլ կոոպերատիվ և անհատական բնակարանային շինարարությունը:

Արմատական վերափոխումներ են կատարվել նաև հասարակության դասակարգային կառուցվածքում: Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության սոցիալիստական սեկտորն այժմ թողարկում է արդյունաբերական արտադրանքի 98 տոկոսը, գյուղատնտեսական մթերքների՝ մոտ 90 տոկոսը և ընդգրկում է մանրածախ ապրանքաշրջանառության ավելի քան 99 տոկոսը: 1957 թվականի ազգային եկամտի 93 տոկոսից ավելին ստացվեց սոցիալիստական սեկտորից: Լիկվիդացված է վերջին շահագործող դասակարգի՝ կուլակության տնտեսական բազան և մեկ ընդ միշտ վերացված է մարդու շահագործումը մարդու կողմից: Այն խոշոր հաջողությունները, այն խոր և արմատական վերափոխումները, որոնք կատարվել են երկրի էկոնոմիկայում և հասարակության դասակարգային կառուցվածքի մեջ, հիմք տվեցին ԲԿՊ-ի VII համագումարին անելու այն եզրակացությունը, ՈՐ ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ՈՐՊԵՍ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՆՈՐ ԿԱՐԳ ՀԱՂԹԱՆԱԿԵԼ Է ԲՈՒԼՂԱՐԻԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ:

Անցած 15 տարիներին փոխվել է նաև բուլղարական ինտելիգենցիայի դեմքը: Հին, բուրժուական ինտելիգենցիայի փոխարեն ծնունդ է առել և աճում է նոր, ժողովրդական ինտելիգենցիա, որը հիմնականում դուրս է եկել բանվորների և գյուղացիների ծոցից, սերտորեն կապված է ժողովրդի հետ և ազնվորեն ծառայում է նրան: Նոր ինտելիգենցիայի ստեղծման գործում խոշոր դեր խաղաց սոցիալիստական շինարարության անբաժանելի մասը հանդիսացող կուլտուրական ռևոլյուցիան: Այժմ Բուլղարիան միջնակարգ դպրոցներն ավարտածների և բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորողների թվով աշխարհում առաջին տեղերից մեկն է գրավում: Բուլղարիայի Կոմունիստական պարտիայի և ժողովրդական իշխանության հոգատարության շնորհիվ ռեսպուբլիկայում ստեղծված են բոլոր նպաստավոր պայմանները գիտության և կուլտուրայի զարգացման համար: Բուլղարական գիտնականները մեծ աշխատանք են կատարում ռեսպուբլիկայի Գիտությունների ակադեմիայի



85 գիտա-հետազոտական ինստիտուտներում և ԲՈՒՀ-երում:

Սոցիալիստական շինարարության հաջողությունները հնարավորություն տվեցին բարելավելու պետության և ժողովրդական տնտեսության ղեկավարման ձևերն ու մեթոդները: Վերջին տարիներին մի շարք միջոցառումներ կիրառվեցին ժողովրդական տնտեսության ղեկավարումը բարելավելու և ֆինանսավորումը կարգավորելու ուղղությամբ: Պետական և տրնտեսական ղեկավարության վերակառուցման շնորհիվ վերացվեցին միջանկյալ բոլոր օղակները՝ մի շարք վարչություններ, նյութային մինիստրությունների մի մասը, նախկինում գոյություն ունեցող 13 օկրուգներ և այլն: Կատարվեց պետական ապարատի նկատելի կրճատում և էժանացում:

Անցյալ տարվա վերջերից Բուլղարիայում սկսվել է համաժողովրդական մեծ շարժում՝ ժողովրդական տնտեսության զարգացման երրորդ հնգամյակը 3—4 տարում կատարելու համար:

Արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը երրորդ հնգամյակի դիրեկտիվներում նախատեսված 62 տոկոսի փոխարեն, 1962 թվականին (1957 թվականի համեմատությամբ) կաճի երկու անգամ, իսկ 1965 թվականին՝ 3—4 անգամ: Հատկապես արագ տեմպերով է զարգանալու ծանր արդյունաբերությունը: Մեքենաշինության արտադրանքի ծավալը և մետաղամշակումը 1962 թվականին (1957 թվականի համեմատությամբ) կաճեն 3 անգամ, իսկ 1965 թվականին՝ ավելի քան 5 անգամ: Մեծ արագությամբ են զարգանալու այն ճյուղերը, որոնք պետք է քիմիական, տեքստիլ և սննդի արդյունաբերության համար սարքավորումներ արտադրեն: Որպեսզի ապահովվի ծանր արդյունաբերության արագ զարգացումը ռեսպուբլիկայում, 1962 թվականին կարտադրվի 230 հազար տոննա չուգուն, 400 հազար տոննա պողպատ, 17 հազար տոննա էլեկտրոլիտային պղինձ, իսկ 1965 թվականին երկիրը կստանա 700 հազար տոննա չուգուն, 900 հազար տոննա պողպատ, 700—800 հազար տոննա գլանվածք, 25 հազար տոննա պղինձ և այլն:

Մեքենաշինական արդյունաբերության առաջ խնդիր է դրված՝ յուրացնել շահագործողական բարձր ցուցանիշներով, բարձրորակ արտադրանքով և ցածր ինքնարժեքով ժամանակակից մեքենաների, հաստոցների և սարքավորումների արտադրությունը: Այս կապակցությամբ նախատեսվում է արմատապես բարելավել կոնստրուկտորական բյուրոների աշխատանքը:

Քիմիական արդյունաբերությունը կենտրոնական տեղ է գրավում երրորդ հնգամյա պլանում: Քիմիական արդյունաբերության արտադրանքի ծավալը 1962 թվականին (1957 թվականի համեմատությամբ) կավելանա մոտ 3 անգամ, իսկ 1965 թվականին՝ 7 անգամ: Կզարգանան ժամանակակից քիմիայի բազմաթիվ նոր ճյուղեր:

Մեծ զարգացում կստանան շինանյութերի արտադրությունը, թեթև և սննդի արդյունաբերությունը. թեթև արդյունաբերության արտադրանքը 1962 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, կավելանա երկու անգամ, իսկ 1965 թվականին՝ երեք անգամ: Սննդի արդյունաբերության համախառն արտադրանքը 1962 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, կավելանա ավելի քան 2,5 անգամ:

Արդյունաբերության զարգացման այս խընդիրներն արդեն հաջողությամբ կենսագործվում են: Որ երրորդ հնգամյա պլանի առաջադրանքները կկատարվեն 3—4 տարում, ցույց են տալիս հենց այս տարվա արտադրական պլանների կատարման ու գերակատարման ցուցանիշները:

Մեծ հեռանկարներ են բացվում նաև գյուղատնտեսության առջև: Գյուղատնտեսական մթերքների արտադրության ընդհանուր ծավալը 1962 թվականին կհասնի 40—45 միլիարդ լևի, իսկ 1965 թվականին՝ 60 միլիարդ լևի կամ մոտավորապես 45 միլիարդ լևով ավելի, քան 1957 թվականին: Հսկայական քայլերով կզարգանան և՛ հողագործությունը, և՛ անասնապահությունը: Տնտեսապես է՛լ ավելի կամրապընդվեն կոոպերատիվ տնտեսությունները, լայն թափ կհաղորդվի հիդրոմելիորատիվ, պարարտանյութերի կիրառման աշխատանքներին և այլն: Հնգամյակում ռեսպուբլիկան լուրջ հաջողությունների կհասնի նաև աշխատավորության կենսամակարդակի բարձրացման, առևտրի հետագա ընդլայնման, ժողովրդական կրթության, կուլտուրայի, արվեստի և այլ բնագավառներում:

Այս բոլոր խնդիրների իրագործումը կհանգեցնի արտադրողական ուժերի է՛լ ավելի զարգացման, սոցիալիզմի նյութա-տեխնիկական բազայի ամրապնդման և նշանակալի քայլ կհանդիսանա կոմունիստական հասարակության կառուցման ճանապարհին:

Բուլղարիան միայնակ չէ, նրա հետ են հզոր Սովետական Միությունը և մյուս եղբայրական սոցիալիստական երկրները: Սոցիալիզմի կառուցումը Բուլղարիայում օրգանապես կապված է բուլղարական ժողովրդի և Սովետական Միության ժողովուրդների միջև ստեղծված եղ-

բայրական բարեկամության հետ, սոցիալիստական երկրների միջև ստեղծված փոխօգնության և համագործակցության հետ:

Սոցիալիստական լագերի ամենահզոր երկիրը՝ Սովետական Միությունը սոցիալիզմի կառուցման գործում Բուլղարիային ցույց է տալիս բազմակողմանի եղբայրական օգնություն: Բուլղարիան շատ բարենպաստ պայմաններով ՍՍՌՄ-ից մեծ քանակությամբ ստանում է ամեն տեսակի մեքենաներ և սարքավորումներ: Բուլղարիայի տրակտորային պարկի 90 և կոմբայնների 100 տոկոսը ստացված է ՍՍՌՄ-ից: Բուլղարիան մեր երկրից է ստանում իրեն անհրաժեշտ սև մետաղների 53,5 տոկոսը, ցելյուլոզայի՝ մոտ 78, բամբակի՝ 57,8, նավթամթերքների՝ 67,4 տոկոսը և այլն: Դրա հետ մեկտեղ ՍՍՌՄ-ը Բուլղարիայի արդյունաբերական և գյուղատնտեսական ապրանքների սպառման լայն և հեռանկարային շուկա է: Նրա կողմից արտահանվող ցեմենտի 67,2, բանջարեղենային և հատապտղային պահածոների 74,1, կոշիկեղենի 94,1, ծխախոտի 62,9 տոկոսը սպառվում են Սովետական Միությունում:

Մինչև 1956 թվականը Բուլղարիան ՍՍՌՄ-ից ստացել էր 7,8 միլիարդ լև վարկ, որը կազմում է այդ տարիներին երկրի կապիտալ ներդրումների 27 տոկոսը: 1958 թվականին Բուլղարիան ՍՍՌՄ-ից ստացավ նոր վարկ՝ 335 միլիոն լև ընդհանուր գումարով: Այդ վարկերի շնորհիվ են կառուցվել այնպիսի խոշոր արդյունաբերական օբյեկտներ, ինչպիսիք են Դիմիտրովգրադի քիմիական կոմբինատը, Լենինի անվան մետաղագործական, սուպերֆոսֆատային պարարտանյութերի, Կարլ Մարքսի անվան սոդայի, պղնձաձուլական և շատ այլ արդյունաբերական ձեռնարկություններ:

Բուլղարիայի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման համար խոշոր նշանակություն ունի Սովետական Միության գիտա-տեխնիկական օգնությունը: Վերջին տասնամյակում Բուլղարիան Սովետական Միությունից անվերադարձ և անվճար ստացել է մոտ 800 գիտա-տեխնիկական տարբեր փաստաթղթերի կոմպլեկտներ: Ժողովրդական Բուլղարիան ակտիվորեն մասնակցում է սոցիալիստական երկրների Տնտեսական Փոխօգնության խորհրդի գործունեությանը, որը կոորդինացնում է սոցիալիզմի լագերի երկրների տնտեսության զարգացումը: Այդ խորհրդի միջոցով իրականացվող համագործակցությունը, որը հենված է իրավահավասարության, փոխադարձ շահավետության և բարեկամական փոխօգնության վրա, ընդլայնվում և ավելի արդյունավետ է դառնում:

Տարեցտարի ամրապնդվում են առևտրական և տնտեսական կապերը Բուլղարիայի և մյուս սոցիալիստական պետությունների միջև: ՍՍՌՄ-ի հետ միասին տեխնիկական և արդյունաբերական տեսակետից զարգացած Չեխոսլովակիան և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան ոչ միայն աշխույժ առևտուր են անում Բուլղարիայի հետ, այլև օգնում նրան խոշոր արդյունաբերական օբյեկտների ստեղծման գործում:

Բուլղարիայի աշխատասեր և ստեղծագործ ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, սոցիալիստական լագերի եղբայրական ընտանիքում լցված է վճռականությամբ կատարելու իր առջև դրված մեծ խնդիրները: Նա ավելի ու ավելի է համոզվում, որ միայն սոցիալիստական կարգն է ի վիճակի մարդկանց ազատելու աղքատությունից, հոգեկան խավարից և պատերազմից ու ստեղծելու բոլորի համար ունևոր, կուլտուրական ու երջանիկ կյանք: Եվ չկա մի այնպիսի ուժ, որը կարողանա նրան շեղել իր ընտրած ուղուց՝ սոցիալիզմի և կոմունիզմի ուղուց:

Ի. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ՔԵՐԱԼԱ ՆԱՀԱՆԳԻ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

*Այս տարվա հուլիսի 30-ին Հնդկաստանի կենտրոնական կառավարությունը որոշեց արձակել Քերալա նահանգի օրենսդրական ժողովը և իշխանությունից զրկել նահանգի կառավարությանը, որը կազմված էր կոմունիստներից և նրանց աջակցող անկախներից: Հաջորդ օրը համապատասխան հրամանագիր արձակվեց Քերալայի տերիտորիայում պրեզիդենտական կառավարում մտցնելու մասին:*

*Նահանգի ներքին գործերին Հնդկաստանի կենտրոնական կառավարության միջամտությունը, օրինական ընտրությունների ճանապարհով իշխանության գլուխ անցած կառավարության արձակումը Հնդկաստանի կոնստիտուցիայի ոգու խախտում է, հակասում է դեմոկրատիայի բոլոր սկզբունքներին, որոնց պահպանման անհրաժեշտության մասին այնքան շատ և այնպես հաճույքով խոսում են Հնդկաստանի կառավարող պարտիայի՝ Ազգային կոնգրեսի պարագլուխները:*

*Կոմունիստների գլխավորած Քերալա նահանգի կառավարությունը իշխանության գլուխ մնաց 28 ամիս: Այդ կառավարությունը կազմվեց 1957 թվականի ապրիլին նահանգի օրենսդրական ժողովի ընտրություններում կոմունիստների և նրանց հետ համագործակցած առաջադեմ անկախ գործիչների հաղթանակի շնորհիվ:*

*Կազմելով կառավարություն, կոմունիստները հաստատ հայտարարեցին, որ իրենք վճռաբար և անշեղորեն կպահպանեն Հնդկաստանի կոնստիտուցիան և կկիրառեն միայն այնպիսի միջոցառումներ, որոնք դուրս չեն գալիս այդ կոնստիտուցիայի շրջանակներից և չեն հակասում դրան: Այն ծրագիրը, որով կոմունիստները Քերալա նահանգում իշխանության գլուխ անցան, չէր նախատեսում պրակտիկայում կենսագործել սոցիալիստական, առավել ևս կոմունիստական գաղափարներ: Դա հնարավոր էլ չէ բուրժուական պետության պայմաններում: Կոմունիստները հանդես էին գալիս նահանգի բնակչությանը հուզող ամենասուր հարցերի լուծման օգտին, այն է՝ կիրառել ագրարային ռեֆորմ և գյուղատնտեսության զարգացման նպատակին ուղղված այլ միջոցառումներ. ընդլայնել նահանգի արդյունաբերական շինարարությունը, կրճատել գործազուրկների թիվը, որը հասնում էր ավելի քան 850 հազար մարդու, բարելավել աշխատավորների կենսական դրությունը, վերացնել կաշառակերությունն ու ապօրինությունները:*

*Այդ ծրագիրն իր շատ գծերով համընկնում է Ազգային կոնգրեսի պաշտոնական ծրագրին: Բայց Հնդկաստանում ստեղծված դրության պարադոքսալ էությունն այն է, որ ժամանակակից պայմաններում միայն կոմունիստներն են ընդունակ լրջորեն ու բարեխղճորեն, ոչ թե խոսքով, այլ գործով իրականացնել այն նույն բուրժուա-դեմոկրատական ռեֆորմները, որոնց անհրաժեշտության մասին բազմիցս հայտարարել են Ազգային կոնգրեսի գործիչները: Բայց կոնգրեսականները այդ ռեֆորմները չեն կենսագործում, իսկ կոմունիստները ձգտում էին դրանք կիրառել:*

*Քերալա նահանգի նոր կառավարությունը դեռ աշխատանքի չէր անցել, երբ նրա վրա տեղացին պարտություն կրած կոնգրեսականների և կոմունիստական պարտիայի մյուս բոլոր հակառակորդների չարամիտ հարձակումները: Կոնգրեսականները և հետադիմական ուժերն իրենց բոլոր ջանքերը գործադրում էին, որպեսզի անտանելի պայմաններ ստեղծեին նոր կառավարության գործունեության համար: Անհամար պրովոկացիաներ, զրպարտություն, նոր մինիստրների կարգադրությունների վիժեցում, անկարգություններ, անկյունից կոմունիստների և գյուղացիական միության ակտիվիստների սպանություն՝ ամեն ինչ արվեց կոմունիստների գլխավորած Քերալայի կառավարությանը վարկաբեկելու և այն տապալելու համար:*

*Այդպիսի թշնամական մթնոլորտը, բնականաբար, խորացնում էր նահանգի կառավարության դժվարությունները, կառավարություն, որին կենտրոնական կառավարությունը նայում էր՝ ինչպես խորթ մայրը խորթ որդուն: Քերալա նահանգի նկատմամբ կենտրոնական կառավարության կիրառած խտրականության մասին են վկայում շատ փաստեր: Ցարբիկաների ու գոր-*

ծարանների կառուցման համար միջոցներ բաց թողնելու վերաբերյալ նահանգի կառավարության խնդրանքները կամ լրիվ մերժվում էին, կամ էլ խնդրվող հատկացումները սաստիկ կրճատվում։ Կենտրոնը հրաժարվեց վավերացնել նահանգի օտարերկրյա պլանտացիաների ազգայնացումը։ Կենտրոնական կառավարությունը կասեցնում էր նահանգի օրենսդրական ժողովի ընդունած մի շարք առաջադիմական օրինագծերի հաստատումը։

Այնուամենայնիվ, չնայած մեծ դժվարություններին, չնայած թշնամական պրովոկացիաներին, կոմունիստները ջանքեր չէին խնայում օգտագործելու իրենց սահմանափակ հնարավորությունները և անելու այն ամենը, ինչ ի վիճակի էին, իրենց նահանգի աշխատավոր մասսաների դրությունը բարելավելու համար։

Հնդկական իրականության ամենահրատապ հարցը ագրարային հարցն է։ Ազգային կոնգրեսը այդ հարցը չլուծեց։ Գյուղում առաջվա պես շարունակում է տիրապետել կալվածատերը։ Նրան է պատկանում հողը, հետևաբար ընչազուրկ գյուղացիների մարմնին ու հոգուն իշխելու իրավունքը։ Ֆեոդալական մնացուկների տիրապետությունը կասեցնում է գյուղի արտադրողական ուժերի զարգացումը։

Նահանգի կոմունիստները մշակեցին և իրագործեցին մի շարք միջոցառումներ, որոնց նպատակն էր լուծել ագրարային պրոբլեմը, բարելավել գյուղացիների կյանքը, որոնք նահանգի բնակչության 87 տոկոսն են կազմում։ 1957 թվականի աշնանը կառավարությունն ընդունեց մի օրենք, որը կալվածատերերին արգելում էր գյուղացիներին վռնդել նրանց վարձակալած հողից։ Դրանից անմիջապես հետո կառավարությունը կարգադրեց 750 հազար «ակր»* ամայի պետական հողեր բաշխել հողազուրկ և սակավահող գյուղացիներին։ Այդ բոլոր միջոցառումները զգալի չափով թեթևացրին շատ գյուղացիների ծանր վիճակը։

Նահանգի կառավարությունը մեծ ուշադրություն նվիրեց ագրարային ռեֆորմի օրենքի մշակմանը։ Նա դրան միանգամայն լուրջ մոտեցում ցուցաբերեց։ Օրինագիծը լայնորեն քննարկվեց նահանգի բնակչության կողմից։ Ագրարային օրենքի մշակման հանձնաժողովի անդամները, որոնց թվում կային նաև օպոզիցիայի ներկայացուցիչներ, հարցման ենթարկեցին շատ գյուղացիների ու կալվածատերերի։ Հանձնաժողովը ստացավ երեք հազարից ավելի դիտողություններ և առաջարկներ։ Օրենքի քննարկումը կատարվում էր ամենադեմոկրատական հիմունքներով և 1959 թվականի մարտի վերջերին օրենքի ուղղված նախագիծը դրվեց նահանգի օրենսդրական ժողովի քննարկմանն ու հաստատմանը։ Հունիսի 10-ին օրինագիծն ընդունվեց, որը գոհունակությամբ և ուրախությամբ դիմավորեց նահանգի գյուղացիությունը։ Օրենքը հինգ շնչից բաղկացած ընտանիքի հողատարածության առավելագույն չափը սահմանում է 15 ակր, որը տարեկան երկու բերք է տալիս։ Եթե ընտանիքը բաղկացած է ավելի քան հինգ շնչից, նա կարող է ավելի շատ հող ունենալ, բայց ոչ ավելի, քան 25 ակր։ Ավելի հողը կալվածատերերից բռնագրավվում է, և նրանց վճարվում է փոխհատուցում։ Կալվածատերերից վերցված հողը անցնում է նահանգի կառավարության տրամադրության տակ և բաշխվում է այն գյուղացիներին, որոնք դրա համար համապատասխան գին պետք է վճարեն։

Ագրարային ռեֆորմը, որը մտադիր էր իրագործել Քերալայի նահանգի կառավարությունը, անհրաժեշտ, առաջադիմական գործ էր։ Դա ուղի է ցույց տալիս նաև Հնդկաստանի մյուս նահանգներին։ Առանց ագրարային պրոբլեմի արմատական լուծման, առանց ֆեոդալական մնացուկների լիակատար վերացման Հնդկաստանը չի կարող ոչ արագ տեմպերով իրագործել երկրի ինդուստրացումը, ոչ ապահովել գյուղատնտեսության վերելքը, ոչ էլ զարգացնել գիտությունն ու կուլտուրան։

Ագրարային հարցը միակ հարցը չէ, որի լուծմանը ինչպես հարկն է ձեռնամուխ եղան նահանգի կոմունիստները։ Նրանք եռանդուն ջանքեր գործադրեցին գործազրկությունը վերացնելու կամ, համենայն դեպս, կրճատելու համար։ Իշխանության գլուխ գտնվելու շրջանում նրանք որոշ չափով ավելացրին հատկացումներն արդյունաբերական շինարարության համար։ Երկու տարում նահանգում գործող ձեռնարկությունների քանակն ավելացավ 85-ով, իսկ դա նպաստեց բանվորների զբաղվածության աճին։ Նահանգի կառավարությունը կարողացավ գործարկել մի շարք ձեռնարկություններ, որոնք ավելի վաղ էին կառուցվել, բայց չէին գործարկվում այն պատճառով, որ կոնգրեսականները փորձում էին անշահութաբերության պատրվակով դրանք վարձակալության տալ կամ վաճառել մասնավոր անձանց։ Կառավարությունն օգնեց արդյունաբերական կոոպերատիվներ ստեղծելու բանվորներից. դա նույնպես վաստակ ապահովեց նրանց համար, ովքեր երկար ժամանակ դրանից զրկված էին։ Նա խրախուսում էր մասնավոր կապիտալի գործունեությունը, այն ներգրավելով նաև ուրիշ

* Հողային չափ, որը հավասար է 4047 քմ—Խմբ.։



նահանգներից և ընդմին ձգտում էր նպաստավոր պայմաններ ստեղծել ձեռնարկատիրական գործունեության համար։

Քերալայի կառավարությունը շատ ջանքեր գործադրեց, որպեսզի վարչական ապարատը մոտեցնի ժողովրդին, այն էժանացնի, վերջ տա բյուրոկրատիզմին ու քաշքշուկին։ Կոմունիստների յուրաքանչյուր միջոցառում, նրանց յուրաքանչյուր գործնական քայլ ամեն տեսակ դեկլարացիաներից ու խոսքերից ավելի լավ է վկայում, որ կոմունիստները ժողովրդի իսկական ծառաներն են, որ ժողովրդի շահերը նրանց համար ամեն ինչից բարձր են։ Ժողովրդից ճշմարտությունը հնարավոր չէ թաքցնել։ Իսկ ճշմարտությունն այն է, որ Քերալա նահանգում իրենց կառավարման երկու տարում կոմունիստները նահանգի աշխատավորների համար անհամեմատ ավելի շատ բան արեցին, քան կոնգրեսականները նախորդ ինը տարվա ընթացքում:

Կոմունիստների հեղինակությունն աճում էր ինչպես Քերալա նահանգում, այնպես էլ Հնդկաստանի մյուս շրջաններում։ Դրա ցուցանիշներից մեկը փանչայաթների* ընտրությունների արդյունքներն էին, որոնք տեղի ունեցան Քերալա նահանգում 1957 թվականի ապրիլից մինչև 1959 թվականի փետրվարը։ Այդ ընտրություններում կոմունիստները նվաճեցին 54 տեղ, մինչդեռ կոնգրեսականները՝ 34 տեղ։

Կոմպարտիայի աճող հեղինակությունն էլ ավելի գազազեցրեց նրա թշնամիներին։ Եվ երբ կառավարությունն սկսեց կենսագործել կրթության օրենքը, որը նպատակ ուներ բարձրացնել դասավանդման որակը մասնավոր դպրոցներում և որը պաշտպանում էր ուսուցիչների իրավունքները, մի օրենք, որին հավանություն էր տվել ու հաստատել էր Հնդկաստանի պրեզիդենտը, Ազգային կոնգրես պարտիան նահանգի բոլոր ռեակցիոն ուժերի հետ միասին կառավարությանը պատերազմ հայտարարեցին, պահանջելով, որ նա հրաժարական տա։ Կրթության օրենքը սոսկ պատրվակ էր։ Իսկական պատճառն այն էր, որ նրանք ձգտում էին վիժեցնել ագրարային ռեֆորմի օրենքի իրականացումը, որը թուլացնում և քայքայում էր գյուղում կալվածատիրության հիմքերը։ Կոմպարտիայի թշնամիները շտապեցին արշավանք սկսել, որովհետև վախենում էին, որ ագրարային ռեֆորմի կիրառման շնորհիվ կոմունիստների ազդեցությունը կուժեղանա։ Ռեակցիոներներն այն հետևության հանգեցին, որ օրինական, կոնստիտուցիոն մեթոդներով իրենց չի հաջողվի հաղթել կոմունիստական կառավարությանը։ Ուստի նրանք դիմեցին սաբոտաժի, պրովոկացիաների, տեռորի, անկարգություններին։

Հնդկաստանի կառավարությունը կատարեց ռեակցիոն ուժերի կամքը, երբ որոշում ընդունեց Քերալա նահանգի կառավարությունն արձակելու մասին։ Ինչպես իր հայտարարության մեջ իրավամբ նշում է Հնդկաստանի կոմպարտիան, կենտրոնական կառավարությունը դրանով իսկ կոպիտ կերպով խախտեց Հնդկաստանի կոնստիտուցիան և լուրջ հանցանք գործեց հնդկական դեմոկրատիայի հանդեպ։ Նա հանդես եկավ որպես դեմոկրատական ռեֆորմների հակառակորդ, որոնց կիրառման համար պայքարում է հնդիկ ժողովուրդը։

Հնդկական բուրժուազիան և նրա պարտիան՝ Ազգային կոնգրեսը հաճախ հայտարարում են, թե իրենք հավատարիմ են դեմոկրատիային, թե իրենք ղեկավարվում են բռնության մեթոդներից, բայց դուրս է գալիս, որ այդ ամենը զրպարտություն է, սոսկ արտաքին թաղանթ։ Քանի բուրժուազիան գործ ունի թույլ թշնամու հետ, նա լիբերալ է, բայց հենց որ նրա աչքի առջև երևան է գալիս քաղաքական ուժեղ հակառակորդ, որը պատրաստ է կենսագործել դեմոկրատական ծրագիր, որն ապացուցում է դրա հնարավորությունը և դրանով իսկ մերկացնում է ժողովրդին տրված խոստումները կատարելուց բուրժուազիայի հրաժարումը, բուրժուազիայի դեմոկրատությունը և լիբերալիզմը գոլորշիանում են։ Բուրժուազիան հավասարակշռությունից դուրս է գալիս, մոռանում է դեմոկրատիայի վերաբերյալ իր ամբողջ շաղակրատանքը։ Նա ամոթահար երես է դարձնում կոնստիտուցիայից, այն կոնստիտուցիայից, որը նա դեռ երեկ երկինք էր հանում իբրև սրբազան և անխախտ։ Զգալով, որ կոնստիտուցիայի վրա հենվելով, նա չի կարող կանգնեցնել իր դեմ կանգնած պրոլետարիատի և գյուղացիության ուժերի աճը, բուրժուազիան կամա թե ակամա ստիպված է դեն նետել օրինապահության և դեմոկրատության քողարկիչը, որը նա հագել էր, և դիմել բռնության այն մեթոդներին, որոնք նա դեռ երեկ ապօրինի էր հայտարարում։

Հնդկական բուրժուազիայի աջ շրջանները փակուղու մեջ ընկան Քերալայի դեպքերի առընչությամբ։ Այդ փակուղուց դուրս գալու օրինական ճանապարհը նրանք չկարողացան գտնել։ Մնում էր դիմել բռնության։ Չի կարելի ասել, թե Ազգային կոնգրեսի լիդերները հաճությամբ դիմեցին այդ ինքնամերկացմանը։ Ոչ-

* Տեղական ինքնավարության օրգանները հնդկական գյուղում:—Խմբ.։

վահարվեն» գիրքն է*։ Պոլեմիկական բնույթի այդ աշխատությունն իր սուր ծայրով ուղղված է մալթուսականության դեմ։ Հեղինակը բարեխիղճ և օբյեկտիվ կերպով հետազոտելով կապիտալիզմի աշխարհում սովի, աղքատության և գործազրկության աղբյուրները, գրոհում է մալթուսականների դեմ, համարձակորեն հակադրվում նրանց կույր տրամաբանությանը։

Նրա խիզախ հարցադրումները փակուղու առաջ են կանգնեցնում մալթուսականներին։ Խարազանելով մալթուսականության այն դրույթը, թե ազգաբնակչության աճը տանում է դեպի աղքատություն ու սով, Օզերը հարց է տալիս. «Ինչո՞ւ Աֆրիկայում ազգաբնակչության այդպիսի դանդաղ աճի պայմաններում կենսամակարդակն այնքան ցածր է, ինչո՞ւ են աղքատության մեջ խարխափում Կենտրոնական և Հարավային Ամերիկան, որոնք աշխարհի մյուս խոշորագույն շրջանների համեմատությամբ ամենից ավելի նոսր են բնակեցված» (էջ 56)։

Գրախոսվող գրքում կոնկրետ փաստերով ցույց է տրված մալթուսականների այն դրույթի սնանկությունը, ըստ որի իբրև թե աշխատավորների ցածր կենսամակարդակը պայմանավորված է ազգաբնակչության խտությամբ, և որ բնակչության առավել մեծ խտությունը աղքատություն է ծնում. «...ոչ մի էական փոխադարձ կապ ազգաբնակչության խտության և աղքատության միջև գոյություն չունի»,— հայտարարում է հեղինակը (էջ 74)։ Օզերը դիմում է վիճակագրությանը և մեծ հաջողությամբ հողմացրիվ անում մալթուսականների տեսակետը։ Այսպես. Ֆրանսիայում 1 քառ. կմ տարածության ընկնում է 78 մարդ և բնակչության մեկ շնչին ընկնում է 708 դոլար եկամուտ, իսկ Իրանում՝ 12 մարդ և բնակչության մեկ շնչին՝ 85 դոլար եկամուտ։ Եգիպտոսում մեկ քառակուսի կիլոմետրի վրա ապրում է 9 անգամ ավելի քիչ մարդ, քան Անգլիայում, մինչդեռ բնակչության մեկ շնչին ընկնող եկամուտն Անգլիայում ավելի քան 7 անգամ շատ է, քան Եգիպտոսում։

Ուրեմն, ինչո՞ւմն է գաղտնիքը։ Որո՞նք են հարստության ու աղքատության պատճառները. «Հարստությունն ու աղքատությունը բացատրելու բանալին ավելի շուտ տնտեսական զարգացման աստիճանն է», եզրակացնում է հեղինակը (էջ 82)։ Այստեղ Օզերի մոտեցումը միակողմանի է։ Ինչ խոսք, որ տնտեսական զարգացման բարձր աստիճանն ունի որոշակի նշանակություն բնակչության կենսամակարդակի բարձրացման գործում։ Բայց վերջին հաշվով վճռականը դա չէ։ Որոշիչն այստեղ արտադրական հարաբերություններն են, նյութական բարիքների արտադրության եղանակը։ Հեղինակի կամքից անկախ, նրա գրքի քննադատական նյութերից բխում է, որ կապիտալիստական հասարակությունը կաշկանդում է արտադրողական ուժերի զարգացումը և ծնում հարստություն մեկ բևեռում, աղքատություն՝ մյուսում։ Ծաղրելով մալթուսականների այն թեզը, թե պարենային ռեսուրսները չեն բավականացնում մարդկանց, որովհետև բնությունն անզոր է կերակրել ամբողջ մարդկությանը, Օզերն ընդգծում է, որ նման պնդումն անհնարին է հաշտեցնել այն փաստի հետ, որ շատ երկրներ սահմանափակում են պարենամթերքների արտադրությունը, արգելակում նրանց ներմուծումը և ոչնչացնում պարենամթերքների պաշարները։ Բերքատվությունը կրճատելու նպատակով 1931 թվականին Ֆրանսիայում արգելվեց խաղողի այգիների ոռոգումը, խաղողի բարձր բերք ստանալու համար տուգանք սահմանվեց. այստեղ 1935 թվականին ոչնչացվեցին 75 հազար ակր տարածությամբ խաղողի այգիներ։ 1955 թվականին ԱՄՆ-ի կառավարությունը մտցրեց ցանքատարածությունների որոշ սահմանափակումներ, շուկայական քվոտա սահմանելով ցորենի, բամբակի, ծխախոտի, բրնձի վրա։ 1955 թվականին ԱՄՆ-ում, 1953 թվականի համեմատությամբ, ցանքատարածությունները 30 տոկոսով պակասեցին։ «Տպավորություն է ստեղծվում, թե ամերիկացիները տառապում են գյուղատնտեսական մթերքների ավելցուկներից, և դա այն ժամանակ, երբ աշխարհը քաղցած է»,— նկատում է Օզերը (էջ 122)։

Ինչպիսի՞ պատճառներ են ընկած այդ երևույթների հիմքում։ Հեղինակը, թեպետ երկչոտ, փորձում է պատասխան տալ հարցին։ Նա մատնանշում է, որ կապիտալիզմի երկրներում ուշադրության կենտրոնում «ընկած են արտադրողի, և ոչ թե սպառողի շահերը։ Ապրանքները ոչնչացվում կամ օտարերկրյա շուկաներ են նետվում դեմպինգային գներով, և դրանց արտադրությունը սահմանափակվում է, որպեսզի բարձրացվեն գները» (էջ 82)։

Հապա, ինչո՞վ բացատրել, որ այն ժամանակ, երբ հարյուր միլիոնավոր մարդիկ սովահար են լինում, սննդամթերքների «ավելցուկներ» են գոյանում։ Ջ. Օզերի մեկնաբանությունն այստեղ դառնում է համարձակ. սովը, գործազրկությունը և աղքատությունը, ասում է նա, տակավին չի կարելի բնության ինչ-որ չարաբաստիկ օրենքներին կամ մարդու բազմացման անխոհեմ տեմպերին վերագրել. «աղքատություն և սով ծնող պայմանները՝ մեր արատավոր սոցիալական հարաբերությունների և քաղաքական ու տնտեսական ինստիտուտների արդյունքն են» (էջ 92)։

Ջ. Օզերը երբեք չի տարակուսում, որ բնությունը կարող է կերակրել մարդուն, և բնակչության աճը չի կարող նրան արգելք լինել։ Կան միջոցներ, ասում է նա, որոնք ռացիոնալ օգտագործելու դեպքում կբազմապատկվեն տնտեսական հնարավորությունները։ Այդ կապակցությամբ գրքում հանգամանորեն քննարկված են մալթուսականների հայացքները պատերազմի նկատմամբ. Ջ. Օզերը մերկացնում է ավերիչ պատերազմի ջերմեռանդ քարոզիչներին, որոնք պատերազմը համարում են գերբնակչության դեմ պայքարի միջոց։ Գրքում համոզիչ տվյալներով ցույց է տրված, որ պատերազմը մարդկային շատ հարստություններ է կլանում և մեծ չափով կրճատում եկամուտները։ 1914-ից մինչև 1954 թվականն ընկած ժամանակաշրջանում ամբողջովին վերցրած ռազմական ծախսերն ու նյութական ավերածությունները կազմում են աստղաբաշխական մի գումար՝ 2551,4 միլիարդ դոլար։ Ընդ որում այդ գումարի մեջ չեն մտցված երկու համաշխարհային պատերազմների ընթացքում արտադրության կորուստները։ Իսկ եթե այդ միջոցներն օգտագործվեին խաղաղ նպատակներով, ապա հսկայական չափով կբարձրանար մարդկանց կենսամակարդակը։ Հեղինակն իրավացիորեն նկատում է, որ պատերազմը ոչ թե աղքատության արդյունք է, այլ այն հանդիսանում է աղքատության գլխավոր պատճառներից մեկը։ Ցուցաբերելով ժխտական վերաբերմունք դեպի պատերազմը, հեղինակը լռությամբ է անցնում պատերազմի ծագման պատճառների կողքով, որ այնքան աղետներ ու զոհեր է պատճառում մարդկությանը։

Հեղինակին խիստ մտահոգում են թույլ զարգացած երկրները, դրանց տնտեսական հետամնացության, այնտեղ տիրող աղքատության, սովի, սոցիալական անհավասարության պատճառները և տնտեսական զարգացման առանձնահատկություններն ու հեռանկարները։ Գրքում այս հարցերին զգալի տեղ է հատկացված։ Այս թեմային վերաբերող բաժինները հագեցված են հարուստ տվյալներով, իմպերիալիզմի գաղութակալական քաղաքականությունն ու գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների հրեշավոր շահագործումը օբյեկտիվորեն մերկացնող անառարկելի փաստերով։ Քայլ առ քայլ հեղինակը ցուցադրում է այդ երկրներում տիրապետող սոցիալական կոնտրաստները։ Օզերը թույլ զարգացած երկրներում իշխող հողատիրության սիստեմը համարում է աղքատության գլխավոր պատճառներից մեկը։ Այսպես, Իրանում գյուղական ընտանիքների 95 տոկոսին պատկանում է երկրի հողային տարածությունների 17 տոկոսը, այն ժամանակ, երբ մյուս բևեռում 1 տոկոս հողատերերին ընկնում է ամբողջ հողի 34 տոկոսը։ Բոլիվիայում հողատարածությունների 70 տոկոսը պատկանում է հողատերերի 4,5 տոկոսին, Պարագվայում 25 մարդու տրամադրության տակ գտնվում է ամբողջ հողի 25 տոկոսը։ Հողատիրական այսպիսի սիստեմը հասցնում է շատ ցածր արտադրողականության և ծնում աղքատություն։ Իրանցի գյուղացին միևնույն քանակությամբ բամբակի արտադրության վրա 16 անգամ ավելի շատ ժամանակ է ծախսում, քան ամերիկյան ֆերմերը։ Օզերը գտնում է, որ գյուղատնտեսական պրոգրեսը կաշկանդող գործոնները մանր հողատիրությունն է, խոշոր հողատերերի և վաշխառուների շահագրգռվածությունն իրենց դիրքերը պահպանելու համար։

Հեղինակը գրում է, որ թույլ զարգացած երկրները թեև հարստությունների զգալի կուտակումներ ունեն, բայց դրանք շռայլում են ցոփ կյանք վարող մի բուռ հարստահարիչներ։ Այսպես, Սաուդյան Արաբիայի թագավոր Իբն-Սաուդի ընտանիքը նավթային կոնցեսիայի համար ամերիկյան ընկերությունից տարեկան ստանում է 230 միլիոն դոլար, որի միայն 5 տոկոսն է ծախսվում հասարակական կարիքների վրա։ Եվ դա այն ժամանակ, երբ արքունիքի (հաշվվում է 10 հազ. ձրիակերներ) պահպանման համար 1953 թվականին ծախսվել է նավթի արդյունահանումից ստացված գումարի 16 տոկոսը։ Հանգուցյալ թագավորը ցոփ կյանք էր վարում իր ավելի քան 100 կնոջ ու 140 երեխաների հետ։ Իբն-Սաուդն ուներ սեփական վեց ինքնաթիռ, մի ինքնաթիռ էլ կառուցվում էր գահով ու մեծ մահճակալով. այդ թռչող պալատի միայն ներքին հարդարանքի վրա ծախսվել էր մոտ 100 հազ. դոլար։ 1953 թվականին գահ բարձրացավ նրա որդին, որն այն ժամանակ ուներ 22 տղա, ալյումինից շինված մի պալատ, որը որսորդության գնալիս բարձվում էր ուղտերի վրա, ինչպես նաև 80 մարդատար ավտոմեքենա և այլն։ Կամ, Իրանում շահնշահի ընտանիքը իր հսկողության տակ ունեցած 9—10 միլիոն ակր հողից 1949—1950 թվականին ստա-

* Дж. Озер—„Должны ли люди голодать?“ (Полемика с мальтузианцами). Москва. 1959 г., стр. 420.

*ցել է 17 միլիոն դոլար եկամուտ, ինչպես նաև լրացուցիչ կերպով 1,3 միլիոն դոլար եկամուտ՝ իրեն պատկանող անտառներից ու արոտավայրերից (էջ 233)։*

*Օզերն արձանագրում է այն փաստը, որ իմպերիալիստական մոնոպոլիաները թափանցելով թույլ զարգացած երկրները, դրանք վերածում են իրենց հումքային կցորդների, ստանալով հսկայական շահույթներ։ Նա ուղղակի հայտարարում է, որ ԱՄՆ-ի առևտրական քաղաքականությունը «դժվարացնում և դանդաղեցնում է տնտեսական առաջադիմությունը թույլ զարգացած երկրներում» (էջ 240)։ Հեղինակը ցույց է տալիս, որ օտարերկրյա կապիտալ ներդրումներից անհաշիվ շահույթներ են կորզում իմպերիալիստական մոնոպոլիաները։ Նա արձանագրում է, որ ամերիկյան կապիտալ ներդրումների շահույթի նորման թույլ զարգացած երկրներում 1953 թվականին կազմել է 25,6 տոկոս։ Այդ երկրներում անխնա շահագործման ենթարկելով տեղական բնակչությանը, իմպերիալիստական մոնոպոլիաները կիրառում են ազգային խտրականություն, ծաղր ու ծանակի ենթարկում բնիկներին։ Գրքում ցույց է տրված, որ 1952 թվականին սպիտակամորթ հանքագործները Հարավային Աֆրիկայում ստանում էին 84—156,8 դոլար, իսկ աֆրիկացի հանքագործները՝ 9,66—24,08 դոլար։ Քենիայում 1949 թվականին աֆրիկական բնակչության մեկ շնչին ընկնող տարեկան միջին եկամուտը կազմում էր 6 ֆունտ ստեռլինգ, իսկ Եվրոպայում միջին եկամուտը՝ 206 ֆունտ ստեռլինգ, 1954 թվականին Բելգիական Կոնգոյում բացվեց կոլեջ 24 ուսանողի համար։ Օզերը հեգնանքով ասում է. «...այսպիսով Կոնգոն հասնում է 1636 թվականի Ամերիկային» (էջ 285)։*

*Գրքի հեղինակն անկեղծորեն մտահոգվում է թույլ զարգացած երկրների ժողովուրդների բախտով, ելք է որոնում նրանց այդ դրությունից դուրս բերելու համար։ Ջ. Օզերը առաջին պլանի վրա է դնում այդ երկրներում հողային ռեֆորմ անցկացնելու, տնտեսությունը ինդուստրացնելու հարցերը։ Սակայն, կարևոր է նկատել, որ նա շրջանցում է դասակարգային ուժերի հարաբերակցությունը և անտեսում այն, որ այդ միջոցառումների իրականացումը սերտորեն կապված է սոցիալական խոր վերափոխումների հետ։ Օզերը հեռանում է օբյեկտիվությունից, երբ հարկ չի համարում անդրադառնալ նախկինում հետամնաց, բայց ներկայումս բուռն զարգացում ապրող Ասիայի սոցիալիստական երկրներին, որոնց պրակտիկան շատ բան կարող էր հաղորդել հեղինակին։*

*Ջ. Օզերի գիրքը հագեցված է մալթուսականությունը հողմացրիվ անող հարուստ փաստերով։ Օզերը մալթուսականների համար ոչ մի սողանցք չի թողնում, մարտնչում է նրանց դեմ բոլոր ուղղություններով։ Բերված փաստերը մերկացնում են նաև իմպերիալիստական տերությունների գաղութակալական ամոթալի ռեժիմը։ Սակայն բուրժուական մտածողին հատուկ անհետևողականության հետևանքով, թեև այդ մտածողը բարեխիղճ է և հարազատ փաստերին, նա ընդհանրացնող հետևություններից և անհրաժեշտ գնահատականներից խուսափում է, գերադասելով չեզոք դիրքը։*

*Չնայած դրան «Պե՞տք է, արդյոք, մարդիկ սովահարվեն» գիրքն անպայման արժանի է լուրջ ուշադրության։*

**ՍՏ. ՔՈՉԱՐՅԱՆ**



---

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес Редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



*ՎՖ 04732* *Պատվեր 1754* *Տիրաժ 8600*

Ծավ. 7 մամուլ, մամուլում 68, 840 նիշ։ *Ստորագրված է տպագրության 21/IX 1959 թ.։*

Խմբագրությանը հանձնված ձեռագրերը հեղինակին չեն վերադարձվում։

*ՀՍՍՀ Կուլտուրայի մինիստրության գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։*

Գինը 2 ռ. 50 կ.

# ԲԱՑՎԱԾ Է

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ

# „ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ“

ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ

1960 ԹՎԱԿԱՆԻ

# ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՆ ԵՆ՝

Տարին 30 ռուբլի, վեց ամիսը 15 ռուբլի։

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝**

ԿԱՊԻ ԳՐԱՍԵՆՅԱԿՆԵՐՈՒՄ, ԲԱԺԱՆՄՈՒՆՔՆԵՐՈՒՄ, «ՍՈՅՈՒԶ-ՊԵՉԱՏ»-Ի ՔԱՂԱՔԱՅԻՆ ԲԱԺԻՆՆԵՐՈՒՄ, ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐՈՒՄ, ՖԱԲՐԻԿԱՆԵՐՈՒՄ, ՀԻՄՆԱՐԿ-ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ՍՈՎԽՈԶՆԵՐՈՒՄ, ՆՏ ԿԱՅԱՆՆԵՐՈՒՄ՝ ՄԱՄՈՒԼԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԼԻԱԶՈՐՆԵՐԻ ՄԻՋՈՑՈՎ։

Հայկական ՍՍՌ Կապի մամուլի տարածման բաժին.

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»